# ՆԿԱՐԱԳՐԱԿԱՆ ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆ Ի ՀԱՅԱԲՆԱԿ ԳԱՒԱՌՍ ԱՐԵՒԵԼԵԱՆ ՏԱՃԿԱՍՏԱՆԻ

ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆՔ

ՍԱՐԷՆ ԵՒ ՁՈՐԷՆ, ՀՆԷՆ ԵՒ ՆՈՐԷՆ

*ԴԻՏԱՆԻ ԳԻՏՆՈՑ*

**ՄԱՍՆ Ա.**

Տեղագրեց

ՄԱՆՈՒԷԼ Կ. ՄԻՐԱԽՈՐԵԱՆ

Կ. ՊՕԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Մ. Կ. ՍԱՐԸԵԱՆ

( Ի ՏՊԱՐԱՆԻ ԴԻՄԱՔՍԵԱՆ )

1884

# ՆԿԱՐԱԳՐԱԿԱՆ
## ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆ
## Ի ՀԱՅԱԲՆԱԿ ԳԱՒԱՌՍ
## ԱՐԵՒԵԼԵԱՆ ՏԱՃԿԱՍՏԱՆԻ



ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆՔ

ՍԱՐԷՆ ԵՒ ՁՈՐԷՆ , ՀՆԷՆ ԵՒ ՆՈՐԷՆ

ՊԻՏԱՆԻ ԳԻՏՆՈՑ

**ՄԱՍՆ Ա.**

Տեղագրեց

ՄԱՆՈՒԷԼ Կ. ՄԻՐԱԽՈՐԵԱՆ

معارف نظارت جليله سنڭ ٦٩٥ نومرولى رخصتنامه سيله
طبع اولنمشدر

Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Մ. Կ. ՍԱՐԸԵԱՆ
( Ի ՏՊԱՐԱՆԻ ԴԻՄԱՔՍԵԱՆ )
1884

# ՅԱՆԿ ԳԼԽՈՑ

Երես





# ԶՕՀ

# ԽՈՐԻՆ ԵՐԱԽՏԱԳԻՏՈՒԹԵԱՆ

ԱՌ

## ԱՄԵՆԱՊԱՏԻՒ

# ՍՐԲԱԶԱՆ ՀԱՅՐԻԿ ԽՐԻՄԵԱՆ

## ՆԱԽՈՐԴ ՊԱՏՐԻԱՐՔ ԹՈՒՐՔԻՈՅ ՀԱՅՈՑ

*Հայրի՛կդ իմ,*

*Մեր* ՀԱՅԱՔՆԱԿԻ *գլխաւոր դաւառաց Ընդհ.* ՆԿԱՐԱԳԻՐՆ *եւ անոնց* ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆՔ *ըրած եմ իբրեւ Երկրին՝ Հայրենեացս հին եւ նոր կենաց պատմութիւն կամ նախնի . . . . . հնութեանց* ՍՈՒՐԲ *նշխարներու թանգարան, որոյ մէջ գրագէտն եւ անգրագէտն, բանասէրն եւ ոչ բանասէրն, վարժապետն եւ աշակերտն, քաղաքացին եւ գիւղացին, վերջապէս ամեն կարգի Հայն իւր ախորժած* ԲԱԺԻՆՆ *կրնայ գըտնել, երբ կրկտելով եւ որոճալով ընթեռնու զայն:*

*Ուստի ներկայիւս կը փութամ որդիական խոնարհ յարգանօք յայտնել Ձեր Բարձրաշնորհ Սրբազնութեան թէ* ԻՄ ԱԶԳԱՅՆՈՑ ՑԱՏՈՒԿ *սոյն անդրանիկ երկասիրութիւնն երախտագիտական վեղուն զգացմամբ կը նուիրեմ Հայրենասէր Խրիմեան Հայրիկին*

Վեհ անուանն, որոյ կենաց կենդանի օրինակէն առած եմ . . . . . . . . . . . . . . . . . . .
յանձնանուիրութեան Սրբազան դասերը, զորս անարատ պահել ու խոստած եմ յաւարտ իմ կենաց, . . . . . . :
Ի վերջոյ կը խնդրեմ, Սրբազան Հայր, որ ընդունիք զիմ գրական այս նոխախայրիքն, զոր շնորհաբաշխ սուրբ աջոյդ. կարօտակէզ շրթանց կրկնակի համբուրիւ կը նուիրէ :

Ձեզ

Խ. Ծառայ

Մանուէլ Կ. Միրախորեան



# ՆԱԽԱԲԱՆ

Ազգին եւ Հայրենեաց ծառայութիւն մ՚ընելոյ բուռն բաղձանօք կենաց ամեն տեսակ չարչարանք, վտանգներ եւ նիւթական զոհողութիւնք սիրայօժար յանձն առած՝ պատրաստեցի զիմ այս գործ, մեր յարգոյ հասարակութեան եւ դպրոցական ուսանողաց համար։

Մեր ՏԵՂԱԳՐՈՒԹԵԱՆՑ մէջ յիրաւի այնպիսի ուղղութիւն մը բռնեցինք, որ ամեն դասու անձանց օգտակար լինի գործն, եւ արժէ գտնուիլ ամեն Հայ Մատենադարանի մէջ, ուսանողաց պայուսակի մէջ եւ վերջապէս ամէն . . . . . . . . . . . . . . . :

Չեմ ուզեր աստ մեծամեծ գովեստներ տալ իմ սոյն երկասիրութեան, այլ կը թողում, որ ուրիշներ . . . . ընթեռնուն զայն եւ ապա գնահատեն խղճիւ ինչ որ կ՚արժէ. այս մասին մեր ազնիւ հասարակութեան ինձ ցոյց տուած քաջալերն, կը յուսամ գործնականի փոխուելով զիս իրաւամբ պիտի մղէ ՏԵՂԱԳՐՈՒԹԵԱՆՑՍ Բ. եւ Գ. մասերն եւս ընդ հուպ ՚ի լոյս ընծայել։

Մ. Կ. Մ.

Հեղինակի ստորագրութիւն չ'կրող օրինակն
անվաւեր է :

# ՆԿԱՐԱԳՐԱԿԱՆ
## ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆ
## Ի ՀԱՅԱԲՆԱԿ ԳԱՒԱՌՍ
## ԱՐԵՒԵԼԵԱՆ ՏԱՃԿԱՍՏԱՆԻ



## ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆՔ

ՍԱՐԷՆ ԵՒ ՁՈՐԷՆ, ՀՆԷՆ ԵՒ ՆՈՐԷՆ

*ՊԻՏԱՆԻ ԳԻՏՆՈՑ*



## ԳԼՈՒԽ Ա.

### ՏՐԱՊԻԶՈՆ ՔԱՂԱՔ

*Տրապիզոն կը գտնուի Սեաւ ծովու Արեւելեան Հարաւային եզերքը, Ասիական ափանց վերայ Թուրքիոյ ամենակարեւոր և վաճառաշահ քաղաքներէն մին է։ Շինուած մեծամեծ և ընդարձակ բլուրներու կողերուն վրայ. տուները քարաշէն խիտ առ խիտ և առ հասարակ երկայարկ ու մաս մ՚եռայարկ են նման Պօլսոյ շէնքերուն։*

*Քաղաքին օդը խոնաւ և ծանր է, որ անվարժից գրեթէ անտանելի, միայն թէ ունի լաւ տեսարան և գեղեցիկ զբօսավայրեր, որք ըստ բաւականին կը քաղցրացնեն նորեկին բնակութիւնն։ Ամբողջ բնակչաց թիւն 4500 տունէ*

աւելի կը հաշուեն , որք իրենց թուոյ առաջնու-
թեան կարգաւ կը բաղկանան Ա. Տաճիկ, Բ. Հայ, Գ. Յոյն, Դ. Հռոմէական, Բողոքական և այլ մասնաւոր տարրերէ :

Քաղաքիս կրթական կողմն կրնայ ըսուիլ որ բաւական լաւ է . իւրաքանչիւր ազգայինք իրենց թուոյն համեմատ ունին եկեղեցի և դպրոց : Այս յիշատակութեան արժանի են Հայոց ազգային երկսեռ վարժարանի Տեսուչ-դաստատու Սահակ էֆէնտի Էթմէքճեանի անխոնջ ջանքերն :

Առևտրական վիճակն , բաղդատմամբ այլ քաղաքաց, աւելի բանուկ է, և Եւրոպայի վաճառականաց հետ ուղղակի յարաբերութեան մէջ : Ներածութիւնք գրեթէ ամեն տեսակ ապրանք և բերք , իսկ արտածութիւնն է գլխաւորաբար և մեծ քանակութեամբ կաղին՝ որ շրջակայ տեղերէն կը հաւաքուի աստ :

Տեղւոյս , ինչպէս առևտուրն , նոյնպէս և սովորական արուեստներն բաւական զարգացման մէջ են : Տրապիզոնի բոլոր բնակիչքն անխտիր վաճառական , մանր ու մունր առևտրոց տէր , խանութպան և արհեստաւոր են :

Աւելէ 5—6 տարի յառաջ աստ մի երկայն և գեղեցիկ նաւահանգիստ չլինելոյ ձեռնարկած էին , որպէսզի շոգենաւներն այլևս ծովուն վրայ բաց տեղ չ'կենալով ուղղակի մտչին 'ի նաւահանգիստն , ո՛ւր առանց ամենափոքր վտանգի

մը ։ թէ՛ ճանապարհորդք և թէ՛ բեռինք շատ
դիւրութեամբ կրնային փոխադրուիլ ․ գործն ,
որ բաւական մեծ է , կիսով չափ յառաջ գնա-
լէն յետոյ , բարձի թողի կը մնայ ց'արդ ։

## ՄԵԿՆՈՒՄՆ

Տրապիզոնէն մեկնելով ճանապարհնիս կ'ուղ-
ղեմք դէպ յԱրեւելահարաւ մի երկայն հովտի
մէջ. երկու կողմն ըստ մեծի մասին անտառոտ ,
զոր տեղացիք կ'անուանեն Տէյիրմէն տէրէսի ․ ուր
Արեւելքէն յԱրեւմուտս մի մեծ գետ կը վազէ
և լայնաքերան գնալով կը թափի Սեաւ ծովը ։
Սոյն գետն , որ թօղան կը կոչուի, տարին մի ան-
գամ յորդելով իւր եղերաց բաւական տեղ ար-
տորայքը կը կոխէ և յետոյ գիւղացիք տեղա-
տուութեան հողին վերայ նորէն կը ցանեն , որ
իւր արդասաւորութեամբն Նեղոսի ափունքը
կը յիշեցնէ ուղեւորաց ։

Վերոյիշեալ երկայն հովտին երկու կողմերն
տարբեր կատարներով ու դիրքով անտառային
լեռներէ սահմանուած են , որոնք կրնան նկա-
տուիլ իբր երկու լերանց երկայն շղթայք , որոնց
մէջ կան բազմաթիւ Տաճիկք և Յոյն Լազ գիւ-
ղացիք , որք արդարև օրն 'ի բուն ողորմելի բը-
րինձներովն չարաչար կը մրցին բնութեան դէմն՝
չունենալով կանոնաւոր արտօրայք կամ երկիր .
և վերջապէս իւրեանց քրտամբքն այդ քարոտ
տեղերը կը դարձնեն յարդասաւոր երկիր , ուր
կը ցանեն ցորեան և մանաւանդ եգիպտացորեն

(լողուտ), որ իրենց մէջ ցորեանէն աւելի յարգ-ունի և երբեմն հպարտութեամբ մը կը յիշեն թէ՝ «մեր լողուտն մեզ համար ամենէն արժանաւոր հացն է, վասն զի նորա սերմն ցանելոյ համար մշակելի եզներն, ուրիշ տեղերու պէս անասուններ չեն, այլ մենք, մեր ընտանիք և մեր զաւակունքն են»: Կը ցանեն նաև տեղ տեղ ծխախոտ:

Եզներով գետին վարելն շատ հազուագիւտ է, ըստ որում կենդանիք չեն կարող լուծին տակ ինքզինքնին բռնել այդ հակեալ երկրի սահուն պառիկներուն վրայ. սայլի գործածութիւնըն արդէն բնաւ չ'կայ: Բնակիչքն հովտիս, ինչպէս յիշեցի, առ հասարակ ժրաջան են, այրն իւր կնոջ հետ զուգընթաց եզանց լուծը կը քաշեն ու կը քաշեն փոքրիկ արօրին առջևը, չափահաս տղայքն և աղջկունքն զնոյն կ'ընեն, իսկ փոքրերն կովեր և ոչխարներ կ'արածեն: Հընձոց ժամանակ որաները կռնակով 'ի կալատեղ բերելոյ դատապարտուած են: Ընտանիք ձգելով 'ի պանդխտութեան գնալն ամենամեծ ամօթ և նախատինք է իրենց համար:

Սոյն տողերը գրելովս մասնաւոր փափաքըս է մեր ՀԱՅԱԲՆԱԿ գաւառաց պանդուխտ եղբարց ուշադրութիւնն հրաւիրել իրենց ընդարձակ ՀՈՂԻՆ ԵՒ ՋՐՈՅՆ վերայ, զորս անտէր թողած են:

# ԳԼ. Բ.

## ԽՕՇ — ՕՂԼԱՆ

Նախորդ գլխոյ վերոյիշեալ ահագին հովտի Արեւելեան մասն, զոր Խօշ-օղլան կ'անուանեն, կը պարունակէ լերանց բազմաթիւ ծերպեր, և լեռնակոյտեր կան, որոնց մէջ զարմանալի և խիստ հետաքրքիր ձեւ ունեցողներ կը գտնուին. այդ ձեւն պէտք է ըսել որ բնութեան ձեռագործն է, որոյ առջև մարդկային ամենամեծ ճարտարութիւն նշանակութիւն մը չկրնար ունենալ։ Հովտի սոյն շարունակութեան մէջ տեսայ բերդանման առանձին մի լեռ, որ թէպէտ և այնչափ մեծ չէր, սակայն ՀՐԱՇԱԳՈՐԾ ԲՆՈՒԹԻՒՆՆ այնպիսի եղանակաւ մը շարած է քարերն իրարու վրայ, որ կարծես թէ իւրաքանչիւրն զատ զատ կշռուած և այնպէս իրարու վրայ յարմարցուցած է, աննման ճաշակով մը։ Սոյն լեռն, որ կը բաղկանայ իրարու կցուած երկու ճիւղերէ, կարծես թէ իրարու հետ քովէ քով ձեռք ձեռքի տուած կեցած են 'ի պսակ վիթխարի լերան մ'առջեւ, մեծն այր և փոքրն իւր կողակից։ Հետաքրքիր և դիտող ճանապարհորդ մը չ'կրնար առանց հիացմամբ կանգ չ'առնուլ։ Ասկէ հետզհետէ կուգան մի քանի գիւղեր ճանապարհին վրայ, որք Իջեւանի տեղւոյ կը ծառայեն ճամբորդաց. սոյն գիւղերու մէջ ամենամեծն հազիւ 8—10 տնէ կրնայ բաղ-

կանալ . անվարժ մարդիկ բնաւ չեն կարող այս տեղերը բնակութիւն հաստատել և ապրիլ ։

Սոյն տեղէն 2—3 ժամ շարունակելէն յետոյ մեր առջեւ կը բացուի Պէթճիլէր տէրէսի կոչուած երկայն հովիտն, որ 4—5 ժամ կը տեւէ միօրինակ խիտ անտառ , որոյ մէջ կան մայրի և ուրիշ այլ և այլ տեսակ անթիւ ծառեր , սօսատիպ և ընտիր , նշանաւոր բարձրութեամբն և լայնութեամբը , սակայն ափսո՛ս որ բոլորովին անխնամ ձգուած էին ։ Շարունակելով հասանք Արտասա անուն գիւղը , որ ունի 25 տուն Տաճիկ բնակիչք 2 տուն Հայ և մի քանի Յոյն ։ Աստ դայմագամ կը նստի հանդերձ ծխախոտի պաշտօնէիւք ։

Արտասէն ելնելով և շարունակաբար գնալով անցանք մի քանի փոքրիկ գիւղեր և հասանք Պէշ քիլիսէ տաճիկ գիւղն , ուր 5 աւարեալ եկեղեցեաց տեղուանք կը նշմարուին , յորոց ծագած կ'երեւի իւր անունն ։

## ԿԻՒՄԻՒՇԽԱՆԱՅԻ ՁՈՐ

Ուղինիս առաջ տանելով մեր առջեւ կը բացուի Կիւմիւշխանայի Ձորն , որ ունի 2—3 ժամուան տեւողութիւն , մեծագոյն մասամբ ծառաստան մրգեղինաց . այսպէս շարունակելով հասանք Համանուն գիւղը , որ Համանուն քաղաքէն 1 ժամ հեռու է ։

Սոյն գիւղն 30—35 տուն Տաճիկ բնակիչ

տնի, որք մանր մունր առւտրով կը պարապին․ ասա կը նստին անցագիրներ նայող կառավարութեան պաշտօնեայքն։ Գիւղէս մէկ ժամ հեռու ճանապարհին վրայ կայ Թէքքէ կոչուած Տաճիկ գիւղն, ո՛ւր կայ կարդացողի մը գերեզման գմբեթաւոր, որ Տաճիկ գիւղացւոց ուխտատեղի է։ Սոյն ճանապարհի ուղղութեամբ յառաջ գնալով կայ Մուրատ խան անուամբ իջեւան մը, ո՛ւր մի քանի տուն գիւղացի եւս կը գտնուին առեւտրով զբաղող․ յետոյ կուգանք Գէօք օղլու բերդն, որ բաւական զօրեղ է բնական շինուածքովն, որոյ վրայ արհեստականն եւս գալով հսկայ դիրք մը առած է, և որոյ հնաշէն պարիսպներն կիսակործան ց՛արդ կը տեսնուին․ բերդիս բարձրութիւնն շատ ահարկու է, այնպէս որ նայողին գլխարկն վար կ՛իյնայ։ Շատ հետաքրքրուեցայ այս դարաւոր հընութեան նկատմամբ աւանդութիւն մը կամ տեղեկութիւն մը լսել, սակայն դժբաղդաբար փափաքիս չ՛կրցայ հասնիլ միայն թէ կ՛աւանդեն անուան տիրոջ երբեմն ապաստանարան եղած լինելը, որ թէ ի՛նչ աստիճան հաւանական է չ՛գիտեմ։

Այս զարհուրելի հովիտն տակաւին կը շարունակի․ գեղեցիկ ջրերն հակառակ մեր ուղղութեան կը վազեն և մենք երթալով մի գիշեր եւս Խարփախ կոչուած Տաճիկ գիւղն իջեւանեցանք։ Յաջորդ օրը կրկին ճանապարհնիս շա-

րունակեցինք և մնալով 'ի Բարձր Հայք․ Հո֊
վիտներէն ազատուելով եկանք ընդարձակ դաշ֊
տերու մէջ և վերջապէս հասանք 'ի Վարդահան
գիւղն, որ Բաբերդէն շատ հեռու չէ։

Ինչպէս գիտենք Տիրապիզոնէն մինչև աստ
դրեթէ 6 օրուան ճանապարհ է, վերջէն չորսն
շարունակ հովտաց մէջ ուղևորելով անցուցեր
եմք․ այս չորս աւուր ճանապարհն, որ երբեմն
շատ երկիւղալից էր, այժմ շնորհիւ Բարեխնամ
կառավարութեան՝ խճուղիով կանոնաւորապէս
շինուած է և թղթաբերին պաշտօնական ուղի
եղած․ այս առթիւ բաւական ապահովութիւն
կը տիրէ այս կողմերը, սոյն երեկոյ իջևանե֊
ցանք 'ի Վարդահան, որոյ վրայ յաջորդ գլխով
կը խօսիմք։

Գ․Լ․ Գ․

ՎԱՐԴԱՀԱՆ ԿԱՄ (ԻԻՁ–ԲԻԼԻՍԷ)

Սոյն նախնական գիւղն կը բաղկանայ 50
տան չափ Հայերէ՝ պատկանող Բաբերդի Առաջ֊
նորդութեան․ ունին Ս․ Աստուածածին անուամբ
խիստ անճաշակ և մութ եկեղեցի մը, 25 տա֊
րուան չէնք, 2 ալևոր բարի քահանայք՝ իւրեանց
կրօնական պէտոյքն մատակարարող, և մի ծաղ֊
կոց, ուր կ'աշակերտին ձմեռը 50, իսկ ամառը
10—15 ուսանողք, որք յանձնուած են «ճար֊
տար» դաստիարակի մը, որոյ պաշտօնին վրայ
գաղափար մը տալոյ համար բաւական է ըսել

թէ երկու տարիէ 'ի վեր սաստ ուսուցչութեան պաշտօն վարելով հանդերձ՝ տակաւին յիշեալ եկեղեցւոյ անունը չ'գիտէր, և երբ իրեն հարցուցի, փութաց ամենայն պարզամտութեամբ պատասխանել թէ « ժամ է Եկեղեցւոյ սուրբ անուն » :

Գիւղս շինուած է մի տափարակ դաշտի վրայ. գիւղացիք ունին ընդարձակ հող և ջուր, սակայն աղքատ և ողորմելի են :

Աստ կան երեք հատ կիսակործան տաճարներ կոփածոյ ճերմակ քարերէ կառուցեալ, հսկայաշէն եւ բարձրագոյն ճարտարապետութեան մը գործ. այդ հնութեանց անուանքն են Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ, Ս. ՍԱՐԳԻՍ և Ս. ԳԷՈՐԳ. երեքէն երկուքն ց'վերին կամարներն կանգուն են, իսկ միւսն իւր ստորին կամարները միայն կարողացեր է պահել քանդիչ հնութեան ձեռքէն. երեքն 'ի միասին առնելով մեծ եռանկիւն մը կընայ կազմուիլ, որոյ գագաթներուն վրայ շինուած են : Բազում հետաքրքրութեամբ հազիւ կարողացայ հետեւեալ թուականքն գտնել : Աստուածածնայ պարսպի մի քարին վրայ «Թվին ՉԼԲ» : Ս. ՍԱՐԳՍԻ սեան վրայ « Թվին ՉՂԵ » : Ս. ԳԷՈՐԳԱՅ ներքին դրան սեմին վրայ «Ս. ԽԱՉՍ ԲԱՐԵԽՕՍ . . . Փռանկին, Թվին ՉՂԹ » :

Սոյն երեք աւերեալ եկեղեցիք ունին զարմանալի դիրք, տեսք և շինութեան ձեւ. սեանց վերի և վարի խարիսխներուն վրայ գեղեցիկ և

ընտիր ճաշակաւ փորագրուած են զանազան ծաղիկներ, որոց համար, ինչպէս նաև ամբողջ չինուածեանց նկատմամբ աւանդութեամբ կը պատմուի թէ «Բասենցի Հայ արհեստաւորաց գործերն են»։

Գիւղիս մէջ հողին տակը գրեթէ ամեն կողմըն այլ և այլ ուղղութեամբ խողովակներ կան հաստատուած, զորս ժամանակ առ ժամանակ հանելով կը գործածեն նոր աղբիւրներու ճանապարհաց համար։ Գիւղիս չորս կողմը կը տեսնուին 8—10 եկեղեցեաց տեղեր, ամենքն ալ ո՛ գիտէ քանի՜ դարերէ 'ի վեր կենդանի պահած են նոյն իսկ փոքրիկ մանկան բերնին մէջ իւրեանց որոշակի անուանքն։

Տեղւոյս աւանդութեանց նկատմամբ շատ հետաքրքիր եղայ. այսչափ միայն կրցայ հասկնալ թէ «2—2500 տունէն աւելի բնակիչք եղած են յիշեալ տաճարաց չէն ատենը. ասկէ առաջ որ կը պատկանի 8—10 եկեղեցեաց չէն ժամանակամիջոցին, չունիմք տեղեկութիւն մը, զի հնութեան դարերու մէջ մոռցուած է անյիշատակ»։ Գիւղիս շրջակայ ոլորան ընտիր քարանց հանքեր կան։ Վարզահան գիւղէն մեկնելով ուղեւորիմք դէպ 'ի յԱրևելահարաւ 3 ժամէն կը հանիմք 'ի Բաբերդ։

—

## ԳԼ. Գ.

### ԲԱԲԵՐԴ ( ԲԵՐԴԱՔԱՂԱՔ )

Բաբերդ բերդաքաղաքն կը գտնուի Տրապիզոնի Արեւելեան հարաւը 5 օրուան ճանապարհ հեռու դէպ 'ի Կարին, Բարձր Հայոց Սիպեր գաւառի գլխաւոր տեղերէն մին է և չինուած բլրակաձեւ դաշտավայրի մը վերայ, յԱրեւելից յԱրեւմուտս դրեթէ պարսպեալ ցած և աննշան լեռներէ, Հիւսիսակողմը բաւական ընդարձակ դաշտօրայք ունի, ո՛ւր կը ցանուին գլխաւորաբար ցորեան ու գարի և կը հնձեն խիստ առատօրէն. ունի մերձակայ անտառներ, օդը զով և առողջարար է, սակայն քաղաքը գեղեցիկ տեսարաններէ զուրկ: Ճորոխ գետը քաղաքիս մէջտեղէն կ'անցնի Հարաւէն 'ի Հիւսիս և կը բաժնէ զայն Արեւելեան և Արեւմտեան երկու մասերու, որք իրարու հետ 3—4 կամուրջներով կապուած են:

Այն գետն, իւր ընթացքին մէջ ունեցած երբեմն աղմկալից որոտման համար, բնակիչներէն կը կոչուի Տէլի Ճորոխ որ քաղաքիս առաջին բնական զարդն է, որոյ վերայ կը դառնան տեղւոյս բոլոր ջրաղացքներն: Անտառներէն կտրուած փայտերու մեծագոյն մասը կը ձգուի, յատուկ նշաններով՝ Ճորոխին վրայ, որ առանց վարձքի, բնութեան օրինաց հպատակ՝ արագընթաց բերելով կը հասցնէ 'ի Բաբերդ, ո՛ւր իւ-

րաքանչիւր ոք իւր դժած նշանին նայելով՝ փայտերը դուրս կը հանէ դետէն ։

Բերդը կը գտնուի քաղաքին հիւսիսային կողմը՝ բրգաձեւ քարալերան մը վրայ շինուած որ երեք կողմանէ անմատչելի եղած է երբեմն, իսկ այժմ կիսով չափ քայքայեալ. ունի երկու ջրամբարներ եւ պահարանք, որոց հիմունք ց՚արդ կը տեսնուին. ՚ի մի կողմն կը նշմարուին նաեւ եկեղեցւոյ մը հիմունքն ։ Բերդին ստորոտն, որ արտօրայք են այժմ, կաւանդուի թէ «երբեմն բնակութիւնք էին, Ռուսաց պատերազմներէն փախսուելով այսպէս ամայացաւ» ։

Բաբերդի բնակութենաց թիւն 2430 տուն կը հաշուեն, յորոց 2000 Տաճիկ, 400 Հայ եւ 30 տուն Յոյն են ։ Տները միայարկ եւ մասամբ երկյարկ են, ոմանք քարէ եւ ոմանք հողէ շինուած անճաշակ ։

Հայք ունին 5 եկեղեցի, որոյմէ մին Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ՝ 1848 ին դեղեցիկ ձեւով մը նորոգուած է Կիւրինցի Կարապետ վարդապետի Առաջնորդութեան օրովը տեղացի Տէր Յովհաննէս աւագ քահանայի աջակցութեամբ ։ Ունին երկու վարժարան, մին արական եւ միւսն իգական սեռին յատկացեալ. երկու ցեղի ուսանողաց թիւն 250 էն պակաս չէ եւ կրթարանաց շէնքերն յարմար, սակայն ցաւ է ուղեւորիս ըսել որ հանրածանօթ Առաջնորդի եւ ժողովրդեան մէջ տեղի ունեցած (ծանուցեալ խնդիրներու

մասին վերաբերութեամբ Քրիստափոր վանուց) վէճերն այդ կրթարաններն անկեալ վիճակի մ'ենթարկած են, թէպէտեւ դասատուք լինին անձնանուէր, կարող և տեղացւոց նիւթականն բաւական բարւոք։ Ժողովուրդն եկեղեցւոյ թու-ով թաղերու բաժնուած են. քիչ տարեւոր աւանդութեամբ կը պատմուի թէ յիշեալ 5 ե-կեղեցիք արդիւնք են իրենց նախնեաց կուսակ-ցական անպէտ վէճերուն, եղած է ժամանակ որ իւրաքանչիւր թաղն իւր յատուկ առաջնորդն ունեցած է, և մէկ թաղեցւոյն միւս թաղի ե-կեղեցին երթալն մեծ յանցանք համարուած։

Քաղաքիս բնակիչներն են առ հասարակ երկրագործ, վաճառական և փոքրիկ առեւտը-րով զբաղող, ունին մօտ 200 անճաշակ կըր-պակներ. Հացագործութիւնն գրեթէ Յունաց յատուկ է։ Տեղւոյս առեւտրական վիճակը փոքր առաւելութիւն մ'ունի բաղդատմամբ այլ քա-ղաքաց։

Բաբերդը տարին մի անգամ մայիս և յու-նիս ամսոց մէջ 15 օրուան տեւողութեամբ տօ-նավաճառութիւն ունի. այս առթիւ ամեն կող-մանէ գիւղացիք սատ կը դիմեն. առեւտրոյ գըլ-խաւոր առարկայք են, ցորեն, գարի, ձի, տաւ-ար, ոչխար եւլն։

Քաղաքիս սովորական արհեստներն են դեր-ձակութիւն, կօշկակարութիւն, պղնձագործու-թիւն, երկաթագործութիւն, պայտառութիւն

ևայլն · կը գործուին նաև այլևայլ տեսակ գորգեր ։

Բաբերդ միւթէսարըֆութիւն է ընդ կուսակալութեամբ Կարնոյ · ունի 180 թեմա՛լան գիւղեր , յորս 27 Հայ են , որ միջին հաշուով 30 ական տուն կը պարունակեն , մեծագոյն մասամբ անդալրոյ ։

Տեղւոյս Տաճկաց և Հայոց մէջ եղած յարաբերութիւնն բաւական լաւ է ։

## ՄԵԿՆՈՒՄՆ

Բաբերդէն մեկնիմք ճանապարհնիս շարունակելով , հետզհետէ կը մանանք Մասաթայ երկայն լեռնահովիտն , որ մեծագոյն մասամբ անտառոտ է , ուր սակայն չ'կան բուսած մեծամեծ ծառեր Խօշըղլանայ հովտին պէս · ունի բաղմաթիւ աղբերակունք , որք ուղեւորաց ծարաւն յագեցնելու միայն կը ծառայեն ։ Այն տեղերը կրնայ ըսուիլ որ փոքր ինչ երկիւղալից են , զի բնաւ մարդկային բնակութիւն չկայ ։ Ասկէ յետոյ կուգայ Բօֆայ—Սար կոչուած դարձեալ լեռնահովիտ մը , որ իւր նախորդէն մեծ տարբերութիւն չունի. միայն թէ ունի այլ և այլ ուղղութեամբ ձորեր և աննշան լերինք ։ Այս տեղերը ճանապարհորդք հազիւ կարող կը լինին 3-4 ժամուան մէջ կտրել , ուր բուսականութեան և հարթ երկրի նուաղութեան պատճառաւ գիւղացին չ'կրնար բնակութիւն հաստա-

տեղով ապրիլ ։ Գարունն արդէն խիստ ուշ կու-գայ և գալէն յետոյ հազիւ 2 ամիս ամառ կը բերէ և դարձեալ շուտ մը կը փախչի ։

Այս կողմի բնութիւնն որչափ որ խիստ է մարդոց համար, այսու ամենայնիւ պատրաստ է տարին մի քանի հազարաւոր ոչխարներ սնու-ցանել իւր լեռնահովտաց և ձորակաց արօտնե-րովն ։ Սոյն տեղի ճանապարհին քով Ճորոխն բաւական տեղ մեզ հետ է ։ Անկէ մէկ ժամ հեռու Արևմտակողմը կայ մի Տաճկաբնակ գիւղ, որոյ առընթեր կը գտնուին պղնձի գեղեցիկ և հարուստ հանքեր, որոնցմէ իր անունն առնե-լով կը կոչուի Հանք գիւղ, որոյ հանքեր կեցած են անգործ, որով և անօգուտ ։ Անկէ յառաջ երթալով մեր դէմն կ'ելնէ Բօջայ Խան, ո՛ւր թըղ-թաբերի յաջորդական պաշտօնեայքն կ'սպասեն աչալուրջ ։ Յիշեալ պաշտօնէից ներկայութիւնն այս կողմերու երկիւղը բաւականին չափ փարա-տած կ'երևի. տեղւոյս աղբիւրին ջուրը նշանա-ւոր է իւր անուշութեամբն և մանաւանդ պա-ղութեամբն, որոյ քով Պօլսոյ հանրածանօթ ջրե-րերն ոչինչ կարժեն ։

Ուղևորելով աստի մի քանի ժամ ևս կը հասնիմք Բռնակապան կոչուած գիւղը, որոյ բնա-կիչք 35—40 տուն, որ ո՛չ Տաճիկ և ո՛չ Հայ և ո՛չ Պարսիկ են, թէպէտեւ կը խօսին առաջնոյն լեզուն, կը կոչուին երրորդի նշանովն (կըլպաշ), սակայն իսկապէս վարուք, բարուք և սովորու-

թեամբ չեն նմանիր անոնց. իրենք ունին շատ մը յատկութիւնք, որք յար և նման են երկրի հին բնակչաց յատկութեանցն:

Աստ փոքրիկ հանգիստ մ'առնելէն յետոյ՝ շարունակեմք ընթացքնիս և 3 ժամէն կը հասնիմք Աշգուլէ կոչուած 120 տնէ բաղկացեալ Տաճիկ գիւղը, որոյ անուն ծագած է իւր մէջ եղած կիսակործան բերդին անունէն.

Գիւղիս մէջ 15 տուն Հայ կը բնակիչ կայ, որոնք սեպհական հող և ջուր չունենալով՝ աւատային դրութեան մը տակը չարաչար աշխատելոյ դատապարտեալ են, և զարմանալի հաւատարմութիւն ունին առ իւրեանց աւատատեարըս, որոնցմէ երբեմն կը պաշտպանուին ընդդէմ նեղչաց:

Տեղւոյս Հայք կը խօսին այնպիսի լեզու մը, որ ո՛չ հայ է և ո՛չ Տաճիկ: Թէև կուզէի ժամանակ ունենալ իւրեանց լեզուաւ մի նամակ գրել այժմ ընթերցողիդ հաղորդելոյ նպատակաւ, սակայն կարաւանն զիւր ուղին շարունակել ուզեց անհամբերութեամբ, որով չկրցայ ցանկութեանս հասնիլ.

Սոյն Հայոց լեզուի նկատմամբ կարելի է այսպէս ըսել. Տաճիկև Հայ լեզուներն անգիր մարդոց բերնին մէջ իրարու հետ խառնուելով երրորդ մը յառաջ բերած են, որ ո՛չ առաջնոյն կը նմանի և ո՛չ երկրորդին:

Աշգուլէ գիւղի սահմանին մէջ ընտիր աղի

հանք մի կայ Թուղլա ըսուած, որ տարեկան բաւական հասոյթ կըտայ կառավարութեան, որոյ անմիջական հսկողութեան տակն է։

Սոյն գիւղէն մեկնելով 2 ժամ ճանապարհորդելէն զկնի հարկ կ'ըլլայ անցանել Սեւ գետըն, որ երբեմն շատ դժուարութիւն կը յարուցանէր ուղեւորաց դէմ, մանաւանդ գարնան եղանակին մէջ, իսկ այժմ, շնորհիւ կառավարութեան, մի օրինաւոր կամուրջ շինուած լինելով՝ կրնամք առանց կանգ առնելոյ և ամենափոքր վտանգի մը չարունակել ուղեւորութիւննիս և այսպէս երկու Տաճկաբնակ գիւղեր եւս անցնելով հասանք Ըլըճա կոչուած գիւղը։

## ԳԼ. Ե.

### ԸԼԸՃԱ

Սոյն գիւղը կը գտնուի Կարնոյ Արեւմտահիւսիսը 3 ժամու չափ գրեթէ հեռու. ունի 90 տուն բնակիչ, յորոց 60 Հայ և մնացածն Տաճիկ են։ Հայք ունին մի կոկիկ եկեղեցի և մի ողորմելի ծաղկոց, ուր կ'աշակերտին, կամ լաւ է ըսել, կը բնակին 32 ուսանողք տարօրինակ ուղղութեան մը տակ։ Ժողովուրդն սէր ունի միայն առ եկեղեցին։ Տեղւոյս արական և իգական սեռերն իրարմէ բոլորովին տարբեր ճաշակ և տիպ ունին. առաջինը դէմքովը տգեղ և ձեւովն անճաշակ, իսկ երկրորդը նոյնին հակապատկերն է տեղական պարզութեամբ։

2

Տաճիկներն ունին մի քանի կրպակներ և կ՚զբաղին մանաւոր առևտրով, իւրեանց գործըն աւելի ճանապարհորդաց հետ է և շատ ճարպիկ են ։

Հայերն երկրագործ են . ունին արդաւանդ արտօրայք, սակայն չունին պէտք եղած սէրն ՀՈՂԻՆ վերայ, նիւթական վիճակնին միջակ է։

Գիւղիս մէջ կայ հանքային տաք ջուր մը, յորմէ ծագումն առած է իւր անունն ։ Սոյն ջրոյ շրջապատը կանոնաւոր շէնքեր կան շինուած նման բաղանիքի ։ Կարնոյ գաւառի ամեն կողմերէն խումբ խումբ, մանաւանդ կիւրակէ օրերը, աստ կը դիմեն Տաճիկք և Հայք անխտիր, նոյնպէս և իգական սեռինքն . ամենքն ունին իրենց լուացուելոյ որոշեալ ժամանակն։

Հայ ընտանիքներն սոյն ջրոյն կը դիմեն այնպիսի պատրաստութեամբք, իբրև թէ յուխտ կը գան մի հրաշալի վանքը։

Ամառն ու ձմեռը գրեթէ միշտ անպակաս են առողջութեան կամ մաքրութեան համար տեղւոյս երթևեկութիւնքն, և յիրաւի ջուրն ըստ ինքեան առողջարար մի լաւ հանքային ջուր է տաքութեան միջակ բարեխառնութեամբ ։

Ըլըճա գիւղէն մեկնելով 1 ժամէն քիչ մը պակաս տևողութեամբ կը հասնիմք Պօղ գիւղը, որ 110 տուն Հայ, մի եկեղեցի և մի ծաղկոց ունի, որում այցելութիւն մը տալով առի տխուր տպաւորութիւն մը և մեկնեցայ ՚ի Կա-

րին, ո՛ւր հասայ 2 ժամէն ։ Քաղաքիս դրանց մէջ, ըստ սովորութեան, կ՚ըսպասեն մաքսատան և անցագրատան պաշտօնեայքն, որոնց առաջնորդութեամբ ճանապարհորդք պարտին նախապէս գնալ ՚ի մաքսատուն, ո՛ւր իւրեանց գոյքերն բանալ ՚ի տես և այնուհետև երթալ յիւրեանց օթևան ։

Կարնոյ վրայ տալիք տեղեկութիւնքս ուղեւորութեանս վերջաբանը պիտի կազմեն տեղեկագրութեանցս Բ. մասին մէջ ։

Ուստի Կարինէն մեկնելով ՚ի Մուշ, ճանապարհնիս կ՚ուղղեմք ՚ի յԱրեւելահարաւ ։

## ԿԱՐԻՆԷՆ ՄԵԿՆՈՒՄՆ

Կարին քաղաքի դռնէն դուրս ելնելով, 4 — 5 քառորդիկէց հեռու մի մեծ կաթուղիկէ կայ կղմինտրէ կառուցեալ, որոյ խարիսխն երկրին վրայ բաւական խորունկ ձգուած է. յիշատակութեան կարեւոր նշաններ կը պակսին յիւր վերայ. մեծ դուռ մը միայն ունի, ուրկէ ներս կը նային ուղեւորքն, առանց որոշակի գաղափար մ՚ունենալոյ շէնքին անցեալոյն վրայ, որոյ նկատմամբ ժողովրդեան մէջ այլ ընդ այլոյ մեկնութիւնք և աւանդութիւնք շատ են, որոնցմէ հաւանականագոյնն է թէ Յունակերտ եղած լինի գմբեթն ։

Նոյն տեղէն 20 վայրկեան յառաջ երթալով կը մտանք Տէվէ—Պօյնու կոչուած երկայն դաշտը,

ո՛ւր վերջին պատերազմին բաղում զինուորաց արիւն թափուեցաւ մեծամեծ ճակատամարտնե-րու մէջ ։

Ասա կարեւոր կը համարիմ Բասեան գա-ւառին վրայ ընդհանուր տեղեկութիւններ հա-ղորդել և ապա շարունակել մի և նոյն գլուխը։

## ԳԼ. Զ.

### ԲԱՍԵԱՆ ԳԱՒԱՌ

Բասեան, ըստ Խորենացւոյն, ԱՐՍՐԱՏ Նա-հանգի գաւառներէն մին, որ առ հասարակ դաշտային է հորիզոնական դիրքով և լայնա-ծաւալ տարածութեամբ, որոյ երկայնութիւնն երկու օր, իսկ լայնութիւնը մէկ օր կարաւան հազիւ կարող կը լինի կտրել։

Երասխ գետը դրեթէ Արեւելահիւսիսէն դէպ 'ի յԱրեւմտահարաւ ոլորապտոյտ ընթա-ցիւք սոյն գաւառը կը բաժնէ երկու գլխաւոր մասերու, որոցմէ իւրաքանչիւրն իւր բնական դրից համաձայն զիւր անուն առած է, որով մին վերին և միւսը ստորին Բասեն կը կոչուին։ Սոյն երկու բաժանումները դարձեալ իւրեանց բնական վիճակովն իրարմէ մեծ զանազանութիւն ունին, զոր օրինակ Վերին Բասեն իւր բոլոր տա-րածութեամբ տափարակ դաշտ մի է հիանալի տեսարանաւ մը, 'ի բաց առեալ Հիւսիսական մի փոքր մաս, որ անտառոտ է և սահմանակից Ստորին Բասենի, որ ունի զանազան լեռնահո-

վիտներ, մեծ և փոքր ձորակներ, խառն ՚ի խուռն բլրակներ, ընդ որս ունենալով հանդերձ շատ տեղերը տափարակ դաշտօրայք, ինչպէս նաև Հիւսիսային կողմանէ մեծագոյն մասամբ գեղեցիկ և ընդարձակ անտառներ կան, ո՛ւր բազմաթիւ են մայրի մեծամեծ ծառեր :

Բասեան գաւառն իւր պատուական և արգաւանդ հողերովը Կարնոյ գաւառի տեւական շտեմարանն կը համարուի, յորմէ դուրս կուգան ամեն տարի ահագին քանակութեամբ ընտիր ցորեան, գարի և ընդեղէնք :

Տեղւոյս Հայ, Տաճիկ և Քուրդ բնակչաց անհոգութեան և տգիտութեան պատճառաւ այս գեղեցիկ և զուարճալի երկիրն, հակառակ իւր ունեցած յարմարութեան, մանաւանդ հողին, ջրոյն և կենսատու օդին, գրեթէ ամենապարզ պտուղներէ զուրկ կը գտնուի, վասն զի անծառաստան է, և սովորութիւն չունին զայնս տնկելոյ և մշակելոյ. մանաւորապէս Վերին Բասենին գալով՝ շատ տեղեր վառելոյ փայտ անգամ չունին. այս պատճառաւ մեր նախնիքներէն անփայտ Բասեն անունն առած էր:

Անցեալ տարի կառավարութեան կողմանէ յատուկ հրահանգներ տրուեցան իրենց այս մասին, այժմ հաւանական է որ բաւական սկսած լինին տեղ տեղ ծառաստան և մրգաստան ընելոյ :

Այո՛, այս տեսակ նախնական երկիրները

ծաղկեցնելոյ համար, երբ ժողովուրդը բնութեան բարիքէն օգուտ քաղել չ'գիտէ, աշխարհաշէն և ստիպող ձեռքեր պէտք են մինչեւ ց'թուականն երկրի բնակչաց զգաստութեան։

Աւելորդ չեմ համարիր աստանօր յիշատակել նաեւ գաւառիս Հիւսիսակողման դեղեցիկ լեռները, խոտաւէտ, ջրաւէտ և օդաւէտ, ո'ւր ամառ եղանակին մէջ վրանաբնակ հարիւրաւոր քրդեր իւրեանց ընտանիքներովը և հազարաւոր խաշինքներովը աստ գալով կը հաստատուին և մինչեւ աշնան երկրորդ ամսուան վերջերն ոչխարներն այս հարուստ բնութեան մէջ կ'արածեցնեն, որոնցմէ սովորականէն շատ աւելի կաթ կ'ընդունին ու կը պատրաստեն կոգի, իւղ, պանիր և չորթան ու կը տանին գաւառիս այլ և այլ կողմերն 'ի վաճառ։

Վերոյիշեալ լերանց մէջի զզզուն աղբիւրներն են, որք մեր նախնիքներէն «ԱՐԾԱԹԻ ԱՂԲԻՒՐՔ» կոչուած էին։

Ուղեւորութիւննիս յառաջ տանելով 'ի Վերին Բասեն երթամք 'ի Հասան—Գալէ։

## ԳԼ. Է.

### ՀԱՍԱՆ–ԳԱԼԷ

Հասան—Գալէ գաւառին և մանաւորապէս Վերին Բասենի գլխաւոր տեղին և միանգամայն իւր նախնի փառաւոր քաղաքն էր բեր-

դուլ և պարիսպներով ամրացեալ հանդերձ բաղմաթիւ բնակչօք ։

Քաղաքը շինուած է լայնանիստ լերան մը հարաւային ստորոտը, որ 'ի հնումն «Միրանի լեռ» կը կոչուէր. լերան մէկ մասին վերայ բերդըն՝ Հասան—Գալէ կոչուած է, որոյ անուամբ կը յիշուի քաղաքն ։

Հասան—Գալէն անշքացած է բաղդատմամբ իւր հին բարգաւաճ վիճակին. Ռուսական արշաւանաց երեսէն իւր նախկին Տաճիկ և Հայ ստուար բազմամարդութեան մեծագոյն մասը վտարանդի լինելով կորած են ։ «Ասկէ 70—75 տարի յառաջ 1,800 տուն բնակիչ ունենալը» կ'աւանդեն ծերերն. իսկ այժմ 250—280 տուն հազիւ կը հաշուին, մեծագոյն մասամբ Տաճիկ։ Հայք ունին աննշան եկեղեցի մը և նմանօրինակ ծաղկոց մը։ Այս տեղ Գայմագամ կը նստի Կարնոյ կուսակալութեան տակ ։

Հասան—Գալայու լերան արեւելեան թեւին դրեթէ ստորոտը շինուած է ԱՍՏՈՒԱԾԱԾՆԱՅ ՎԱՆՔԸ գմբեթաւոր և գեղեցիկ դրիւք ։ Սոյն վանուց համար կը պատմուի թէ «Գրիգոր Մագիստրոսէն կառուցեալ է», որոյ անուամբ երբեմն կը կոչէն զայն ։ Մագիստրոսի գերեզմանն աստ է, ինչպէս նաեւ երկու կաթողիկոսացը ։ Նախնի ժամանակաց մէջ այս տեղ 2—3 անգամ միւռոնի օրհնութիւն կատարուած է և ունեցած՝ կանոնաւոր միաբանութիւն, ինչպէս

նաեւ 200 էն աւելի թեմական Շէն գիւղեր :

Վանքէն 1/4 ժամ հեռու ապառաժ քարէ մը բաւական քանակութեամբ հանքային թթու ջուր մը դուրս կուգայ , որմէ տեղացիք երբեմըն կը խմեն յառողջութիւն : Վանքը կը գըտնուի վանահօր մը ձեռք, որ կը հսկէ նորա պարագայից վրայ , որք այնչափ ընդարձակ չեն :

Հասան—Գալէին մերձ է Չօպան Քէօփրիւսիւ կոչուած նշանաւոր կամուրջն՝ եօթն քարաշէն կամարներով՝ շինուած Երասխ գետոյն վրայ :

Վիրգիլիոս կը պատմէ թէ սոյն գետին վըրայ Աղեքսանդրի և Հռովմայեցւոց շինուած կամուրջները քար և քանդ կը լինէին Երասխայ սրընթացութեան առջեւ . որչափ շինուէր նա կը քակէր անյապաղ. այս առթիւ Երասխը «կամուրջի չհամբերող» անուանեցին : Մի և նոյն բանը կը պատմեն նաեւ տեղւոյս համար թէ « ժամանակին բնակիչք այժմեան կամուրջին տեղը քանիցս կամուրջներ կառուցին , բայց անհամբեր Երասխն կը գլորէր , կը քանդէր , կը տանէր զայնս : Յետոյ մի Հայ հովիւ հնարքով մը յաջողած է այժմեան կամուրջի հիմնաքարինքը ձգել, որոյ վերայ տեղացիք կարող եղած են կամուրջը դիւրութեամբ շինել . ահա այս պատճառաւ կոչուեցաւ «Հովուի կամուրջ» :

Ճանապարհնիս յառաջ վարելով կը հասնիմք Հերդեւ գիւղն , որ ունի 80 տուն բնակիչ, յորս կը գտնուին 15 տուն Տաճիկ : Հայք

ունին մի անշուք եկեղեցի երկու ողորմելի քա-
հանայով և մի խեղճուկ ծաղկոց, ո՛ւր կը մեծ-
նան 30—35 դեռափթիթ կայտառ մանուկներ։
Ժողովուրդը երկրագործ է և սովորական ար-
մտեաց հետ կը ցանէ մեծ քանակութեամբ նա-
եւ կտաւատ, յորմէ ձէթ հանելով կը վաճառեն և
երբեմն իսկ ուտելոյ կը գործածեն քաղցր տե-
սակն, որ ձիթախաղէն տասնապատիկ յարգի է
իւրեանց մէջ։ Ունին երկու լաւ ձիթահաններ,
Գիւղիս արտերը կանոնաւոր և արգասաբեր են։

Տեղւոյս Հայք թէեւ ունին դժբաղդ կող-
մեր, սակայն զայնս պատմել մեր նպատա-
կէն դուրս լինելով, ճանապարհնիս շարունա-
կեմք և անցնիմք Հերդեւի բլուրն, որ մէկ ժա-
մուան տեւողութիւն ունի։ Յառաջ երթալով կը
հասնիմք Փօր—օււլ կոչուած ընդարձակ լեռնա-
հովիտներն, որք կը տեւեն 2 ժամէն աւելի,
Տեղւոյս կլիմայն սարսափելի ցուրտ կ՚ընէ, նոյն
իսկ շատ անգամ մայիս ամսոյ մէջ ձիւն կու-
գայ։

Սոյն լեռնահովիտք ընդհանրապէս օդա-
ւէտ և բուսաբեր են, մանաւանդ ձորակաց մէ-
ջերն, ո՛ւր կը գտնուին տեղ տեղ աղբիւրներ.
այսու ամենայնիւ բնակութիւն բնաւ չ՚կայ։ Բը-
նութիւնն, ինչպէս տարուէ տարի գարնան ա-
տենները կը զարդարէ այս լեռներն, նոյնպէս
և աշուն գալուն պէս կը մերկացնէ զայնս։
Սոյն ուղղութեամբ գնալով 'ի մի երկայն ձորակ

կը մտնեմք և գլխիվար իջնալով կը հասնիմք հետեւեալ գետոյ առընթեր ։

## ԳԼ. Ը.

### ԵՐԱՍԽ

Այս գետոյ կողը ու ջրոյն ուղղութեան հակառակ փոքր ինչ յառաջ գնալով կը մտնեմք 'ի **Մեշարա** ըսուած գիւղ, ո՛ւր կը բնակին 20—25 տուն Քուրդ, որք ունին ընդարձակ արօտատեղիք, ո՛ւր հազարաւոր ոչխարներ թողած կարածեն, կը պատմուի սոյն գիւղի բնակչաց համար թէ զարմանալի վարպետ են որսորդութեան արուեստի մէջ, այնպէս որ սուրբ կենդանի մը (որոյ միսը սովորաբար կ'ուտուի) չ'կրնար աւանց վտանգի գիւղիս առջեւէն կամ մերձակայ սահմանէն անցնիլ դիւրաւ ։

Գիւղիս առջեւն երեք քարընկէց հեռու կը գտնուի Երասխ գետն, որ այնպիսի արագութեամբ մռնչելով կ'ընթանայ, գիտես թէ, բողոք կամ դատաստան մ'ունի տեղւոյն բնակչաց դէմ, որ յարաժամ իւր եզերաց վերայ հաւաքուած գեղեցիկ եղնիկները կ'որսան իւրեանց մահահոտ հրացանօքն, սակայն «կամուրջի չ'համբերող» գետին լեզուն ո՞վ կարող է հասկնալ ։

Երասխայ եզերքն շատ տեղեր Նեղոսի ափունքն մեզ կը յիշեցնեն, ո՛ւր բարեբերութեամբ լի է հողագործի քրտինքն, զի սովորականէն շատ աւելի արդիւնք կ'ընդունի ։ Գարնան եղա-

նակին մէջ գետին այս կողմերու եզերքն երկ-նային դրախտ մի կը դառնայ երկրի վրայ իւր անհամար ծաղիկներովն և տեսարաններովը, որք բնականաբար Հայ ուղեւորաց ուշը կը գը-րաւեն ։

3—4 ժամ ուղեւորելէ յետոյ կը մտնեմք երկու լերանց միջավայրը ։ Սոյն լերանց վրայ կան մեծամեծ ծերպեր, ուր պատառիչ գազան-ներ բոյն կը դնեն, մանաւանդ գայլեր, որք յաճախ տեսնուած են այս կողմերը, գլխաւո-րաբար ձմեռ ատենը ամպոտ եղանակին. այս-պէս մեր ուղին առաջ վարելով կը մտնեմք 'ի վերին Բասենի լեռնային մասն։ Ասկէ գնալով կը հասնիմք Ալէմ տաղը կոչուած տեղն, որ նոյնպէս ահագին լեռներ և հովիտներ են, ո՛ւր կան ըն-դարձակ լեռնադաշտեր, որոց վրայ քուրդերը վրան կը հաստատեն, երբ կ'ելլեն 'ի եայլա (այս-ինքն այն արօտատեղն, ուր իրենք իրենց ընտա-նիքն և ոչխարքն ամառը 4—5 ամիս կը բնա-կին)։ Տեղիս օդաւէտութեան և խոտաւէտու-թեան պատճառաւ ամեն կողմը վրանաբնակներ պակաս չեն ։ Աստի մեկնելով մի քանի ժամէն կրնամք հասնիլ Կոթուրէ Համօ կոչուած քուրդ գիւ-ղըն, որ 5 տուն միայն բնակիչ ունի 150 տան չափ ընտիր հողերով և ջրերով, ինչպէս նաեւ խոտաւէտ և պտղաւական արօտատեղիներով ։

Այս գիւղէն ելնելով անցանք մի քանի քուրդ գիւղեր, որոնցմէ իւրաքանչիւրն 4—5—

6—7 տուն բնակիչ հաղիւ ունին, սակայն բնակած ամենահարուստ բնութեան մէջ, որոյ իբր՝ բնական հետեւանք իրենք հարստացած են դըրամով, ոչխարով, տաւարով և մանաւանդ նըժոյգ ձիերով, որոց վրայ կը վարեն փառաւոր և աղատ կեանք մը այդ գեղեցիկ երկրի մէջ, յորմէ մեկնելով չարունակեմք ընթացքնիս և կը հասնիմք յԱրօս գիւղ։

Արօս գիւղն ունի 42 տուն բնակիչ, որոցմէ 12 տուն Տաճիկ են։ Հայք ունին մի Եկեղեցի նորաշէն, մի քահանայ 80 տարեկան, և մի ծաղկոց, ո՛ւր են 35—40ի չափ ուսանողք, որոց ուսուցիչն բարեկիրթ և բաւական զարգացեալ մի անձ է, որով զաւակներն ունին սոյն մխիթարական կողմն՝ հակառակ իրենց հարց այլ և այլ տարաբաղդ կողմերուն։ Ժողովուրդն ունի ջերմեռանդութիւն առ եկեղեցին և սէր՝ առ ուսումն ու դաստիարակութիւն։

Գիւղիս գերեզմանատան մէջ Սուրբ Սարգիս անուամբ մի աւերեալ շատ հին եկեղեցի կայ, որոյ հիմունքն տակաւին մէկ մէթր բարձրութեամբ կը կենան, իւր թուականն անծանօթ է, աւանդութեամբ « 450 տարեկան » կը պատմուի, որոյ Շէն ատեն գիւղս 250 տուն բնակիչ ունեցած է, հարուստ և առատասեղան։ Տապանաքարերն շինուած են ձիու և ուղտի կերպարանօք, ոմանք ունին իւրեանց վրայ թամբ և սանձ. սոյն նշանները կը գործածեն 'ի նշան մեռնողի

քաջարտութեան, ուժեղութեան և երիտասարդութեան։ Փորուած խաչ ընաւ չ'կայ այդ տապանաքարանց վրայ օծեալ կամ չ'օծեալ, զոր ուղիղ չ'լինիր ԽԱՉԱՔԱՐ անուանել։

Գիւղիս Արեւմտեան հարաւն 2 քարընկէց հեռու լեռան մը կողքին մէջ կայ միակտուր քարէ փորուած եկեղեցի մը, որոյ ընդարձակութիւնն կը լինի 20—25 խորամարդ մեթր. դարաւոր հնութիւնն իւր քանդիչ ձեռամբն եկեղեցւոյս շատ նշանները ջնջած է և անընթեռնլի գրեանքն կամ թուականքն աննշմարելի եղած են. միայն թէ եկեղեցին ց'արդ պահած է մկրտութեան և պատարագամատոյց քահանայի սրբութեան տեղիքն։ Կը տեսնուին մի քանի հին խաչեր փորուած եկեղեցւոյս պատերու ներսի կողմերուն վրայ, որք չեն կրնար իւր հնութեան վրայ մեզ լոյս մը տալ թէեւ հետաքրքրուիմք։

## ԳԼ. Թ.

### ՅԻՇԵԱԼ ԱՐՕՍ

Արօս գիւղի Արեւելահարաւը մէկ ժամ հեռու կայ ընտիր քարահանք մը, որոյ դիւրատաշ քարերէն շինուած են իւր նորաշէն եկեղեցւոյ սիւներն, որք թուով 4 են և 6 մեթր միակտուր բարձրութեամբ։ Ասկէ զատ գիւղիս մօտ երկայն լեռ մը կայ անկատար, որոյ քարինքն, ինչպէս կը պատմեն, ամենատոկալի

տաքուԹեան կը դիմանան . վերջապէս Արօս քարերով շատ հարուստ է ։ Նոյն գիւղն կը գըտնուի Խնուսայ Արեւմտակողմն և անոր վերաբերեալ է ։

Տեղէս մեկնելով 3 ժամէն հասանք Պէկուտի կոչուած քուրդ գիւղ , ո՛ւր երբեմն բազմաԹիւ Հայք բնակուած պէտք է ըլլին նայելով իրենց յիշատակարանաց , որք ուղեւորաց աչքին կը զարնեն . յետոյ եկանք Ղըլճու , որոյ սահմանին մէջ պղնձի հանքերն առատ են ։ Տեղէս սկսեալ ընԹացքնիս շարունակեմք , մեր դէմն կ'ելնեն Խնուսայ մի քանի լճակներ, որոց շրջապատի արօտատեղիքն շատ նշանաւոր են ։

Այս գեղեցիկ վայրերէն ելնելով դարձեալ ուղեւորիմք , և կը մտնեմք Մշոյ վերաբերեալ հողը ։ Նոյն տեղ ճանապարհէն 1/4 ժամ դուրս, ապառաժի մը միջէն պատուական ջուր մը կը բղխէ , որ արեւակէզ ուղեւորաց համար ամեն ինչ կ'արժէ . այսպէս հետզհետէ ընդարձակ դաշտօրայք և բլուրներ կտրելով կը հասնիմք Չարպօրա կոչուած գետը , յորմէ հարկ է անցնիլ դիմացի կողմն , ո՛ւր կը գտնուի համանուն Չէրքէզ գիւղ մը 50 տնէ բաղկացած ։

Նոյն գետը դարնան եղանակին բաւական կատաղի է և ճանապարհորդք « տկանաւակ » ( +ելէկ ) կոչուած գործիքով գետին վրայէն կը անցնին ։ Տկանաւակը կը բաղկանայ օդով լեցուն 16 ոչխարի տիկերէ , որոնք իրարու հետ

կապելով քառակուսի մը ձեւացուցած են, վրան բարակ փայտերէ վանդակուած, որոյ մէջ տեղն 3—4 հոգի ճանապարհի սովորական գոյքերովըն հազիւ կարող կը լինին լենալ, երկու հոգի թիավար կարճիկ թիերովն սոյն հետաքրքրական նաւակը վարելով ջրոյ հոսանքին հակառակ չեղութեամբ կը հանեն եզերքն, ուր դուրս կ'ելլեն մէջի ճանապարհորդք մահուան դեղնութենէ մը բռնուած՝ երկուղի տագնապէն։ Իսկ անասնոց գալով, որոնք որ լող կրնան տալ, կը քշեն զայնս 'ի գետ մերկացեալ վիճակով. ինչպէս ձին և գոմէշ, որոնք ջրոյ մէջ լողալու մասին միւս բոլոր անասուններ կը գերազանցեն։

Սոյն գետն գրեթէ Խնուսայ և Մշոյ այս կողմի միջին սահմանը կը կազմէ։

Աստի կը շարունակեմք մեր ուղին և կը հասնիմք 'ի Ծխավու, որ ունի 20—25 տուն բընակիչ, մի եկեղեցի և մի ողորմելի ծաղկոց, որոյ չէնքին տակ ոչ թէ մարդ այլ և անասուններն անգամ պահել առողջապահական կանոնին դէմ է։

Գիւղիս շրջապատը կը գտնուի Տարօնոյ ԱԽԵՐԱԿ, և Սահակ Պարթեւի՝ մեր ԲԱԶՄԵՐԱԽՏ ՀՕՐ ՄԵՆԱՍՏԱՆՆ։ Հետզհետէ կ'անցնիմք Կռավու հայ գիւղն, ուր «Ներսախեան» փոքրիկ ընկերութիւն մը կայ գիւղի ծաղկոցին խընամքն ստանձնող. Նոյնպէս Կոմս և Քոփերս հայ գիւղօրայքն։ Կանցնիմք Եփրատայ օժան-

դակ ճիւղը, Մուրատ կամ Արածանին, որոյ վերայ 12 աչքով մի կամուրջ կայ կապուած, որ գրեթէ անգործածելի վիճակի մէջ մնած է, 250 քայլ երկայնութեամբ: Այսպէս անցանք մի քանի փոքրիկ գիւղեր եւս և յետոյ Մեղրաջուրըն, ուստից 1 ժամէն հասանք 'ի Մուշ քաղաք:

## ԳԼ. Ժ.

### ՏՈՒՐՈՒԲԵՐԱՆ

Տուրուբերան նահանգի սոյն կարեւոր գաւառի (ՄՇՈՅ) բուն սահմանն (ինչպէս ուրիշ մի քանիներուն) մեր նախնի աշխարհագիրներէն որոշուած չէր ճշդապէս, թէպէտև կը յայտնեն թէ ամենէն ընդարձակ գաւառն եղած է յիշեալ նահանգին, սակայն չ'գիտցուիր թէ որչափ կը տարածուէր 'ի հնումն, որպէս զի ներկայիս մէջ հասկցուէր թէ ց'արդ ի'նչ փոփոխութիւն կրած է այդ երկիր իւր քաղաքական բաժանումներովը:

Այժմ սովորաբար Մշոյ դաշտօրէից ամբողջութիւնն կը կազմէ զՏարօն գաւառն, որոյ անուան համար կը պատմուի թէ Նոյայ Տարբան որդւոյն անունէն ծագումն առած լինի, իբրեւ թէ նա հօրմէն բաժնուած՝ կ'առնու իւր բազմաթիւ մանչ և աղջիկ զաւակներն ու թոռները կը գայ յայս կողմն Եփրատայ մէկ ճիւղին վերայ կը հաստատէ զիւր բնակութիւնն և իւր բընակած տեղին անուանեց ՏԱՐՕՆ, որ յետոյ ընդ-

հանրանալով գաւառն եւս կոչուեցաւ նոյն անուամբ։

Սոյն գաւառն 'ի հնումն Սլկունեաց ցեղի կալուածն էր, որ ետքէն ինչ ինչ դէպքերով Մամգուն Մամիկոնեան տոհմի նահապետն Տրդատայ հրամանագրովն Սլկունեաց ձեռքէն առաւ։

Ներկայիս մէջ Տարօն գաւառի մօտաւորապէս սահմանն կը համարին արեւելքէն Նեբրովթ և Գրգուռ, Արեւմուտքէն Քարքէ, Հարաւէն Տօրոս և Հիւսիսէն Քօսուր կոչուած լերինքն։ Սոյն շրջապատի մէջտեղն է ահա Տարօնոյ կամ Մշոյ լայնածաւալ դաշտն, որ երկու մասի բաժնուած է, Մուշ և Զուխուր մասնաւոր վիճակներու։

Մուշ վիճակն իւր համանուն քաղաքն եւս ունի, իսկ «Զուխուրն» վիճակի անունն է և կ'իյնայ գրեթէ Մշոյ Արեւելակողմը։ Ամբողջ գաւառի տարածութեան մասին երկու ու կէս օրուան կարաւանի ճանապարհ կը հաշուեն Արեւելքէն յԱրեւմուտս իւր երկայնութիւնը, Հարաւէն 'ի Հիւսիս 6 ժամ լայնութիւնն։ Սոյն մեծ դաշտավայրն, զոր Տաճիկներ «Մուշ օվասը» կը անուանեն, զարդարուած է տեղ տեղ փոքրիկ բլուրներով, որք մասնաւոր գեղեցկութիւն մը կ'ընծայեն ուղեւորաց աչքին այդ դաշտի զգալի հորիզոնին մէջ։ Երկիրն չէ քարոտ, կարծես թէ բնութիւնն յատուկ խնամօք քարերը ժողո-

ված է այս կողմերէն և ձգած է 'ի Մանազկերտ գաւառ :

Երկու գետեր կ'անցնին իւր մէջէն . Ա. Եփրատ , որ Հարք գաւառի կողմերէն կը գայ և գաւառիս Արեւմտակողմէն կ'անցնի , որոյ մէջ կան հետեւեալ անուամբ ձկունքն, ինչպէս Դեղիկ , Դեպուկ, Կարապետիկ, որոյ կռնակը տեսնողներն կ'ըսեն թէ կուզ է և Մող : Բ. Մեղրագետակն , որ Մշոյ Արեւելակողմէն կը բղխի ( որոյ վերայ իր կարգին կը խօսուի ) քաղաքի Հիւսիսակողմէն յառաջ գնալով կը խառնի յԵփրատ: Սոյն գետակն Արածանի գետոյն Հիւսիսային օժանդակն է և Արածանին Եփրատայ Արեւելեան զօրաւոր ճիւղը կը կազմէ, որ կը բղխի Ծաղկաց լեռներէն և իւր անունը կ'առնու համանուն գիւղէ մը , որոյ քովէն անցնելով կը դիմէ յԱրեւելս և կ'ընկերանայ իւր Եփրատ մօր : Վերոյիշեալ երկու գետերն 'ի բաց առեալ, կան նաեւ մեծամեծ առուակներ , ոմանք Հարաւէն 'ի Հիւսիս և ոմանք Հիւսիսէն 'ի Հարաւ ընթացող, որք կը թափին 'ի Մեղրագետակ և յԵփրատ, որոց եզերաց վերայ կը գտնուին տեղ տեղ մեծամեծ չամբեր :

Տարօն կամ Մուշ գաւառն , բաց 'ի իւր կողմերն որոշող գլխաւոր լեռներէն , ունի նաև բազմաթիւ աննշան լերինք իւր շրջապատն, այնպէս որ ամբողջ Մշոյ դաշտը կարծես թէ լեռներէ սահմանուած է : Գաւառիս լեռներէն ո-

մանք լի են այլ և այլ տեսակ ծառերու բնական անտառներով, որոնց մէջ Ալաճահրի կոչուած ծառն նշանաւոր է իւր պտուղովն, որով ոչխարի մորթերը դեղինի կըներկեն 'ի վաճառ. Ծըղիխ, որոյ կեղեւովն մութ—կարմիրի կըներկեն մորթերը: կան նաեւ թեղօշի, կաղամախի, տանձենի, ընկուզենի և շլորենի և այլն ծառեր:

Մշոյ համօրէն դաշտի մէջ 100—110 Հայ գիւղ կը գտնուի սփռուած, որոնցմէ այցելածներուս նկատմամբ պէտք եղած տեղեկութիւնք կը տամ ուղեւորութեանս կարգին մէջ: Սոյն գիւղերու միջին թիւն է 70 ական տուն: Ունին հազարաւոր պանդուխտներ թէ՛ Պօլիս և թէ՛ 'ի Ռուսաստան, ո՛ւր դիմելոյ սովորութիւնն հետըզհետէ կ'ընդհանրանայ դժբաղդաբար:

Գաւառիս մէջ 8—10 գիւղ քուրդ հազիւ կը գտնուի. սակայն շրջապատը բաւական շատ են, որք իւրեանց ընտանեօք և ոչխարօք լերանց արօտավայրերն ամառ առեն կը դրաւեն, ո՛ւր վրաններ հաստատելով կը բնակին մինչեւ յաշուն: Վերոյիշեալ 100—110 Հայ գիւղերուն մէջ կը տեսնուին նոյնպէս երեք Հայ կաթոլիկ գիւղեր և են Նորաշէն, Օղունկ և Առինջ, . . .

. . . . . . . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . . . . . .

Երկրիս բոլոր բնակիչներն առ հասարակ քաջառողջ, զօրաւոր և առոյգ են (այս բանն արդէն Պօլսեցւոց աչքին անծանօթ չէ) և արդիւնք է երկրի պատուական կլիմային:

Տարօն գաւառի մէջ, սովորական ընտանի կենդանիներէն զատ կը գտնուին նաեւ հետեւեալ վայրի անասունները, ինչպէս արջ և գայլ, որք գիշեր ատեն շատ անգամ արտերու և այգիներու վնասներ կը հասցնեն, որոյ համար տեղացիք ժամանակին երբեմն հսկելոյ հարկադրուած են. Նոյնպէս վարազ, աղուէս, նապաստակ, կուզ և վայրի կատու պակաս չեն գաւառիս այլ եւ այլ կողմերը։

Երկաթի և քարի հանքերուն հետ շատ տեղ կը գտնուին «կաղճին» կոչուած ընտիր հողեր, որով կը շինեն հողէ ամաններ մեծ և փոքր որք շատ առողջարար են ուտելիք պահելոյ։

Թռչնոց կարգին մէջ կը յիշուին արագիլ, (լէյլէկ) վայրի բադ և սագ, արտուտ, սարորիկ, լոր, արոս (գիւղի մ՚անուն ալ է) ճնճաբօր, որ սիրուն կարմիր գոյն մի ունի։

Տուրուբերանի սոյն գաւառին մէջ գտնուած ծաղիկներ և մանաւանդ բանջարաղէնք խիստ հետաքրքրական են իւրեանց բուսական հանգամանքներովն և ժողովրդեան աւանդութեամբք, առնցմէ մի քանի գլխաւորներէն աստ նշանակեմք, ինչպէս կարմիր շուշան, որոյ մէջ գեղեցիկ և գեղին է, բնութենէն ունի ըսքանչելի հիւսք և տեսք և գլխաւորաբար քարոտ տեղուանք կը բուսնի. Նունուֆար գետերու եզերքն և մանաւանդ տելթաներու մէջ, ձնծաղիկ (ձեան ծաղիկ), զոր տեղացիք երբեմն իբ-

րեւ փորյաւի դեղ կը գործածեն . սոյն ծաղի-
կը ձիւնի գնալէն անմիջապէս ետքը բացուելու
պատճառէն առած կերեւի զիւր անունն . Ան-
թառամ ծաղիկ , որ կը բուսնի լեռնոտ տեղեր
աւելի , թերթիկ չունի , կլոր է գլուխն և եր-
կու տեսակ է , դեղին և կարմիր , զոր գաւա-
ռիս մէջ տեղ տեղ « Ս. Կարապետի ծաղիկ» կ'ան-
ուանեն և ոմանք ևւս « անթառամ ծաղիկ » որ
քիրաւի բնաւ թառամիլ չունի իր կլոր չինուած-
քէն ։

Այս կողմերու բանջարեղէններն բազմատե-
սակ են , որոնցմէ մի քանիք են « մանտակ » ,
« ժախ » , որ իրենց պահք օրերու կերակուր-
ներն են աղով խաշած . օղին , որոյ արմատն է,
չրէշտ ( շիրիշ ) . լոշթակ , որոյ տերեւները դրե-
թէ ծխախոտի կը նմանի , սորա համար կ'աւան-
դեն թէ « Յովնան մարգարէի դդմենւոյն տեսա-
կէն է , որոյ արմատը շատ խորունկ է գետնի
տակը և միանգամայն մարդանման , մէկը չ'կըր-
նար յանդգնիլ զայն դուրս քաշելոյ , ձայն կը
հանէ և մարդն անմիջապէս կը մեռնի , ո'վ որ
կ'ուզէ զայն ունենալ , պէտք է կանխապէս բոյ-
սին բոլորտիքը լաւ մը փորելով խորունկցնէ ,
այնպէս որ արմատն ինքնին պրծելոյ սատիճա-
նին հասնի , այն ատեն փոքրիկ կենդանի մը ,
զոր օրինակ կատու , չուանով մը կապելու է ար-
մատին , կատուն թող քաշէ զարմատն և գետ-
նէն դուրս հանէ , յայնժամ կենդանին կը մեռ-

նի և մարդս այլ եւս անվախ կարող է զայն առնել » ։ Դեղ, որ պանրի մէջ կը դնեն, ունի անուշ հոտ մը․ սպխտըկուկ և փնկայ, զորս գիւղացիք կերակուրի համար կը գործածեն․ փէնճ բանջար, որով յարութեան Տէր օրը տեղ տեղ ճաշ ընելով կը բաժնեն ։ Խաւրծիլ ( ուշխուն ) ։ Կանգառ, որոյ ազնիւ տեսակի արմատէն կը շինեն ձուլթ, զոր ոմանք « ծամոն » կ'անուանեն, վասն զի ծամելոյ համար կը գործածուի, սոյն նիւթն ամէն կողմ կը տարուի, և երբեմն խակ 'ի Պօլիս կը բերեն, ոչ մեծ քանակութեամբ։ Բող, որ մեծամեծ եռաթեւեր կը տարածէ և քարաժայռերու մէջ շատ առատ է և կը լինի պատուական կերակուր ոչխարաց ։

Առ հասարակ կը ցանեն ցորեն, իր տեսակներովն, գարի, տարեկան, կուկըլ, կորեակ, սիսեռ, կտաւատ, ոսպ, շողգամ և կաղամբ ։ Գիւղացւոց մէկ մասի կերած կուկըլ և կորեակ հացըն է, իսկ ցորենի հացն ստիպեալ են պահել այնպիսի երթեւեկողաց, որք լեզու չեն հասկնար ։ Գաղպին չ'յիշեցի, զի ամենուն ծանօթ է։

. . . . . . . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . . . . . .

## ԳԼ. ԺԱ.

### ՄՈԽՇ ( ԲԵՐԴԱՔԱՂԱՔ )

Մուշ կը գտնուի համանուն ընդարձակ դաշտի Արեւմտակողմը մեծամեծ բլրոց զառի-

վայրներուն վրայ Սիմ լերան ստորոտը . տուները շինուած են առ հասարակ աղիւսէ և մեծաւ մասամբ երկայարկ , սակայն ոչ ճաշակաւոր ։ Հայկական և Տաճկական տուները խմբովին իրարմէ կ'որոշուին . փողոցները շատ նեղ և անկանոն , ձմեռուան համար գրեթէ անտանելի է այդ ելեւէջական ճանապարհներն երթեւեկել , մանաւանդ երբ գետինը թաց լինի ։

Բերդը կը գտնուի քաղաքին արեւմտակողմը բարձր բլուրի մը վրայ աւերեալ . . . . .
. . . . . . . . . . . . . . . . . . . . .
. . . . . . . . . . . . . . . . . . . . .

Մշոյ քաղաքի Հարաւային ձորակէն մի գետակ կը վազէ , որ քաղաքի մի քանի փողոցներու տեսարանները կը քաղցրացնէ և որոյ վերայ իւրեանց ջրաղացքները կը դառնան ։

Մուշ քաղաքի ընդհանուր բնակչաց թիւն 2,500 տունէն աւելի կը հաշուեն , յորոց 1,000 տուն Հայ է , մնացածը Քրդա—Տաճիկ են, որք մեծէն մինչեւ 'ի փոքր վրանին սուր կապելոյ սովորութիւնը ց'արդ կը պահեն։

Տեղիս թէ' Տաճիկք և թէ' Հայք առ հասարակ առողջ և կայտառ են , կազմուածքնին զօրաւոր և ուժեղ , խօսուածքնին ընդհանրապէս կոկորդային . սոյն հանգամանքներն անշուշտ տեղի բնական վիճակի արդիւնքն են բնակողաց վերայ ազդած իւր պատուական օդովն ու ջրովն և դիրքովն ։

Հայք ունին 3 եկեղեցի հանդերձ 3 մխա-
կան վարժարաններովն, որոց վերայ զատ յօդ-
ուածով ետքէն պիտի խօսիմ, երբ ուղեւորու-
թենէս վերջը, կարգ կը գայ ՀԱՅԱԲՆԱԿԻ կրթա-
կան կողմերուն վրայ ընդհանրապէս խօսելոյ՝ վե-
րաբերութեամբ Միացեալ ընկերութեանց նախա-
կրթարանաց անցեալ ու արդի կացութեան և
ապագայի արդիւնաւորութեանը։

Մշոյ Հայք կընան երեք գլխաւոր մասերու
բաժնուիլ. Ա. վաճառական, Բ. արհեստաւոր,
Գ. երկրագործ։ Նպարավաճառաց մեծագոյն
մասն Տաճիկ են, ինչպէս և Հայ վաճառականաց
գլխաւորներն Բաղէշցի։ Քաղաքիս գլխաւոր
առեւտուրն Կարնոյ և Բաղիշոյ հետ է, իսկ
մանաւորն ու յաճախականն շրջակայ Հայոց և
Քրդաց գիւղօրէից հետ, որոնց երթեւեկու-
թիւնք քիչ անգամ կը պակսին տեղէս։ Առեւ-
տրականներն 200 չափ կրպակներ ունին հան-
դերձ արհեստականներովն, որոնց արհեստնե-
րըն շատ պարզ և ամենէն աւելի սովորական-
ներն են, ըստ որում իրենք ժամանակի ճար-
տարութենէն տակաւին ներշնչութիւն մը չեն
ընդունած։

Ժողովրդեան ստորին կարգէն մաս մը թէ՛
Տաճիկ և թէ՛ Հայ քաղաքի մօտակայ անտառ-
ներն արմատէն քակելով շարունակ կը բերեն 'ի
վաճառ և կամ իրենց տան համար. ինձ կը
թուի թէ տեղւոյն կառավարութեան ուշադրու-

թիւնը տակաւին չէ դարձած այդ բանին վրայ, որպէս զի խստիւ պատուիրէ, որ անտառահատներն արմատներուն չ'դպչին, որ յապագային անտառն կարենայ շարունակելի լինիլ։

Մշեցիք ունին խաղողի բազմաթիւ այգիներ, որոնք արեւերես պառիկներուն վրայ լինելով գինիները շատ պատուական կ'ըլլան, զորըս Հայ Մշեցիքն անուշ անուշ կը խմեն ծառերու շուքերուն տակ, և երեսնին կարմրցնելով առիւծ կը կտրին մանաւանդ երբ գլուխնին տաքնայ։

Մուշ քաղաքը Վանայ կուսակալութեան դերիշխանութեան տակը Միւթէսարըֆութիւն է։

Տեղւոյս վերայ այսչափ, յաջորդ գլխով կը մեկնիմ դէպ 'ի Բաղէշ ճանապարհնիս ուղղելով քաղաքիս յԱրեւելահարաւ։

## ԳԼ. ԺԲ.

### ԱՍՏՂՆԲԵՐԴ ԿԱՄ ՄՈԿԱՑ ԲԵՐԴ

Մշոյ Արեւելակողմը 1 1/2 ժամ հեռու «ԱՍՏՂՆԲԵՐԴ կամ ՄՈԿԱՑ ԲԵՐԴ կոչուած աւերակ մի կայ յիշատակութեան արժանի, որ կը թուի լինիլ Տարօնոյ նախնի ամրոցներէ մին, կառուցեալ լեռնակի մը գագաթան վերայ՝ պատուական և զուարճալի մի տեղը, որոյ չորս կողմերն են ահագին հովիտք խոտաւէտք։ Ամրոցիս վիմխարի պարսպաց մեծագոյն մասն, 'ի

բաց առեալ Արեւմտակողմանն , տակաւին կանգուն կը կենայ ։

Սաղնբերդէն վար իջնալով շարունակեմք մեր ուղին գնալոյ 'ի Վանս Ս. Առաքելոց , ճանապարհին կը հանդիպիմք կարգաւ Մոկունք , Տերկեվանք և Արաղ կոչուած հայ գիւղից , յորոց վերջինն ընդարձակ ձորի բերանը շինուած է , որոյ համար կ'աւանդեն թէ « մի գեղեցիկ քաղաք եղած է նախապէս » ։ Սոյն դարաւոր խօսքն հաւանականութեան կը մօտի տեղւոյս այժմեան նշմարելի հնութեանց բեկորներովն ։ Նոյնպէս ձորերէն վազող ջրերն երբեմն իւրեանց հեղեղանման հոսանքներով աւները կը խորունկցնեն և դուրս կը հանեն շատ հին կարասիներ , որք պահուած կը թուին երկրի նախնական խաւերուն մէջ անթուական ժամանակէ , որպէս գիւղացիքն իսկ ականատես ինձ պատմեցին թէ « Մեր գիւղի հողերուն և ջրերուն տակերը շատ բաներ կը գտնուին , սակայն մեր մէջ իմաստուն և կարդալուն խօսք գիտցող մարդիկ չ'կան , որ գիտնան տեղերն և հանեն զայնս․ որք անշուշտ մեր պապերու հարստութիւնքն են ու լուսահոգիները մեռած » ։

Սոյն գիւղէն բաւական բարձրանալով լեռնահովտաց մէջէն կը հանիմք Մշոյ Ս. Առաքելոց վանք ։

Սոյն հռչակաւոր մենաստանն Մուշէն երկուք ու կէս ժամ հեռու՝ մասամբ մընորա յԱ-

բեւեռահարաւ, կը գտնուի Տօրոս լերանց մասնաւոր երկու կատարներու միջեւ՝ գեղեցիկ և լաւ տեսարան ունեցող տեղւոյ մը վրայ, կառուցեալ կոփածոյ քարերէ. ունի մի եկեղեցի տաճարով, որոյ վերայ կաթուղիկէն շինուած է ճաշակաւոր և ճարտարարուեստ:

Տաճարին աջ ու ձախ կողմերը կը տեսնըւին յանուն Մարկոս և Ղուկաս Աւետարանչաց երկու տապաններ, յորս անոնց նշխարներէն մասունքներ կան ամփոփուած: Նոյնպէս աւանդութեամբ կը պատմուի թէ «Ս. Գրիգոր Լուսաւորչին ձեռամբ 12 առաքելոց մասունքներ կան ամփոփուած տաճարիս խորանին մէջ»: Անշուշտ այս պատճառաւ սոյն մենաստանն «Առաքելոց վանք» կոչուած է:

Եկեղեցին փոքրիկ զանգակատունով մը շինուած է Հայոց Ռ.Գ. թուականին (329 տարւան) Կարապետ Արքեպիսկոպոսի շնորհիւ. 'ի յիշատակ իւր ծնողաց, իսկ տաճարն իւր տեսքով ցոյց կը տայ թէ հին է, որոյ կառուցման թուականը չկայ և կամ ժամանակն կորուսած է զայն:

Տաճարի տանիքը փոքր և կոկիկ քարերէ պատեալ է, որոյ վերայ կան տեղ տեղ անծանօթ գրեանք, որք Յունական կամ Ասորիական պէտք է լինին: Վանուց շրջապատն քարէ հսկայ պատերով պարսպեալ է. դուռն յԱրեւելակողմ կան կարգ մ'ընտիր ծաղիկներով և այլ

քանդակներով մեծ խաչաքարինք ամենքն հաւասար և մի օրինակ, որք խմբովին կը կոչուին « ԳԵՐԵԶՄԱՆՔ ԹԱՐԳՄԱՆՉԱՑ », որք աստ Թերեւս տարիներով հողնած և տքնած են 'ի Թուղթ և 'ի գրիչ դրելով, Թարգմանելով և հեղինակելով: Ահա սոյն խաչաքարանց առջեւ լըռին և տխուր տապանի մէջ 'ի Տէր կը ննջեն ումանք Հայրենի Աշխարհի նախնի լուսաւորիչներէն, որք են Մովսէս Խորենացին՝ հանճարալից ծերունի Պատմաբանն, Դաւիթ Անյաղթ փիլիսոփայն, Ղազար Փարպեցի ճարտասանն, Մամբրէ քաջ վերածանողն և այլ մի քանիքն, որոց տապանաքարանց յիշատակագրեանքն գրեԹէ ամենքն ալ անընԹեռնլի եղած են:

Կրթական գործով Թափառող Հայ մ'երբ աստ կը հանդիպի և կը տեսնայ զայնս, չ'կրնար կարօտակէզ չըլԹամբ չ'համբուրել սոյն նուիրական Հարց վերայ անկուած օծեալ սպիտակ քարինքն, որոնցմէ մի քանի քայլ հեռու և առընԹեր իրարու կան նաեւ երկու այլ զուգահաւասար տապանաքարինք, որք ըստ աւանդուԹեան « են գերեզմանքն Սահակայ և Համազասպայ »:

Վանուց մերձակայ այլ և այլ տեղերը կը տեսնուին տակաւին մասնաւոր վայրեր, որք կը յարգուին և երբեմն իսկ կը նկարկուին 'ի բարեպաշտ ուխտաւորաց:

Անցնիմք վերոյիշեալ սրբազան վայրերէն

և իջնամք ճանապարհին վերայ, գնալով դէպ 'ի յԱրեւելահարաւ Ծծմբու կոչուած բերդանման տեղէ մ'անցնելով, որ բաւական երկիւղալից է, կը հասնիմք Խաս—գիւղ, որ Մուշէն 4 ժամ հեռու է դէպ 'ի Բաղէշ:

## ԳԼ. ԺԳ.

### ՄՇՈՅ ԽԱՍ-ԳԻՒՂ.

Սոյն գիւղն ունի 300 տուն Հայ բնակիչ, և Մշոյ միճակային գիւղերէ ամենէն երեւելին է, որոյ համար կոչուած է ԽԱՍ—ԳԻՒՂ, որ շինուած է մի տափարակ դաշտի վրայ ընդարձակ նստուածքով: Երեք գլխաւոր Թաղերու բաժնուած, յորոց իւրաքանչիւրն ունի իւրեան յատուկ եկեղեցին կանոնաւոր քարերով շինուած, մին Ս. Ստեփաննոս, մին Ս. Թադէոս և միւսն Ս. Երրորդութիւն, որ այժմ քակած վերանորոգելոյ վրայ կը գտնուին: Ունին 7 հատ քահանայ, յորոց և ո՛չ մէկն ներկայ դարէս ներհնչութիւն ընդունած է: Դպրոց մի ունին, որ գրեթէ չ'ունին:

Այս գիւղ Թէպէտ և իւր բազմահայութեամբն Մշոյ դաշտի գիւղօրէից գլխաւորը կը համարուի, սակայն տգիտութիւնն և անոր հետեւանք՝ չ'քաւորութիւնն միանալով՝ յետին աստիճան թշուառացուցած է զիրենք:

Գիւղացիք կ'զբաղին երկրագործութեամբ, բայց չ'գիտեն Թէ ի՛նչ ընթացք բռնել հարկ է,

որպէս զի իրենց քրտունքն արդիւնաւորութեամբ պսակուին, թէ և տէր են բաւական ընդարձակ արտօրէից ։

Տեղւոյս բնակչաց ապաստանարանն Կ. Պօլիս է, ո՛ւր, ցաւօք լսեցի թէ 400ի մօտ անձինք չարաչար կը պանդխտին, կարօտ մնալով իւրեանց ընտանիքներէն ու Մայրենի Երկրէն, և անդ օտարութեան մէջ կը յիշեն «Ա՜խ Մշոյ խաս— գիւղ, քո հողին մեռնիմ և զքո ջուր խմեմ» ։

Աշխատութեան հողին եւս դժբաղդաբար կը պակսի իւրեանց մէջ. ահագին շեղջեր ունին մարդոց և անասնոց աղբերու, այլ չունին սովորութիւն որ արտերու մէջ նետելով առաւել եւս պտղաբեր ընել զայնս կարենան ։ Վերջապէս, տգիտութիւնն իւրեանց ամեն գործերու մէջ յայտնապէս կը տեսնուի, թէպէտ և իրենք լինին բարի տրամադրութեան տէր անձինք ։

Գիւղիս իգական սեռն հմայութեան կամ կախարդական թղթոց վերայ մեծ հաւատք կապած ունի ։ Սոյն չար և անմիտ սովորութիւնն այդ պարզամտաց մէջ մտած կ'երեւի պանդխտութեան երեսէն, վասն զի շատերն կախարդական թղթերով այլ և այլ մխիթարական գուշակութիւնք լսելով իւրեանց պանդուխտ ամուսնոց վերայ՝ զիրեար կը խրախուսեն ։

Տեղւոյս բնակիչք արդարեւ ունին նաեւ գովութեանց արժանի ձիրքեր, որք դժբաղդաբար չեն կրնար փայլել տգիտութեան մէջ ։ Խաս-

գիւղը ճանապարհի վերայ լինելով՝ կրնայ զանազան նեղութեանց ենթակայ համարուիլ ։ Սոյն ժողովրդեան համար ՎԱՐԺԱՐԱՆ մի անշուք բնական է մանկանց, որոց կրթութեան համար Հայերը համոզող անձինք կը պակսին ։

Գիւղիս յԱրեւելահարաւ 5/4 ժամ հեռու կայ Էրէշէր ( երաշտ էր ) կոչուած Հայ գիւղ մի, որ ունի 50 տուն բնակիչ, մի եկեղեցի և անոր կից դպրոց մը դեղջկական ընտրութեամբ կառուցեալ ։ Սոյն գիւղին հանդէպ քիչ մը հեռու Գէնճէր անուն քուրդ գիւղն է . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . . . . . .

Խաս-գիւղի յԱրեւմուտ կը գտնուին Ալվառինչ և Ծմլակ երկու Հայ գիւղեր, յորոց առաջինն ունի 130 տուն, և երկրորդն 35, իւրաքանչիւրն ունի իւր եկեղեցին և քահանայն, սակայն ոչ դպրոց ։ Ունին ընտիր այգիներ, որոնցմէ կ'ստանան լաւ գինիներ. իրենք են պարզ և ողորմելի մարդիկ թաղուած տգիտութեան տղմին մէջ ։

Ծմլակ գիւղի մէջ կայ Սուրբ „Կարապետ անուամբ կիսակործան մատուռ մը, ո՛ւր ամեն տարի Համբարձման օրը շրջակայ գիւղօրէից ուխտատեղի է ։ Սորա համար աւանդութեամբ կը պատմեն թէ «երբ Ս. Գրիգոր Լուսաւորիչ Ս. Կարապետի մարմինն ջորիի վերայ բարձած կը գար, ջորին այն տեղ հանելուն

պէս ծունկի եկած է, և Լուսաւորիչն ևս աներեւոյթ հրեշտակի մը ձայնի ազդարարութեամբ անդ մի եկեղեցի շինած է յանուն Ս. Կարապետի և այժմեան մատուռն նոյն եկեղեցւոյ յաջորդն է »:

Խաս—գիւղ Հարաւակողմն 1/4 ժամ իրմէն տարակայ Քօլօսիկ անուն գիւղ մը կայ մեծագոյն մասամբ Քրդերէ բնակուած՝ ընդ ամեն 40 տան չափ, որոց համար կը պատմուի թէ «դրացեաց հետ լաւ վարուելոյ չափ իմաստութիւն չունին դեռ»:

Տեղէս բաւական հեռու կը տեսնուի ՍԵԱՒ ԼԵՌ կոչուած սարն, որ լի է անտառներով և Մշեցի գիւղացւոց բնակութեանց համար կը տայ առատօրէն փայտեր: Նոյն լերան մէջ կը բնակի ԲԱՏԸՔՑԻ կոչուած Քուրդ ցեղն, յորմէ մաս մը բնութեան բարիքովն ապրիլ չեն սովրած դեռ, և ասոնց մէջ ընդհանուր սովորութիւն մի կայ, այն է թէ երիտասարդ մը մինչեւ ինչ ինչ գործերու մէջ պէտք եղած քաջութիւն ցոյց չ'տայ կամ քաջավարժ չ'լինի առ. այնս, նա կարգուելոյ իրաւունք չունի և որդէն կամք իսկ ունենայ, իւրեան աղջիկ տուող չ'կայ, ուստի երիտասարդ մը կարգուելէ առաջ գոնէ 2—3 անանգամ պէտք է քաջութիւն ցոյց տայ այլ և այլ գործերու մէջ, կենաց վերաբերութեամբ, որով ամուսնութեան յաջողութիւնը կարենայ վստահել:

Դարձեալ Խաս—գիւղի մօտակայ Հիւսիսակողմը 1/2 ժամ տարակայ կը գտնուին Քրդագոմ և Մկրագոմ կոչուած երկու Հայ գիւղեր, որք ունին իւրեանց եկեղեցին և քահանայն. առաջինն ունի 140 տուն բնակիչ և երկրորդն՝ 45։ Մեղրագետն իրենց սահմանը Խաս—գիւղի սահմանէն կը զատէ։

Քրդագոմի համար կ'աւանդեն թէ «առաջ 250 տուն Հայ բնակիչ ունէր», որոյ 'ի նշան՝ գիւղիս կեդրոնին վրայ կը բարձրանայ մի կլորակ բլուր, գագաթան վերայ կիսակործան եկեղեցի մը։

Կ'անցնիմք Արքայ—Վանք և ուրիշ մի քանի գիւղեր, մեզ միշտ հանդէպ ունենալով Նեբրովթ լեռն, կը հասնիմք յԱւզուտ գիւղ, յորմէ կէս ժամ հեռու բլրակի մը վերայ կայ մի եկեղեցի, որոյ առջեւն [illegible] անուն անցք մը կայ, յորմէ աղքատ ճանապարհորդք բոլորովին աներկիւղ կարող են անցնիլ։ Այս տեղէն երթալով կը ժամանեմք Նոր-չէն անուամբ քուրդ գիւղը, որոյ առջեւը կը գտնուին ընդարձակ խոտաւէտ տաշտեր և ջրեր։

## ԳԼ. ԺԳ.

## ՄԵՂՐԱԳԵՏՈՅ ԱԿՆ

Մշոյ յԱրեւելակողմն Նոր—չէն կոչուած քուրդ գիւղի դաշտավայրին մէջ 'ի Բաղէշ տանող ճանապարհէն 1 քարընկեց հեռու կը գտ-

նուի Մեղրագետակի լճաձեւ ակն , որոյ շրջա-
պատն շատ փոքր է. կեդրոնէն կը բղխի այդ-
ղուլալ և արտասուքի նման ջուրն , որ Թերեւս
անուշահամ լինելուն համար իւր գեղեցկայար-
մար անունն առած է նախնիքներէն , որոնք
սոյն գետոյն նկատմամբ հետեւեալ երեք ա-
ւանդութիւնքն ձգած են իւրեանց Մշեցի Թո-
ռանց ։ Ա. « Մուշէն 'ի Բաղէշ կամ Բաղիշէն 'ի
Մուշ գնացողն այն ժամանակ կը հոգնի երբ
Մեղրագետոյ քովէն անցնելով կը մոռնայ մեղ-
րաջրէն խմելոյ » , որով կամին ասել թէ Մեղրա-
գետոյ ջրէն խմողն նոյն ճանապարհի նեղու-
թիւնքն չզգար և կամ զգացածն կը մոռնայ ։
Բ. « Սոյն գետոյ բղխած տեղին անտակ է » որ
թէպէտ և ստոյգ չ'լինի , սակայն յակն գետոյն
նայողին նոյն գաղափար կը տայ ստուգիւ, վա-
սն զի ջուրն մի տափարակ տեղւոյ վերայ երկ-
րի արգանդէն ամենայն հանդարտութեամբ և
լռութեամբ կապտագոյն ( օդոյ ներգործու-
թեամբ ) դուրս կը գայ և իւր փոքրիկ լճակին
մէջ, առանց աղմկի, դաշտանալով կ'երթայ յիւր
առուն շարունակելոյ իւր ընթացքն ։ Գ. « Մեղ-
րաջուրն կը գայ Ներբովլթ լերան գագաթի լը-
ճակներէն » ( որոնց վերայ կարգին կը խօսուի)·
սոյն վերջի աւանդութիւնն կը յիշուի գրեթէ հա-
մօրէն Տարօնոյ մէջ , իբրեւ թէ ժամանակին մի
հովիւ Ներբովլթայ գլուխն իւր ոչխարներն ա-
րածացած առեն ոչխարներէն մին տեղւոյ լը-

ճակին կը մտանայ, և ջուրը խմելէն յետոյ հովիւը պտտալով ձեռքի գաւազանը կը ձգէ դէպ 'ի յոչխարն, որ փախնալով ճակի քովէն կը հեռանայ. այս առթիւ գաւազանը կիյնայ 'ի ճակն, որմէ այլ եւս դուրս հանելն անկարելի կը լինի։ Կ'անցնի մի քանի ամիս. հովիւն իւր գաւազանն, որոյ վերայ յատուկ նշան պէտք է ունեցած ըլլայ, կը տեսնայ ուրիշի մը ձեռք և կ'առնու զայն. առ այս հովիւն հետաքրքիր կը լինի և կիմանայ որ իւր գաւազանն Մեղրագետոյ ջրոյն մէջ ճակին եղերքը գտնուած է եղեր, որով կը հնչակուի բոլոր գաւառին մէջ թէ «Մեղրագետոյ ջուրն Ներբովթայ գլխոյ ճակներէն կուգայ»։ Գետակն տեղէս սկսեալ հարմնօրէն կ'ընթանայ զանազան դաշտավայրերէ, և Հարաւային և Հիւսիսային լեռներէն վազող բազմաթիւ առուակներ ընդունելով կ'երթայ ու կը խառնուի յԵփրատ։

Մեղրագետն իւր լայնածաւալ ընթացքով Մշոյ աշխարհին մէջ սկիզբէն ց'վերջ իւր անցած տեղերուն գիւղացւոց հողերու սահմաններէն ո' դիտէ քանի հազար քառակուսի մեթր ընտիր և արգաւանդ տեղեր գրաւած է, որոց փոխան ոչ ինչ ընծայած դարերէ 'ի վեր և ո՛չ իսկ յաւիտեան կարող է օգուտ մի տալ իւր բնական դիրքովն. շատ անգամ զինքն հիւրընկալող և շրջապատող դաշտօրէից ազնիւ արտօրայքն ամառուան արեւու խեթիւ նայուածքէն չորցած և

մրկած կը մարին գլուխնին ծռելով հասկերն դէպ 'ի գետն, ուրմէ, կարծես թէ, ծարաւակէզ մարդոց նման ջուր խնդրելոյ համար, սակայն գետն բնութենէն իրեն սահմանուած ուղղութենէն բնաւ չ'կրնար շեղիլ, որ անոնց ջուր տայ, եթէ մարդիկ ժրաջանութեամբ բնութեան դէմն մրցելով զիւր ընթացքը չ'շեղեն յիւրեանց նպատակն։

Մեղրագետէն (գարասու) կրկին ճանապարհնիս շարունակելով կը մտնամք «Ռահվա» ըսուած դաշտաձեւ հովիտն, որ Բաղիշէն 4 ժամ հեռու է և ունի 4 ժամէն աւելի երկայնութիւն և կէս ժամ լայնութիւն։ Սոյն հովիտ մեծ մասամբ շրջապատեալ է բարձր և ցած լեռներով և բլուրներով, որոց մէջ կան զանազան ուղղութեամբ ձորակներ, յորս կը գտնուին առ հասարակ քրդական փոքրիկ գիւղեր, իւրաքանչիւրըն բնակուած 6—12 տուներէ, որք 'ի նախնեաց անտի չունին սովորութիւն ՀՈՂԻն վրայ շատ քրտինք թափելոյ. այսու ամենայնիւ իրենք երջանիկ կ'ապրին։ Ռահվա կոչուած տեղն Մշոյ, Խնուսայ, Պուլանըխայ, Մանազկերտի և Վանայ երթեւեկող կարաւանաց ու այլ ճանապարհորդաց ուղին է, որոյ վերայ կան մի քանի ամայի, այլ մեծ և գեղեցիկ քարերէ կառուցեալ ընդարձակ իջեւաններ, ո՛ւր կ'ապաստանին ճանապարհորդք ձմեռ եղանակին, երբ սաստիկ ցրտերէ և բուքերէ կը բռնուին։ Այս կողմերը

ձմեռ ատեն ամենէն շատ և սոսկալի ցուրտ ընողն Ռահվան է, որոյ մէջ ձմեռուան ուղեւորաց շատ տեսակ դժբաղդութեանց ենթակայ համարիլն ճշմարիտ մի իրողութիւն է, և երբեմն իսկ անձիս վերայ փորձն առած եմ մարդոյ մ'ընկերակցութեամբ:

Աշոյ տարիքով նշանաւոր ծերունիք կը պատմեն թէ վերոյիշեալ իջեւաններն յատուկ պահապաններ ունեցած են ժամանակին Ռահվայի վըտանգներէն զճանապարհորդս ապահովցնելոյ, և ունեցեր են մանրավաճառ կրպակներ ուղեւորաց հանգստութեան համար, որ իջեւանած ատենը պէտք եղածը գտնային գնելոյ: Այժմ կ'ըսուի թէ նախնի ժամանակաց վտանգներն անհետացած լինելով՝ նոյն հսկայ հաստատութիւնքն իւրեանց արժէք կորսնցուցին և կը ծառայեն ներկայիս մէջ իբրեւ որջ վայրի կենդանեաց, որք պակաս չեն մերձակայ լերանց պատճառաւ:

Այսպէս ահա Ռահվաէն դուրս ելնելով կ'ուղեւորիմք 'ի Պաշ—խան, որոյ քովեր ամառ ատեն մի քանի զինուորներ կը կենան 2—3 ամսոյ չափ յապահովութիւն ճանապարհորդաց, և շարունակելով տեղէս 1 ժամէն հասանք 'ի Բաղէշ:

## ԳԼ. ԺԵ.

### ԲԱՂԷՇ ԿԱՄ ՍԱԼՆՈՅ ՁՈՐ

Բաղէշ, 'ի հնումն Սալնոյ ձոր, Աղձնեաց նա-

Հանդի գաւառներէն մին կը համարուէր, ըննակուած այլ և այլ քուրդ պէյերէ, որոց տիրապետութեան տակ կ'ապրէին բնակիչքն: Երկիրն առ հասարակ լեռնային է և ունի բազում ձորավայր, որմէ ծագումն առած լինել կը թուի իւր անունն: Ձմեռ ատեն երբեմն քամիով ձիւն կը փչէ սաստիկ օդոյ խառնակութեամբ և այս պատճառաւ շատ անգամ խորունկ ձորերու վերին եզերքներն և բարձր լերանց վերին մասերու մէջ շուք ձգող տեղերը ձեան հիւսք կամ տեղական բարբառով [illegible] կը բռնեն իւրեանց բնական դիրքով և հետզհետէ կը մեծնան և երբեմն իսկ կը լինին ահագին լերան մը չափ, յորոյ վերայ 'ի գարնան տաքութիւնն կը ներգործէ, յանկարծ սարսափելի որոտմամբ կը փլչին ճխասելով կամ թաղելով ամեն ինչ որ իրենց կը հանդիպին (Շատախունն այս տեսակէն էր, որ անցեալ ձմեռուան մէջ տեղի ունեցաւ):

Երկիրը զուրկ չէ վայրի և ընտանի պտղատու ծառերէ: Բարձրաբերձ լերանց անմատչելի տեղերուն վերայ դուն ուրեք կը գտնուին հինաւուրց ընկուզի մեծամեծ ծառեր տնկուած ծակաչք ագռաւներէն, որոց համար աւանդաբար կը պատմեն թէ «ագռաւն շատ ագահ է ընկուզի, որով կշտանալէն յետոյ մի քանի հատ կը տանի և կը թաղէ անմատոյց լերանց վերայ հողին տակ, իբրև իրեն պաշար այն ժամանակուան, ուր այլ ևս ծառոց վերայ իր փորը չը

կրնար կշտացնել ընկուզով։ Թաղուած տեղին ուզած ատեն գտնելու համար նշան կը բռնէ իւրեան այն ամպն, որ կ'երեւի յ'երկնից երես ընկուզի տեղւոյն վերայ։ Երբ ծառոց ժամանակըն կ'անցնի, և ինքն պէտք զգայ ընկուզի, կը դայ դէպ 'ի յիւր ամբարն որոնելով իւր նշանադրած ամպն, որ փոփոխական լինելով չ'կրնար միշտ միեւնոյն տեղը կենալ. Հետեւաբար ագռաւն զիւր ամբարած ընկոյզն չ'գտնալով կը մընայ հողին տակ թաղուած, որ այնուհետեւ երկրի հիւթովն և երկնից ցօղովը կը բուսնի և կը լինի մեծ ծառ այդ անմատչելի վայրաց մէջ»։

Այս գաւառն ունի պատուական կլիմայ, զանազան բոյսք և ծաղիկք, թռչունք այլ և այլ, վայրի և ընտանի կենդանիք, կը գտնուին ոսկւոյ, արծաթոյ և մանաւանդ բազմատեսակ քարանց առատ հանքեր։ Հանքային ջրոց մասին արդէն շատ հարուստ է։

Սալնոյ ձորի գլխաւոր քաղաքն է այժմեան Բաղէշ (Պիթլիս), որ շինուած է երկայն և մեծ ձորի մը մէջ, որոյ երկայնութիւնն Հարաւէն 'ի Հիւսիս գրեթէ 2 ժամ կը տեւէ, իսկ լայնութիւն 1/4 ժամ հազիւ. մէջ տեղէն կ'ընթանայ գետ մի, որոյ երկու եզերքներէն սկսեալ տըներն աստիճանաբար կը բարձրանան դէպ 'ի վեր, ո'ւր կը գտնուին ընդարձակ տներ, մանաւանդ Տաճկաց վերաբերեալքն։ Տներն առ հասարակ երկայարկ են և ամենքն, առանց բացառութեան,

չինուած են տեսակ մը Թխագոյն քարերէ. զոր ֆուփ թաշ կ'անուանեն, որ շատ դիւրատաշ, դիմացկուն և իւր ծաւալին հակառակ խիստ թեթեւ ծանրութեամբ և երբ մուրճ զարնուի խուլ ձայն մը կը հանէ ։

Տներն կառուցեալ են երկայարկ և քիչ ճաշակաւոր, այլ գեղեցիկ ու զուարճալի տեսարաններէ շրջապատեալ ։ Աստ կայ հին բերդ մը նշանակութենէ զուրկ ։

Սոյն քաղաքի տեղը նախապէս ամայի երկայն լեռնաձոր կը թուի լինիլ և ժամանակի ժըրաջան մարդիկը բնութեան դէմն մրցելով յաղթանակն տարած են այսպիսի չինութեանց հաստատութեամբք ։

Բնակութեանց պատուհաններու առջեւ նստողն մեծ հաճոյք կ'զգայ դուրս նայելէն, վերջապէս Բաղէշ քաղաք, հակառակ իւր բնական դրից, շատ զուարճալի մի տեղ է, ունենալով հանդերձ պատուական օդ և ջուր ։

Քաղաքիս բնակչաց թիւն երբեմն 20,000 տան մօտ եղած է, սակայն 150-160 տարի առաջ տեղի ունեցած սաստիկ խռովութեանց և սովերու պատճառաւ ցիր ու ցան եղած են յայլ և այլ տեղիս, այժմ 3,500 տան չափ կը հաշուին, յորոց 1,100—1,200 տուն Հայ և մնացածն Տաճիկ են ։

Հայք ունին 4 հաստատուն և բաւական գեղեցիկ եկեղեցի, յորոց իւրաքանչիւրն ունի

իւր ծխական մանաւոր վարժարանն ։ Տեղւոյս կրթական գործերն երթալով բարեկարգուելոյ վերայ են ջանիւք այժմեան Առաջնորդական փոխանորդ Գերապատիւ Մեսրոպ Վարդապետ Մոկացեանի և իւր տեղացի աջակցացն ։

Քաղաքիս բնակիչքն առ հասարակ կ'զբաղին վաճառականութեամբ զանազան աստիճաններով ու Հայոց միջին և ստորին կարգերը քաղմաթիւ գիւղերու մէջ կրպակներ և առեւտրական գործեր ունին, իրենք աշխատող, ժիր, ճարտար և յամենայնի վստահելի են (աննշան բացառութեամբ)։ Բաւական բարւոք նիւթական վիճակի տէր են և ունին մի քանի նշանաւոր վաճառականք, յորս կը յիշուին Խաչ—Մանուկեան, Ծողիկեան, Քէնտէրեան և Մխճեան եղբարքն, որք տեղւոյս թէ՛ Հայոց և թէ միանգամայն Տաճկաց պատիւ կը բերեն իւրեանց դիրքովն. չմոռնամ նաև ըսելոյ որ քաղաքիս սոյն վերջին տարուան հռչակաւոր հրդեհն փոքր հարուած չ'տուաւ տեղւոյս բոլոր Հայոց նիւթական վիճակին ։

Բաղիշոյ առեւտուրն բաւական կենդանի է և արդէն ՀԱՅԱԲՆԱԿԻ վաճառաշահ քաղաքներէն մին կրնայ համարուիլ ։

Տեղւոյս Հայոց մի մասն ևս սովորական արհեստներով կ'զբաղի, յորս կտաւագործութիւնն մեծ տեղին կը գրաւէ, վասն զի կտաւէն ամենամեծ քանակութեամբ կը ներկուին (տու-

բունով) կարմիր, զոր չէլ կ'անուանեն, նոյնպէս և չէֆ կը պատրաստեն: Սոյն երկու տեսակ հաստ կտաւեղէնքն թէ՛ աժան և թէ՛ խիստ դիմացկուն են: Հայաբնակ գաւառաց հարիւրաւոր գիւղօրէից արք և կանայք այդ տեղական նիւթերէն կը հագնին:

Քաղաքիս շուրջը կան 4 հաստատուն վանօրայք, որք են Ա. Ամրտօլու (Ամլորդւոյ) Ս. Յովհաննէս. Բ. Կոմաց Աստուածածին. Գ. Ախեվու Աստուածածին. Դ. Խնդրակատար Աստուածածին:

Սոյն 4 վանքերէն առաջինն կառուցեալ է քաղաքիս մէկ ծայրն և փառաւոր մի անցեալ ունեցած իւր դրական վարդապետներով և ծաղկեալ միաբանութեամբ: Ներկայիս մէջ իւր բոլոր փառքերն չիջած են և յիշատակութեան արժանի թանգարան մի ունի, ո՛ւր կը պահուին բաւական թուով զանազան ձեռագիրներ, որք կը գտնուին «երեսփոխանի» մը տրամադրութեան տակ:

Իսկ միւս երեք մենաստաններն, որ քաղաքէն 1—2 ժամ հեռու են, կը կառավարուին մասնաւոր վանահարց ձեռամբ, սակայն մե՛ղք որ հին դրական կեանք չունին թէև ներկայիս մէջ Ազգի բարոյական կողմանց ծառայելոյ միճակի մէջ դնել կը ջանան:

Յաջորդ գլխով կը մեկնեմք քաղաքիս Արեւելեան հարաւային ուղղութեամբ դէպ 'ի Սղերդ:

# ԳԼ. ԺԶ.

## ԲԱՂԻՇԷՆ ՄԵԿՆՈՒՄՆ Ի ՍՂԵՐԴ

*Բաղիշէն յիշեալ ուղղութեամբ մեկնիմք դէպ 'ի Սղերդ, որ կը գտնուի առաջնոյն Արեւմըտահարաւ։ Գրեթէ 2 ժամէն կը հասնիմք* ԽՆԴՐԱԿԱՏԱՐ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԱՅ *դէմ, որ ձորակի մը մէջ կառուցեալ է տեսարանով եւ գեղեցիկ շէնքով, զոր մօտէն չ'տեսնալոյ դժբաղդութիւն ունեցայ. սորա հանդէպ կայ Ամպ կոչուած փոքրիկ Հայ գիւղ մի, որոյ անուան առթիւ աւանդութեամբ կը պատմեն թէ « Թադէոս սրբազան Առաքելոյն մենաստաններ շինելով կը գայ տեղւոյս Աստուածածնայ վանքն, ո՛ւր ինքնին մեծ փափաք մի կ'զգայ ըսելով «Երանի՜ թէ երկրիս մէջ 1001 եկեղեցիներ շինելէս յետոյ նորէն մեռնէի. սոյն խօսքին վերայ իբրեւ թէ գիւղիս վրայի ամպէն ձայն մ'եկած ըլլայ լսելի Առաքելոյն թէ « խնդիրդ կատարեցաւ ». ահա այս պատճառաւ գիւղին անունն «Ամպ» եւ վանուցն՝ « Խնդրակատար » կոչուեցաւ ։ Անկէ յառաջ երթալով կը գտնուին սառ եւ անդ հանքային առատ եւ պատուական ջրեր, յորոց ոմանք պաղանիքի տեղւոյ կը ծառայեն ամառ ատեն քըրտնած եւ հոգնած ճանապարհորդաց համար, եւ ոմանք եւս Բաղիշեցի արհեստաւորաց կարմըրցնելիք կտաւները կը ճերմկցնեն ։*

Այն ուղղութեամբ մեր դէմն կ'ելլէ բաւական մեծութեամբ մի լեռնակ, որ կանուանի «Ծակքար», և է բնութեան սքանչելի և հետաքրքիր գործերէն մին, որոյ հրաշագործ ձեւաց տակ հանքային դարաւոր ջրոց ընթացից քարացմամբն մեծցած և լեռնացած է խաւ խաւ իրարու վերայ շարուելով, որ ուղեւորաց աչքին միապաղաղ քար կ'երեւի, և ո՛վ գիտէ քանի՛ հազար ծալքերէ շինուած։ Այն քարի ձախակողմն գետ է և աջակողմն դժուարին լեռ, որմէ ճանապարհորդել հարկ պիտի լինէր, ինչպէս հին ատենն քարին ծակուելէն առաջ, սակայն այսօր քարն ահագին լայնութեամբ ծակուած է իբրեւ մեծ պալատի մը կառքի դուռ, յորմէ բեռներով և դոյքերով կ'անցնին յԱրեւմտահարաւ երթացող ճանապարհորդք ամենայն դիւրութեամբ։ Ուղեւորքն այն հանդստութիւնն պարտական են «անյիշատակ մարդոյ մը»։

Ծակքարի դռնէն անցնելով շարունակեմք մեր ուղին, հետզհետէ կը մտնամք երկայն, ընդարձակ և խոտաւէտ լեռնահովիտք, որք երթալով կ'անտառոտանան։ Այն ճանապարհին վերայ մերձակայ գիւղեր չ'գտնուելով՝ ճանապարհորդք կը պարտաւորուին բացօթեայ տեղեր իջեւանիլ գիշերին, թէպէտ կայ «Տուխան» կոչուած մի աւերակ իջեւանատեղի մեծ և անյիշատակ հնաշէն, սակայն սա ոչ ոք կը համարձակի իջեւանիլ, մանաւանդ երբ կարաւանն

բազմամարդ չէ, վասն զի հին ժամանակաց ապահովութեան տեղիքն այժմ գիշերային գազանաց որջ դարձած են, ո՛վ կ'ուզէ չ'ծերացած իւր կեանքն զոհ տալ գայլերու և արջերու, զորըս ականատես իսկ եղանք, որք հրացանի ձայնէն մնչելով փախուստ տուին յանտառս ։

ՄԵԿՆՈՒՄՆ

Տուխանէն մեկնելով շարունակաբար կը մըտնամք առաւել ևս անտառներով, վայրի պըտղատու ծառերով և որթերով լի խորունկ և ահագին լեռնահովտաց մէջ. այս տեղերը կը գըտնուին ընդարձակ քարայրեր և լերանց մասնաւոր ծերպեր ։ Տեղւոյս բնութիւնն արդէն իւր նախնական դիրքովը ահ և սարսափ կ'ազդէ անցորդաց վերայ, որք երբ կը տեսնեն նաև լերանց մեծամեծ ծակեր, կենդանեաց և մարդոց առ հասարակ դժուարաքալելի քարոտ ուղիներ, առաւել ևս երկիւղի տագնապէն կը բռնուին, թէպէտև ճանապարհն բնաւ ինքեան անապահով չ'լինի. տակաւին գրեթէ մի և նոյն ուղղութեան վերայ շարունակելով կը հասնիմք մեծ անտառի մը բերանը, ուր առջևէն կ'անցնի Բաղիշոյ գետն, որոյ վերայ մի կամուրջ կայ կապուած է, տակը բաւական խորունկ փոքրիկ մի լըճակ, յորմէ կ'որսան երբեմն « քայեա պալըղը » կոչուած ձուկն, որ քիչ փշոտ է և շատ համով։ Ասկէ գնալով դէմերնիս կ'ելլէ լայնածաւալ ա-

հադին բլուր մի, որոյ պառեկի նկատմամբ կ'աւանդեն թէ «Սուլթան Մուրատ առաջին, Տաճկաց՝ զՊաղտատն առած միջոցին, աստ հանդիստ մի առնելով սուրճ խմած է». այս առթիւ նոյն բլուրն ց'արդ կ'անուանի «Սուլթան Մուրատի դար», (հողաբլուր), որմէ յառաջ դնալով մեր ճանապարհին վերայ մերձակայ գիւղ մի կայ Մէրկէմէր կոչուած, ո՛ւր կը բնակին մի քանի տուն քուրդեր, որոց գործն ուղեւորաց հետ է վերաբերութեամբ իւրեանց ապրուստին. ունին մի և նոյն ատեն գեղեցիկ և զուարճալի ծառաստաններ և արտօրայք . . . . . . . . .

Սոյն տեղէն ելնելով մեկնիմք աչալրջութեամբ շարունակելոյ զմեր ուղին, որոյ վերայ յաճախակի գտնուած լըպզտրուն (սահուն) քարանց ոտքերնիս զարնել, իյնալ ու կանգնիլ պարտաւորիչ հարկ մի է բնութենէն տրուած. աստ պէտք է դարձեալ չեշտելով կրկնել թէ աշխարհաշէն ձեռքեր կը պակսին յարդարելոյ սոյն անօրինակ քարոտ ճանապարհներն, յորոց վերայ մեծ երթեւեկութիւնք կը լինին կարաւանաց և մասնաւոր անհատից։

Այսպէս շարունակեցինք մեր տաժանելի ուղեւորութեան ընթացք, զոր մասամբ մ'աւարտեցինք հասնելով ի Սղերդ, որ Բաղիշէն 14—15 ժամ հեռու է։

# ԳՂ. ԺԲ.

## ՍՂԵՐԴ ԳԱՒԱՌ

Սղերդ, ըստ ամենայն հաւանականութեան, Խերհաւ անուան աղաւաղեալն պէտք է լինի, որ երբեմն Աղձնեաց նահանգի գաւառներէն մին էր՝ Մեծ Հայոց Հարաւակողմը Տիգրիսի յԱրեւելահիւսիս։ Երկիրն մեծագոյն մասամբ բարեբեր լեռներէ շրջապատեալ է եւ գլխաւոր բերքերն են առատօրէն խաղող իւր տեսակներով, յորս կը գտնուին այնպիսի քաղցր տեսակ, որ շաքարի պատուոյն կրնայ դպչիլ. փշատ, թութ, պուղթուն, որ տեսակ մը վայրի պտուղ է լուբիայէն փոքր ոսպնաձեւ, զորս կ'եփեն աղի ջրով եւ կ'ուտեն կոտրելով զկեղեւն։

Սոյն լեռներու ծաղկանց թագուհին նունուֆարն է, զոր բնակիչներէն ոմանք «հարսնամատ» կը կոչեն. նոյնպէս մեղր, մոմ եւ ոչխարաց բերք շատ առատ են։ Երկիրն զուրկ չէ սովորական ընտանի կենդանիներէ։

Կը պատմուի շատերէ թէ «գէշ խայթիչ կարիճներ կը գտնուին այս կողմերը», նմանապէս կան վնասակար օձեր, մանաւանդ քարայրից եւ հին բնակութեանց խոռոչներուն մէջ։

Վերոյիշեալ նախնական գաւառի գլխաւոր քաղաքն է այժմեան Սղերդ, որ կը գտնուի Բաղիշոյ հարաւային Արեւմուտքը՝ շինուած ըն-

դարձակ և ցած ղառիվայրից վերայ ունենալով իւր շուրջը բաւական մեծ դաշտօրայք ։ Օդն և ջուր շատ տաք են և նորեկին համար կրնան առաջին անգամ դժուարատար երևիլ , այսու ամենայնիւ խիստ առողջարար է ․ խոհեմ բնութիւնն , ամէն տեղ իւր դառնութեանց հետ կցած է նաև զանազան քաղցր կողմեր ։ Գիշեր ատեն քաղաքիս տանեաց վերայ այնպիսի մեղմ և կենսատու օդ կը փչէ , զոր չնչող ծերունիք պահ մը կը մանկանան։ Ամառուան սաստիկ տաքութեանը տեղւոյս բնակիչներն գրեթէ միշտ կրնան պատրաստի ձիւն կամ սառ գտնել քաղաքին մէջ իւրեանց խմելի ջուրն բարեխառնելոյ համար վայրկենապէս ։

Քաղաքիս բնակութիւնքն առ հասարակ քարաշէն ու երկյարկ են , կերտած իւրեանց մասնաւոր ընտրութեամբն և ճաշակաւ, որ շատ հետաքրքրական է նոր այցելուի մ՚աչքին ։

Ծերունիք աւանդաբար կը պատմեն թէ « 120-130 տարի առաջ աստ 5-600 տուն Հայ բնակիչ եղած է » . իսկ այժմ 230 տուն որք , մէկ եկեղեցի ունին շատ հին և ամենապարզ ճաշակաւ կառուցեալ . երկու քահանայ ալեխաւըն՝ ճշդիւ կատարողք իւրեանց կրօնական պարտականութեանց . ունին մի նախակրթարան Միացեալ Ընկերութեանց պատկանող ։

Հայոց թէ՛ արական և թէ՛ իգական սեռն ունի բնութենէն կենդանի և ողեւորեալ ձիր-

քեր, և ընդհանրապէս աշխոյժ ու աներկիւղ են 'ի բան, 'ի պատասխան, մանաւանդ իրաւունք ունեցած պահուն սուր շողացունես վրայէն, գլուխը ծռել չ'գիտեր։ Իգական սեռն համեստ՝ իւր նախնական պարզութեան մէջ է։

Հայք հիւրասէր են և նախկին ժամանակաց բռնութենէն մայրենի լեզունին կորսնցուցած կը խօսին Արաբերէն, Տաճկերէն եւ երբեմն իսկ Քուրդերէն։ Սոյն լեզուաց, որով եւ տեղական յարաբերութեանց ազդեցութիւնն, եթէ ոչ զգացմանց վերայ առաւել, գոնէ արտաքին ձեւոց եւ շարժմանց վերաբերութեամբ յայտնապէս կը տեսնուի։ Հայկական ուրոյն յատկանիշ մի իւրեանց վերայ չես կրնար նշմարել. այսու ամենայնիւ ընկերական յարաբերութիւննին ազնիւ է եւ իրենք խիստ դիւրազգաց բնաւորութեան տէր, ինչպէս նաեւ բնականէն մտաւոր կարողութիւննին զօրաւոր։

Տեղւոյս բնակիչք առ հասարակ կ'զբաղին վաճառականութեամբ եւ մասնաւոր առեւտրով։ Քաղաքին սովորական արհեստից մէջ հետաքըրքիր եւ յառաջադիմութեան մէջ է ծխելոյ փայտ եւ ձեռքը բռնելոյ գաւազաններ պատրաստող արհեստն։ Վերոյիշեալները կը շինուին տեսակ մը սեւ փայտէ բարակ բանուածքներով, որք իւրեանց յատուկ է։

Տեղւոյս առեւտրական շարժումն համեմատաբար այնչափ մեռեալ չէ։

Աղերդ մօտակայ եւ տարակայ մի քանի գիւղօրէից կեդրոն կընայ համարուիլ։ Աստ կը նստի Միւթէսարըֆ ընդ գերիշխանութեամբ Բաղիշոյ կուսակալութեան ։

Քաղաքիս Հարաւակողմը մէկ ժամ հեռու կաթոլիկ Քաղդէացւոց վանք մի կայ , որ բաւական ծաղկեալ վիճակի մէջ է , ո՛ւր մի քանի երիտասարդ մենաստանցիք կը բնակին «որք կրօնաւէր եւ պարկեշտ ապրողք յաշխարհի ընծայեալք երկնից»։ Ասկէ մի քանի տարի յառաջ մեծահոգի մի վանահայր ունեցեր են , որոյ Եւրոպայէն տեղս բերած տպագրական մամուլը ց՚արդ անգործածելի կը կենայ եւ կը պահուի խնամօք ։ Մենաստանիս պարագայքն բաւական ճոխ են 'ի շնորհս յիշեալ վանահօրն , որ այժմ մեռած է կենդանի յիշատակութեամբք, զորս իւրեանց մէջ եռանդագին կը յարգեն ։

Ըստ սովորութեան կ՚ըսուի թէ «դիւահարք եւ աչացաւք աստ գալով կը բժշկուին» մանաւանդ վերջինքն , որոց աչաց վերայ քսելոյ համար սուրբ հող ունին ։

Մենաստանիս միաբանութիւնն թող մշակէ իւր գեղեցիկ պարտէզ, եւ մենք Աղերդէն մեկնիմք 'ի Թըլնտվան , ճանապարհնիս ուղղելով 'ի յԱրեւմուտս Հարաւային ։



## ԳԼ. ԺԸ.

### ՍՂԵՐԴԷՆ Ի ՌԸՆՏՈՒԱՆ

Դէպ 'ի Ռընտուան յառաջ տանելով ուղեւորութիւննիս՝ դարձեալ հարկ կը լինի անցնիլ բաւական թուով մասնաւոր լեռներէ, բնականէն փոանդաւոր բլրոց եւ բլրակաց կողքերէ, քիչ ու շատ կասկածող վայրերէ, լեռնային գաղանաց որջոց առընթեր գտնուած անհրաժեշտ ճանապարհներէ, եւ վերջապէս իբարմէ բաւական հեռու մի քանի մծղուկալից (ամառ աւեն) քուրդ գիւղերէ անցնելով այսպէս ժամանեցինք յիշեալ գիւղաքաղաքն, որ Սղերդէն 9—10 ժամ տեւեց։

Ռընտուանայ ամբողջ բնակութիւնք նախնական ընտրութեամբ շինուած են ընդարձակածաւալ եւ քիչ բարձր բլուրի մը վրայ, որ 'ի հնումն «Եղխոցուոց» գիւղ կը կոչուէր։ Ունի տաք օդ, որով եւ տաք ջուր։ Տեղւոյս համայն բնակչաց թիւն 210 տուն է, յորոց 90 տուն Լուսաւորչական Հայ են, 30 Բողոքական եւ մնացեալքն դրեթէ հաւասար թուով են Ասորի, Եզտի (սատանայապաշտ), Տաճիկ եւ մի քանի տուն եւս Քիլտանի կոչուած Պապական։

Տեղւոյս ընդհանուր լեզուն յար եւ նման է Սղերդցւոցն։

Հայք ունին Ս. Գէորգ անուն խաւար ե-

կեղեցի մի, և քահանայ՝ հին սերնդեան պատկանող եւ մի ծաղկոց, որ շատ ստոյգ կը լինի կոչել «խամիրոց», ո՛ւր արդարեւ կը թառամին 30—40 կայտառ մանկանց ծաղիկ կեանքեր։ Վերեւ յիշուած եկեղեցւոյն կից կայ նաեւ Աստուածածին անուամբ մի այլ եկեղեցի կիսաքաց, ո՛ւր ժամասացութիւնք կը լինին ամառուան եղանակին եւ որոյ շինութեան տարեաց թուականն, հակառակ ջանքերուս, դժբաղդաբար չ'կրցայ ընթեռնուլ, զի ժամանակի ձեռքն զայն մեծաւ մասամբ լղղած էր (չփելով մաշեցընել)։

Հայք ունին ջերմեռանդութիւն առ կրօն եւ եթէ արտաքին ջանքեր լինին, կրնան ունենալ նոյնպէս մեծ սէր առ ուսումն եւ դաստիարակութիւն, յորոց այնքան խեղճ մնացեր են։ Իրենք արեգական լուսէն զատ ուրիշ լոյս տակաւին տեսած չունին։ Մի քանի տարի յառաջ ինքնաբերաբար կազմած են «Անձնանուէր» անուամբ մի ընկերութիւն, որ կրնայ իւրեանց խամիրոցն իրօք ծաղկոցի վերածել. սակայն գործ կայ, գործող չկայ, ո՞ւր կարգադրիչ եւ ո՞ւր առաջնորդ գործի։

Այս արաբախօս Հայերն ունին առ հասարակ բարի եւ ընտիր ձիրքեր, աշխոյժ եւ կենդանի ոգի, բայց այդ հազուագիւտ դոհարներըն մնացեր են անարժէք տգիտութեան մէջ։ Իրենք չեն այնչափ սորկամիտ, որչափ կը կար-

ծուփ ընդհանրապէս, եւ 'ի պահանջել հարկին կարող են իրաւունքնին պաշտպանել փոքր 'ի շատէ։

Տեղւոյս եւ մասնաւորապէս Հայոց սովորական արհեստաւորներն են կօշկակար, ներկարար, կտաւագործ, երկաթագործ, բրուտ եւ երկրագործ։

Ուընտուանայ մէջ մեծ շէնք մի կայ, որ «բերդ» կ'անուանի և որոյ նկատմամբ հինաւուրց մարդիկ կ'աւանդեն թէ 80—90 տարի յառաջ Միրզա կոչուած [illegible]ականաւոր մի Եզտի շինել տուած եւ անդ ապաստանած է եղեր իւր խումբով, ինչ ատեն գիւղաքաղաքիս շրջակայքը գտնուած են բազում Եզտի գիւղեր։ Միրզան կառավարութեան դիմադրելով պահ մի անկախ դիրք ունեցած է, սակայն յետոյ Օսմ. պետութեան զինուց տակ կը խոնարհի։ Միրզայի օրովն շինուած է վերեւ յիշուած Ս. Գէորգ եկեղեցին, որոյ ինչ ինչ նպաստներ տուած լինելուն համար Հայք զիւր անունն կը գրեն եկեղեցւոյ ճակտին վերայ այսպէս «Միրզա Եզիտին 'ի յաւիտենական յիշատակ»։

Գիւղաքաղաքիս Հարաւակողմն 5 քարընկէց հեռու մի գետակ կ'անցնի «Ս. Կանոնոսի ջուր» անուանեալ, (որը անուան մասին ի կարգին կը խօսուի), որոյ մէջ բաւական մեծ ձըկունք կան, զորս երբեմն կ'որսան բնակիչներն՝ իւրեանց պարապոյ ժամերուն։

Ուրնտուան Գայմագամութիւն է Սղերդի Միւթէսարըֆութեան ներքեւ ։

Շարունակելով ընթացքնիս 8 ժամու տեւողութեամբ, ճանապարհի Արեւմտակողմը քիչ հեռու կը պատմուի լինիլ նախնի հռչակաւոր Արզն քաղաքի տեղին, որոյ աւերակաց կոյտերը տեսնելոյ բաղդ չունենայ ։ Ապա կը հասնիմք Կէօլէ—Մասիա աննշան գիւղն, ո՛ւր 18 տուն Հայ եւ մի քանի տուն Քուրդ կը բնակին։ Գիւղիս քրիստոնեայ բնակութեանց թիւն 11 տարի յառաջ 45 եղած է ։ Աստ ընկուզի դարաւոր ծառի մը հովանեաց տակը կը հանգչէր մի տարեւոր ծերունի, որոյ պատկառելի դէմքը տեսնողին երեւակայել կը տայր նորա երիտասարդ առեննուան սօսատիպ հասակն, որ այժմ, նման աղեղի, ծռուած էր տարեաց ծանրութենէն ։ Նա կը ժպտէր յանտարբեւոր ուղեւորիս, երբ գիւղին անցելոյն վրայ հետաքըրքիր կը լինէի, պարագայ մի էր այս, յորմէ օգուտ քաղել հարկ էր ։ Ծերունին լաւ պատմեց իւր դրացեաց մեծագոյն մասի գաղթականութեանց չարժառիթները, զորս թուելը մեր նպատակէն դուրս է ։ Այսչափ միայն կարելի է ըսել, որ տեղւոյս մերայինքն, հակառակ իւրեանց կացութեան, նահապետական դիրք եւ հացի սեղան ունին ։ Եկեղեցին աննշան է եւ դպրոց չունին ։

Գիւղիս քով փոքրիկ լճակ մի կայ, յո-

րում անթիւ ձկունք կը խաղան, եւ զորս տեղացիք նուիրական համարելով չեն որսար։ Սոյն լճակէն ծագումն առած է տեղւոյս Կէօլէ—Մասիա անունն, որ քրդական բարբառով կը յիշուի եւ կը նշանակէ «ձկան լիճ»։

Ասկէ եւս մեկնելով հարկ է անցնիլ մի քանի քուրդ գիւղեր, եւ ապա կը հասնիմք ՚ի Հզու։

## ԳԼ. ԺԹ.

### ՀԶՈՒ ԿԱՄ ԽԶՈՒ

Հզու կամ Խզու գիւղաքաղաքն, երբեմն գլխաւոր բերդաքաղաքն եղած է համանուն գաւառին, որ աղաւաղեալն լինել կը թուի՝ Աղձնեաց նահանգի Գզեղ հին գաւառի անուանն Սասնոյ յԱրեւելահարաւը։ Շինուած է ընդարձակ դարափի մի վերայ շրջապատեալ մեծաւ մասամբ լեռներէ եւ մասնաւոր ջրերէ. ինքն բաւական ծառաստան եւ դրեթէ կղզի մի նոցա մէջ։ Տեղւոյս օդն ջերմ եւ վատառողջ է, որով ամառ եղանակին քիչ չեն նեղուիր։

Գիւղաքաղաքս ունի ընդ ամենն 220 տուն բնակիչ, յորոց 120 Հայ ու 100 Տաճիկ են։ Հայք ունին Աստուածածին անուամբ հնաշէն եւ պարզ ճաշակաւ կառուցեալ մի եկեղեցի, որոյ կից կայ մի մեծ խորան չինեալ յանուն Մուշեղի. այսու աղագաւ եկեղեցին կը կոչուի նաեւ նոյն անուամբ։ Ունին մի դպրոց, ուր 60

70 աշակերտք կ'ուսանին Միաց. ընկերութեան. իրաւասութեան տակ, որոց խնամքն երբեմն ստանձնած էր տեղւոյս «Սանասարեան» ընկերութիւնն, որ մի քանի տարի յառաջ կազմուած է գովելի եռանդեամբ : Ժողովուրդն կրօնասէր եւ ուսումնասէր է, եւ ունի վեհանձն յատկութիւնք նախնեացմէ ժառանգած :

Բնակիչն առ հասարակ առեւտրով կ'զբաղին, ի բաց առեալ մի փոքր մաս, որ երկրագործ եւ պարզ արհեստաւոր է : Խանութպանք չարաչար կը տանջուին իւրեանց գործին մէջ, վասն զի ամեն առաւօտ վաճառելի ապրանքնին կռնակնին առած կը տանին շուկայն, որ անկերպարան տեղի մի է, մի քանի աննշան կրպակներէ բաղկացեալ, երեկոյ կրկին զայնս կռնակնին առած՝ յիւրեանց տուն կը վերադառնան ոգեսպառ :

Երկիրն արգաւանդ է եւ իրենք աշխատասէր. աւելի հարուստ պիտի լինէին եթէ քաջապէս ճանաչէին զերկիրն :

Հզրուի համար կը պատմուի թէ 80—85 տարի առաջ քուրդ պէյից ինքնագլուխ տիրապետութեան տակ եղած էր, եւ աստ կը նստէր գաւառի քուրդ պետն, որ ունեցեր է 1000 տուն բնակիչ, յորոց կէսն Հայ, յորմէ մնացեալքն այժմ Օսմանեան բարեխնամ եւ մեծազօր իշխանութեան ներքեւ գտնուելով հանդերձ, տակաւին անուղղակի իւրեանց առ

յաջորդական քուրդ պէյս ունեցած նախկին խոնարհ հպատակութիւնն պահած են , վասն զի այժմ այդ 120 տուն հայքն բաժնուած են խումբ խումբ քրդական մի քանի ցեղից վե-րայ , յորոց պետերէն ո՛վ որ ի գիւղաքաղաքս դայ անմիջապէս կը հիւրասիրուի էրէններէն ։ Ա-մեն տարեգլխին իւրաքանչիւր խումբն զիւր ըն-ծայս կը տանի առ իւր պետն համաձայն նախ-նական սովորութեանն . սոյն իրողութեան փո-խան աւանդութեամբ կը պատմեն թէ «նոյն պետն եւս ի պահանջել հարկին զիրենք կը պաշտպանէ ընդդէմ աւազակաց եւ այլոց ։»

Գիւղաքաղաքիս բերդն այժմ աւերակ է , որոյ երկու կողքերուն վերայ երկու սրբոց փոք-րիկ մատուռներ կը տեսնուին , որք կը թուին լինել աղօթատեղիք նախնեաց ։

## Գ.Լ. Ի.

### ՍՈՒՐԲ ԿՈՆՈՆՈՍԻ ՎԱՆՔ

Հզու դայմաղամանիստ է ։

Մեկնիմք Հզու գիւղաքաղաքէն դէպ ի Վա-նըս Ս. Կանոնոսի ճանապարհնիս ուղղելով յԱ-րեւելահիւսիս , եւ այսպէս մի ժամ քարոտ ղառիվայրեր եւ ծառոտ ձորավայրեր կտրելէն ետքը կը ժամանեմք յիշեալ վանքը ։

Ս. Կոնոնոսի վանքը կառուցեալ է երեք կողմէ զինք շրջապատող լերանց եւ բլրոց մի-ջեւ , եւ է օդաւէտ ու ջրաւէտ . ունի բաւա-

կան ծառաստանք թթենեաց, թզենեաց եւ նռնենեաց, որք վանուց շրջապատի սահմանը կը զարդարեն ու կը գեղեցկացնեն նորա տեսարանն ։ Մենաստանն գեղեցկաշէն եւ օրորոցաձեւ է, որոյ շինութեան թուականն ինձ մնաց անծանօթ, հակառակ հետամտութեանս ։

Վանուց դրսի ձախակողմեան մուտքին քով եկեղեցւոյ պատին կից կը տեսնուի Ս. Կոնոնոսի տապանն, մի անշուք վիճակի մէջ, առ որ ամեն կողմանէ Հայ գիւղացիք կըգան յուխտ, նոյնպէս եւ Քուրդք, որք զայն կանուանեն «Շէյխ—Ջօմէր» եւ ունին վանուց մէջ իւրեանց յատուկ աղօթատեղին ։ Աստ կայ մի այլ փոքրիկ տեղի, ո՛ւր 'ի վանս ուխտի բերուած խելագարներ կը կապեն ցցոյ յատուկ շղթայով մը, եւ մի քանի օր կապեալ կենալէն զկնի «իր մուրատ» առած կը համարուի եւ կը թողուն զայն ։

Տաճարի Հարաւային անկիւնը կը տեսնուի մարդոյ նստուածքի չափ մէկ մեթր բարձրութեամբ հողակոյտ մը, որոյ մէջ, կ'աւանդեն թէ «սատանայի պետն կը բնակի», որ մշանջենապէս շղթայակապ բանտարկութեան դատապարտուած է Ս. Կոնոնոսի կողմէ ։

Սոյն վանք երբեմն ունեցեր է ճոխ վիճակ մի 100էն աւելի թեմական գիւղերով, իսկ այժըմ անշքացեր է եւ խիստ ամփոփուեր են իւր պարագայք ։ 20 գիւղ չունի թեմական. ամենքըն գաղթած եւ ցիրուցան եղած են ։

Ս. Կանոնսի մենաստանն կը գտնուի Սը-ղերդի Առաջնորդութեան ներքեւ, ունի միշտ մի քահանայ կամ վարդապետ վանահայր եւ մի քանի կով եւ ոչխար, որք կը ծառայեն պահապան Բրդաց ու 3—4 մշակներուն 'ի կերակուր: Եթէ օրինաւոր վանահայրութեան մը ներքեւ մնայ այն վանք, կրնայ ունենալ այնպիսի ցանկալի վիճակ մի, որով կարենայ Ազգի բարոյական բարգաւաճման ծառայել, տալով պարզ ուսուցիչներ այն կողմերու քրդացեալ Հայ գիւղօրէից:

Վանուց մերձակայ աղի հանքերու լճակներ կան եւ հորեր, յորոց մեծ քանակութեամբ մաքուր եւ ձեան պէս ճերմակ աղ կ'արտադրուին կառավարութեան տրամադրութեան ներքեւ:

Ս. Կոնոնսի վանքէն մեկնեցանք վերադառնալոյ 'ի Սղերդ մի այլ ճանապարհով: Այն ուղեւորութեան մէջ հանդիպեցանք Ջուխ կոչուած Հայ գիւղը, որ երբեմն 200 տուն զուտ Հայ եղած է, իսկ այժմ 80 տուն միայն, որոց հետ կը բնակին նաեւ 150 տուն քուրդ, որոց Ֆաթիհ պէյ կոչուած պետն հրամայողն է ամբողջ գիւղին, որ կ'անուանի նաեւ «Ֆաթիհ պէյի գիւղ» պետին անուամբ: Տեղւոյս Հայք ունին մի եկեղեցի, այլ ոչ դըպրոց. սոցա լեզուն բաւական շատ խորթ է հայկական խօսուածքի: Գիւղէս ելնելով անցանք

ընդարձակ եւ խոտաւէտ դաշտօրայք ու եկանք Պարահ հայկական գիւղը, ո՛ւր կայ աննշան եկեղեցի մի առանց դպրոցի, եւ յետոյ բաւական ուղի կտրելով վերադարձանք կրկին 'ի Սըղերդ եւ անտի 'ի Բաղէշ: Որմէ յաջորդով կը մեկնիմք 'ի Բղնունիս, ուր է այժմեան Խլաթ կամ Ախլաթ կոչուած գաւառակն:

## ԳԼ. ԻԱ.

### ՍՂԵՐԴԷՆ Ի ԲԱՂԷՇ ՎԵՐԱԴԱՐՁԱԾ ԵՒ ԱՆԿԷ ՄԵԿՆՈՒՄՆ Ի ԲՋՆՈՒՆԻՍ

Սղերդէն 'ի Բաղէշ վերադարձած լինելով՝ այժմ մեկնիմք Բաղիշէն 'ի Բզնունիս, քաղաքի Հիւսիսային Արեւելեան գծով. Մէկ ժամ գնալով, ճանապարհին վերայ կը հանդիպիմք կրկին այն մեծ իջեւանին, զոր **ԺԸ.** գլխոյ վերջը «Պաշ—խան» անուանած եմ, երբ Մուշէն 'ի Բաղէշ կուգայի: Աստի ուղինիս աւելի դէպ 'ի յԱրեւելս յառաջ տանելով, մեր ձախակողմը (Հիւսիս) կը տեսնուին 2 հսկայ լերինք: Ա. Նեբրովդ (Նէմրուդ), Բ. Գրգուռ: Առաջինն կը բարձրանայ լայնանիստ յատակագծով մի, որոյ կատարն աւելի բարձր կ'երեւի քան զԳրգուռ եւ տեսանելի Տարօն, Բզնունիք, Ապահունիք (վերի եւ վարի Պուլանըխներ) և Հարք գաւառաց:

Սոյն լերան անուան ծագումն առած լինել կը թուի անդրանիկ Նահապետին Բաբելոն-

եան գտող Հսկային հետ ունեցած դարաւոր գործէն, որոյ նկատմամբ եղած բոլոր աւանդութեանց իմաստն այս է. «Ներբրովդայ դերեզմանն սոյն լերան գլխուն վերայ լինելով իւր անուամբ կոչուեցաւ լեռն», որոյ մէկ կողի վերայ այժմ կը տեսնուի երկայն դամբարանի նըման մի շէնքի հիմունք, ո՞վ գիտէ թէ այս չէ ամբարտաւանի հանգստութեան պատժարանն, որոյ մասին ց'արդ եղած գիտական քնութիւնք տակաւին ունին իւրեանց թերի կողմեր։

Ներբրովդ մեծ և բարձր է քան զՎրդոււ, որ իւր թիկանց վերայ կը գտնուի նեղ ճանապարհով մ'անջատեալ։ Լերան դիրքը ձգուած է գրեթէ Հարաւէն 'ի Հիւսիս. իւր գագաթի տրամագիծն 2½ ժամ կը տեւէ, որոյ վերայ ունի 5 հատ լճակներ, յորոց մին բաւական մեծ և կ'իյնայ Հարաւակողման վերայ, ուստի գետնի տակէն ճանապարհի ջուր երթալով 'ի Նորշէնայ դաշտ, (որոյ նկատմամբ խօսուած է), դուրս կը տայ այն տեղէն, զոր սովորաբար կը կոչեն «Մեղրաջրոյ ակն», մնացեալ չորսը փոքր են աւելի. լճակներուն ջուրն անուշ է. որոց յԱրեւելահիւսիս մի քանի տեղերէ կը բղխին տաք ջըրեր (ըլըճա)։ Սոյն տեղերէն որ կողմը փորուի տաք ջրեր դուրս կը գան։

Ներբրովդ տեղ տեղ միակտուր է, և երբեմն խաւ խաւ իրարու վերայ։ Սոյն լերան վայրի կենդանեաց մէջ նշանաւորն է արջ, որ

շատ անգամ մեծ երկիւղ կը պատճառէ հովիւներուն ։

Բաղում տեղեր կարճ անտառոտ լինելով հանդերձ ունին երփներանգ ծաղկունք, առատ բուսականութիւն և արօտատեղիք, որովք կըրնան սնանիլ հազարաւոր ոչխարներ ։

Տեղւոյս օդ. խիստ զով է, այնպէս որ յուլիս և օգոստոս դժոխք ամիսներուն անգամ՝ մարդ ցուրտ կ'զգայ լերան գագաթանց վերայ, յորոց շատ ուշ կը վերնայ ձիւնն ։

Մուշէն 'ի Բաղէշ երթևեկողաց Նեբրովդ դրեթէ մեծագոյն մասամբ տեսանելի է ։

Գրգուռին գալով՝ տարածութեամբ փոքր և հասակաւ կարճ է Նեբրովդէն, սակայն իւր բնական դիրքովն աւելի հպարտ և գոռոզ քան զայն ։ Այն լեռ իւր 5 սլիթխարի կլոր գլուխներով վեհանձնօրէն բազմած է մի տափարակ ու ընդարձակ երկրի վերայ, որոյ առջեւ նախորդովըս յիշած անդուլթ Ռահվայի ծայրն կը հասնի. կողքերն բաւական տեղեր կարճիկ անտառոտ են ։

Գրգուռ լերան անուան վերաբերութեամբ կը պատմուի թէ «Պարսից Վախտանկ զօրաւորի Գրէգուռ որդւոյն անունէն ծնած է» ։

Այն լերան ստորոտը շինուած է Ջրհոր անուն մի գիւղ, որ ունի 30 տուն բնակիչ, մի եկեղեցի Ս. Գէորգ անուն, մի ծերուկ քահանայ և մի նոր շինած ծաղկոցի շէնք. դասատուչունին ու մտադիր են ունենալ մի բողոքական

ուսուցիչ, որ լաւ սորվեցնէ իրենց զաւակաց ։ Ջրհոր կը գտնուի Բաղիշոյ Առաջնորդութեան ներքեւ ։ Սոյն գիւղի բնակիչք մեծաւ մասամբ Գրգուռի անտառներով կ՚ապրին ։ Նրան բնական գոռոզութիւնն կարծես թէ ազդած է անոնց վրայ։ Երբեմն ուրիշ տեղերէ անտառապահաներ սատ գալով լեռնէն փայտ կտրել ուզած ժամանակը, Ջրհորցիք զանոնք կը վռնտեն այս իրաւունք յառաջ բերելով թէ «Գրգուռ ՄԵՐՆ է եւ անոր անտառներն ալ մեր են»։ Սոյն գիւղին դրացի կայ մի այլ գիւղ Շամիրամ կոչուած, որ առաջինէն տարբեր հանգամանք մի չունի գրեթէ ։

Այս տեղ ճանապարհին վերայ մի հսկայ իջեւան կայ կոփածոյ ընտիր քարերէ կառուցեալ, Ալամէն անուն, երբեմն կանոնաւոր առեւտրոյ տեղի եւ ճանապարհորդաց ապաստանարան էր, իսկ այժմ բոլորովին ամայացած՝ կը ծառայէ երկիւղ ազդելոյ անցորդաց։ Սորա ճակտին վերայ կան գրուած Արաբական ընթեռնելի գրեր, որք եթէ կարդացուէին՝ անշուշտ լոյս պիտի տային մեզ իւր հնութեան եւ այլ հանգամանաց վերայ։ Ալամէնի հեռաւոր շրջապատը մի քանի գիւղօրէից աւերակներ կը նշմարուին, որոց ոմանք ազգային նշաններէ զուրկ չեն ։

Շարունակելով կը հանդիպիք Խաթուն տէրէ կոչուած մի տեղ, ո՛ւր չքաւորն բնաւ պէտք չէ երկիւղ ունենայ, իսկ ունեւորն կրնայ ինքնա-

պաշտպանութեան դիմել 'ի Հարկին ։ Այս տեղէն փոքր ինչ հեռու Նեբրովդայ մերձ ձորակի մը մէջ կան բաւական թուով չորք մի ահագին քարեր ըղտանման, որք կը կոչուին արդէն «Ըղտու քարեր », որոց վերայ այս աւանդութիւն կայ․ «Նէմրուդ անուն մի զօրաւոր թագաւոր կ'ըլլայ, և շատ երկիրներ իր ձեռքի տակ ընկճելով կուգայ յայս կողմն լերան վերայ կ'ուզէ մեծ շէնք մի շինել․ գործի կը սկսի և կը շինէ փառաւոր պալատ մի շատ շքեղ և մարդկանց զարմանալի․ սոյն շէնքի աւազներն Վանայ ծովու եզերքէն ուղտերն կը բերէին ։ Երբ շէնքն աւարտեցաւ, Նեմրուդ սկսաւ մտածել որ ինքզինքն Աստուծոյ տեղ ժողովրդեան պաշտել տայ։ Ճշմարիտն Աստուած սոյն ամբարտաւանութեան վերայ բարկանալով անիծեց ուղտերն և զՆէմրուդ ։ Առաջինքն 'ի քար դարձան, որք ց'արդ կ'անուանեն «Ըղտու քարեր»․ իսկ երկրորդն իւր պալատովը գետնամոյն եղաւ, եւ Աստուած անոր շէնքի տեղը ջրերով լեցուց, որպէս զի Նէմրուդ մնայ անյիշատակ աշխարհիս երեսը․ ահա այժմեան լերան լճակաց տեղն է, ուր կորան Նէմրուդ եւ իւր շինուածք ։» Սոյն տեղէն փոքր ինչ եւս յառաջ երթալով հասանք 'ի Դատուան, որ Բաղէշէն 4 ժամ տեւեց ։

## ԳԼ. ԽԲ.

### ԴԱՏՈՒԱՆ

Նշանաւոր Դատուան գիւղ կը գտնուի Վանայ ծովու յԱրեւմտակողմն մի տափարակ դաշտի վրայ. օդն եւ ջուրը պատուական են հանդերձ գեղեցիկ եւ զուարճալի տեսարաններով, եւ գիւղն Վանայ առագաստաւոր նաւուց մի մասի նաւահանգիստն է։ Ունի 90—100 տուն Հայ և 1—2 տուն բողոքական, որք աստ կը կենան իբրեւ «Քրիստոսի սերմանացանք»։ Հայք ունին Ս. Թէոդորոս անուն մի անշուք եկեղեցի, որոյ վիճակին այնչափ աննշան է, որ աներկիւղ տարին 12 ամիս միշտ բաց է իւր դուռ։ Աստ կայ մի Նախակրթարան Միացեալ Ընկերութեան վերաբերեալ։

Գիւղիս բնակչաց առ հասարակ զբաղումն երկրագործութիւն է, և իւրեանց թիւն 600-650, որոց մեծագոյն մասն էգական սեռէ կը բաղկանայ, որ իւր մասնաւոր գեղեցկութեամբ առաջին տեղին կը գրաւէ այս կողմերու գիւղօրէից մէջ։ Արական սեռն կտրիճ և աշխոյժ է։ Տեղւոյս հարսանեաց եղանակը շատ հետաքրքրական է։ Ժողովրդեան գրեթէ մեծագոյն մասն բողոքական կրօնին միտեալ է այժմ, թէեւ, ինչպէս յիշեցի, 1—2 տուն բողոքական միայն կայ իւրեանց մէջ բնակուած. սակայն նախկին 5-6

տարուան Մխիթարայ քարոզութիւնքն մեծ ներգործութիւն գտած կ'երեւին իրենց մտաց մէջ, և որ աւելի ցաւալին է, ուսեալ քահանայք կը պակսին, ու բնակչաց բողոքական կրօնի համոզմանց առջեւ տեղի տուած և կորած լինել կը թուի ազգային ամեն զգացումնին։

Դատուանայ դաշտերու բուսականութիւնը թէեւ նուազ, բայց հողերն արգաւանդ են, և որպէս յիշեցի գիւղը նաւահանգիստ լինելով բաւական բարւոք նիւթականի տէր է։ Տեղւոյս նաւահանգիստը մեծ դիւրիւթիւն և զարկ տուած է և կուտայ Վանայ Բաղիշոյ հետ ունեցած առեւտրական գործին, վասն զի ծովու վրայէն Բաղիշեցին 28 ժամէն կարող է իւր ապրանքներ 'ի Վան փոխադրել օդոյ փոթորիկ չեղած ատեն, ասոր փոխադարձն ալ բնականաբար նոյն տեւողութիւնը պիտի կրնայ ունենալ։ Չ'մոռնամ ըսելոյ որ յիշեալ 28 ժամուան չորսը ցամաքային է Բաղիշոյ և Դատուանի միջեւ։ Այն ինչ ցամաքէն 7—8 օր պէտք է երկիւղի կասկածներով և ճանապարհի բնական դժուարութեամբք հանդերձ։

Դատուանայ մօտակայ սահմանին մէջ իրարմէ ¼ ժամ հեռաւորութեամբ կան նաեւ հետեւեալ 6 եկեղեցիք, որք են Ս. Կիրակոս, Ս. Գրիգոր, Ս. Սիմոն, Ս. Սարգիս, Ս. Թառաասուն Մանուկ և Ս. Ստեփաննոս, յորոց Ս. Սարգիս 'ի բաց առեալ, մնացեալքն հիմնայատակ և ա-

ւերակ են, ոմանց հիմնաքարերը ու ոմանց տեղերը միայն նշմարելի ցոյց կը տրուին ։ Յիշեալ եկեղեցեաց մէջ յիշատակութեան արժանի է Ս. Սարգիս, որ գեղեցիկ և ճարտարուեստ շինուած փոքրիկ տաճար մի է, ուր տարին մի անգամ տեղւոյս գիւղացիք մատաղ ընելոյ սովորութիւնը ց'արդ պահած են ։

Գիւղս ունի օրինաւոր և ընդարձակ գերեզմանատուն մի, որոյ մէջտեղ կառուցեալ է յիշեալ Ս. Սարգիս տաճարն և ո՛ւր ըստ սովորութեան ննջեցեալները կը թաղուին առաջնութեան կարգաւ ։ Թուական ունեցող խաչաքարանց առաջնոյն տապանագիրն է Ղ. որ ըսել է 1332—90=1242 տարուան ։ Նշանաւոր հնութիւն մ'է այս ։ Աւելի հին խաչաքարեր կային, որոց սակայն թուականն անընթեռնլի էր ։

Դատուանայ յԱրեւելակողմն 1/4 ժամհեռու բարձր բլրակի մի վերայ, (զոր երբեմն «բերդ» կ'անուանեն), Վանայ կամ Բղնունեաց ծովուն եզերքը, կայ բաւական հնկայաշէն մի աւերակ, որոյ համար կ'աւանդեն թէ « Ս. Սենեքերիմի ամարանոցն եղած է. իսկ աշունը կը վերադառնայր 'ի Վան »։ Սոյն շէնքէն դուրս, անոր գրեթէ կից 3 հատ մէջէ մէջ քարափոր փոքրիկ սենեակներ կան, որ կը թուին լինել այն հին ժամանակի « թանդարան ». շէնքի առջեւը կը տեսնուի մի ջրհոր քարափոր, որմէ 5 մէթր հեռու է նոյն ժամանակի «ամբար» կոչուած քա-

րափոր տեղին․ դարձեալ կայ աստ մի այլ տեղի միատուր քարէ փորուած բոլորակի, որոյ տրամագիծ 2 մեթր և բարձրութիւնն 7 մեթր կը լինի։

Գիւղիս կեդրոնը կը բարձրանայ ամիաչէն մի մեծ աւարակ, որոյ հսկայ պարսպաց մեծագոյն մասն քայքայեալ է․ Սոյն շէնքն հաւանականաբար պէտք է լինի իւր տիրոջ նժոյգներու և կամ հիւրընկալութեան տեղին։ Տեղւոյս կեդրոնական Հարաւը կը տեսնուի տնկուած մի խաչաքար ցաման խաչ անուամբ, զոր կանայք աւելի շատ կը յարգեն։

Դատուանայ 'ի Հիւսիսակողմն 20 վայրկեան հեռու 6—7 տեղերէ ընտիր ջրեր կը բղխին, որոց ամբողջութիւնն մի ջրաղաց կը բանեցնէ։ Սոյն ջրոյ ակունքն, նման Մեղրագետոյն կ'աւանդուի թէ «Նեբրովդայ գլուխը կը գտնուին.» Այս տեղերը կան նաեւ հանքային ջրոյ մի քանի աղբիւրներ, որք բնակչաց, փոխանակ առողջութեան տարր մի լինելոյ, այժմեան վիճակաւըն աւելի օդ կ'ապականեն։

Տեղացիք կ'աւանդեն նաեւ թէ «Դատուանըն ի հին ժամանակն եղած է մի քաղաք կամ գիւղաքաղաք 1500—2000 տուն բնակիչներով։»

Յաջորդ գլխով Դատուանէն յԱպահունիս (Պուլանըխներ) տանող երկու ճանապարհաց վըրայ պէտք եղած տեղեկութիւնները տալէս յետոյ, կը մեկնիմք 'ի պանծալի Վասպուրական։

# ԳԼ. ԻԳ.

## ԱԽԼԱԹ ԳԱՒԱՌԱԿԻ ԱՐԵՒԵԼԱԳԾՈՎ ԴԱՏՈՒԱՆԷՆ Յ'ԱՊԱՅՈՒՆԻՍ

*Դատուանէն յԱպահունիս մեկնելոյ համար մեր առջեւ երկու ճանապարհ կը բացուին, մին «Ախլաթ» (ի գաւառին Բզնունեաց) կոչուած գաւառակի արեւելագծովն, որ մի մասամբ ծովեզր է եւ կը տանի իւր համանուն հին քաղաքի վրայէն. իսկ միւսն յիշեալ գաւառակի կեդրոնական գծովն, որ առաջի ճանապարհէն կարճ է։*

*Այժմ զԴատուան մեզ չուսման կէտ ընդունելով, ուղեւորիմք նախ յԱխլաթու կողմն։ Սոյն գծի վերայ եւ ճանապարհէն քիչ ու շատ դուրս կուգան հետեւեալ հայ գիւղօրայք։*

ՍՈՐԿՈՒՆՔ, *որ ունի 9 տուն ողորմելի բնակիչ եւ 12 տարի յառաջ ունեցեր էր 30էն աւելի ճոխ տուն։ Գիւղիս անցելոյն նկատմամբ կը պատմուի թէ «անակընկալ դէպքերու ենթակայ լինելով գաղթած են»։*

ԿԾՈՒԽԱԿ, *ունի 80 տուն բնակիչ, մի եկեղեցի եւ քահանայ, սոցա նիւթական վիճակն բաւական բարւոք է, դպրոց չունին, զուրկ ազգային զգացումներէ եւ մի մասամբ յարեալ բողոքական կրօնին, գիւղս ունի գեղեցիկ անտառ եւ զուարճալի հովանիք ծառոց։*

ԾՂԱԿ *ունի 100 տուն, բնակիչ, մի եկե-*

ղեցի եւ քահանայ, առանց դպրոցի։ Գիւղիս մէջ 5—6 տուն Բողոքական կայ հաստատուած, որոց ջանքն է այս կողմերու տգիտութենէն օգուտ քաղել։ Ծղակէն 20 վայրկեան հեռու կիսաւեր վանք մի կայ Վանայ Ծովու եզերքը, զոր դժբաղդաբար տեսնելու առիթ չունեցայ ինձ առաջնորդող ինձի անհամբերութեան պատճառաւ։

ԱՂԱՂ, որ ունի 18—20 տուն բնակիչ, 13 տարի յառաջ Լուսաւորչական էր, իսկ այժմ ամբողջապէս Բողոքական դարձած են։ Այս եւ յիշեալ երեք գիւղերն Բաղիշոյ Առաջնորդութեան կը պատկանին։

ԱՂԷՏ, որ այժմ աւերակ եւ անմարդաբնակ է, չունի յիշատակութիւն մը։

ԿԱՄՈՒՐՋ գիւղն ունի 80 տուն բնակիչ, մի եկեղեցի եւ քահանայ, իսկ դպրոց դրեթէ ոչ։ Ժողովրդեան կրօնասիրութեան եւ ուսումնասիրութեան եռանդ շատ գովելի է եւ նիւթական կարողութիւննին եւս բաւական զօրաւոր, սակայն յորդորող եւ կարգադրող անձինք կը պակսին, այր աղագաւ չեն կարող իւրեանց որդւոց բարւոք դաստիարակութիւն մի տալ։

ԱԽԼԱԹ կամ ԽԼԱԹ հին պատմական կեանք ունեցող երբեմն գլխաւոր քաղաք եւ այժմ գիւղաքաղաք է համանուն գաւառակին, ուր կը նստի Գայմագամ, ընդ իրաւասութեամբ Բաղիշոյ կուսակալին։ Քաղաքն կառուցեալ է Բըղ-

նուններց ծովու Արեւմտեան Հիւսիսային եզե֊
րաց վերայ, ունի կենդանի կլիմայ եւ գեղե֊
ցիկ ծառաստանք մրգեղինաց։ Ախլաթ 5 թա֊
ղերու բաժնուած է, ամբողջ բնակչաց թիւն
200 տան մօտ կը հաշուի, յորմէ 10—13 տուն
Հայ են բնակուած «Խարապա—չէհիր» ըսուած
թաղին մէջ։ Քաղաքիս մէջ այլ եւ այլ կողմեր
կը տեսնուին Օսմանեան Արքայից ինչ ինչ հը֊
նութիւնք եւ պատուաւոր Շեխերու մեռելա֊
տեղէք։

ԱՌԱՔ 5—6 տուն Հայ բնակչօք, երբեմն
80 տուն, որոց պապերու խաչաքարինք գաղ֊
թականութիւնը կ՚ապացուցանեն։

ՏԵՐՍՕՆՔ ունի 26 տուն բնակիչ, եկեղեցի
եւ քահանայ, իսկ դպրոց ոչ։ Գիւղն միտեալ
է բողոքական կրօնի, ունին ընդարձակ արտօ֊
րայք։

Տերսօնքէն սկսեալ 3—4 ժամուան տեւո֊
ղութեամբ դէպ ՚ի Հարք գաւառ երկիրն խո֊
տաւէտ եւ ջրաւէտ է։ Այս տեղերու լերինք եւ
բլուրք քրդական կալուածներ դարձած են, ուր
իւրեանց ոչխարներ եւ մատակ (գըրրագ) նը֊
ժոյգներ կ՚արածեն։

ՄԻՍԿԱՎԱՆՔ, որ այժմ աւերակ եղած է,
ցոյց կը տայ ուղեւորաց իւր նախկին բնակչաց
արտօրայք եւ դաշտօրայք, որք չրջապատած
են բնակութեանց կիսակործան պարիսպները։

Աստ մի հինաւուրց փշոտ ծառի տակ քա֊

րաժայռի մը քովէն դուրս կը տայ զղզղալով (պաղուկ) մի պատուական ջուր, որոյ առընթեր Քուրդերն գիշերին կ'իջեւանին 'ի հանգիստ ։

Այս աղբիւրի մօտ է մեր գնալոյ ճանապարհն, ուրմէ եկաւ մի գեղջուկ, որ կ'երեւէր երկրի բնակիչներէն լինիլ, երբ մտաւ 'ի ձորադաշտն մեր եկած ուղիէն երթալոյ, ոտք առաւ ու թռաւ, ես եւ ընկերս զարմացանք սոյն գեղջուկի արագընթացութեան վրայ եւ ուժոյն՝ որով անհագին կաշի մ'ունէր յիւր կռնակն ։ Այս մարդուն քրտնքի մէջ այս աճապարն մեզ անծանօթ՝ մեկնեցանք Միսկավանքէն ։

Ցետոյ կը գան մի քանի քուրդ գիւղօրայք, դաշտայնն եւ լեռնային ճանապարհներ մինչեւ 'ի սահման Ապահունեաց գաւառին, ո՛ւր չ'մտած անա կը վերադառնամ 'ի Դատուան՝ Ախլաթու կեդրոնական գծի տեղագրութիւնն ընելոյ գաւառակին վերայ ընդհանուր ծանօթութիւն մի տալով հանդերձ ։

## ԳԼ. ԻԳ.

### ԱԽԼԱԹ ԳԱՒԱՌԱԿ

Ախլաթու գաւառակը բաւական թուով գիւղօրայք կը պարունակէ, մեծ մասամբ Հայ ։ Երկիրն առ հասարակ տափարակ է, օդն եւ ջուր բաւական գոհացուցիչ ։ Հողերն աւազուտ, այլ արգաւանդ են եւ յառաջ կը բերեն ընտիր

ցորեան, բուսականութիւնն շատ նուազ է, այս պատճառաւ ժողովուրդն ստիպուած է հողերու ամենապատուական մասը վերապահել խոտ ցանելոյ, զոր օրինակ առուոյտ եւ կորընկան, ընդ որս կը կցին նաեւ մարգագետիններու խոտերն, հազիւ կարող կը լինին իւրեանց անասուններն աշունէն 'ի գարուն ձգելոյ։ Բոլոր բնակչաց առեւտուրն Բաղիշոյ եւ Վանայ հետ է։

Դատուանէն մեկնիմք կրկին դէպ 'ի Հարք գաւառ ըստ ոմանց դէպ 'ի Ապահունիս վասն զի սոյն երկու գաւառներու սահմաններն 'ի նախնեաց անտի ճշտեալ չըլլալով կէս մ'անորոշ են եւ մենք միջին ճամբուն հետեւելոյ ստիպեալ եմք մեր սոյն տեղագրութեան մէջ։

Այս անգամ Ախլաթու կեդրոնական դիծը բռնելով. այս ուղղութեամբ 2 ժամէն կը հանդիպիմք Թեղուտայ Ս. Յովհաննէս վանքը, որ ճանապարհէն փոքր ինչ դուրս կը գտնուի Նեբրովգայ մէկ կողման ստորոտը գրեթէ լեռնաձորակի մը մէջ կառուցեալ կոփածոյ քարերէ։ Վանքն ունի գեղեցիկ տեսարան, դիրք եւ զօրաւոր կազմութիւն, միայն թէ տաճարն բաւական մութ է, որոյ պատճառն ինձ պատմեցին եւ բանաւոր գտայ։ Մի քանի՛ տարի յառաջ տեղի ունեցած այս կողման երկրաշարժն վանուց արտաքին հսկայ պարիսպները փոքր մասամբ քայքայած է եւ ց'արդ այնպէս կը կե-

նայ ։ Ունի մի քանի սենեակներ, բաւական թուով տուար եւ ոչխար . իսկ թեմական երկու գիւղ միայն ։ Վանուց վանահայրն է երբեմն կրակոտ Ղազար վարդապետ՝ որ այժմ 113 (հարիւր տասն երեք) տարուան ծերունի դողդոջուն եւ համր կը կենայ վանուց մի անկիւնը, սակայն խօսքով, հրամանով եւ յիւր երիտասարդութեան գտած ազդեցութեամբն կարող կը լինի, ըստ օրինի, կառավարել զվանս եւ զպարագայսն ։

Ալեւոր վարդապետն այս դարաւոր ծերութեան մէջ տակաւին կենդանի մը կը պահէ իւր երիտասարդութեան քաջասրտութիւնն եւ ձիավարժութիւնն, զոր ներկայիս մէջ իսկ երբեմն ի գործ դնելն իւր գլխաւոր զուարճութիւնն է ։ Ես պատեհ առիթ ունեցայ կենդանի բարբառով դարաւոր պատմութիւններ լսելոյ, սակայն մեծ ցաւ զգացի 'ի սիրտ եւ 'ի հոգի, երբ ծերունւոյն մտաւոր կարողութիւնն իւր լուրջ վիճակէն տարբեր գտայ ։ Այս պարագայից մէջ նա որչափ փափաքելով ճիգ կը թափէր զգացումներս իւր հինաւուրց ծանօթութեամբք գոհացնել, ես նոյնչափ աւելի գոհ կը լինէի իրմէ, սակայն մեծ վիշտ եւ միանգամայն զայրոյթ կ'զգայի բնութեան դէմն, որ այս պահուս զիս չէր հասցներ իմ նպատակին ։

Վանքն դպրոց չունի, ինչպէս նաեւ գրական կեանք, զի վանահայրն նոր ժամանակի

ծնունդ չ՛լինելով նորա նշանակութիւնը չէ ըմբռնած, որով եւ անջանադիր է առ ուսումն և դաստիարակութիւն, թէև ինք առաքինի և ազգօգուտ կողմերէ զուրկ չէ։

## ԳԼ. ԻԵ.

### ԹԵՂՈՒՏ

Թեղուտայ Ս. Յովհաննէս վանքէն վար իջնալով 1/2 ժամէն կը հասնիմք վերոյիշեալ համանուն գիւղը, որ ունի 200 տուն զուտ Հայ, մի տաճարաւոր եկեղեցի, ծանուցեալ երկրաշարժէն փոքր ինչ վնասուած և 3 քահանայ միջակ տարիքով, որք բաւական ջանասէր են դպրոցի համար, զոր այժմ չունին տակաւին, այլ շէնքն թերեւս աւարտած լինին, որ կիսաշէն կը կենար։ Խնդիրը կը կայանայ այսուհետեւ դասատու ունենալոյ վերայ, որ շատ տարակուսելի է, վասն զի ժողովուրդն ամենամեծ մասամբ անտարբեր վիճակի մէջ է։

Գիւղիս գերեզմանատունն շատ կանոնաւոր է, ո՛ւր կը գտնուին բազմաթիւ գեղեցկապէս քանդակեալ տապանաքարինք, որոց վերայ մեծ խնամք տարած լինել կը թուին. մեռելոց վերաբերութեամբ իրենց ունեցած սոյն հոգատարութիւնն, կրօնական տեսակէտով, կրնայ ունենալ իւր գովելի մասեր, սակայն իւրեանց կենդանի նոր սերնդեան դաստիարակութեան

նկատմամբ ցոյց տուած անհոգութիւններն աններելի յանցանք մի է ներկայ ժամանակիս մէջ. սոյն դատապարտութիւն մասամբ մը կը մեղմանայ երբ կը տեսնուի թէ կրթական գործի կարեւորութիւնն իրենց բնաւ չէ պատմուած և իրենք նախնական վիճակի մէջ են տակաւին, յորմէ արտաքին ջանիւք դուրս հանելն իրաւունք է ։

Թեղուտ Ախալթու կարեւոր և բազմահայ գիւղերէն առաջինն է, բայց ոչնիւթական կարողութեամբն ։

Գիւղիս շրջապատը տեղ տեղ բարձր բըլրակաց վերայ խաչաքարեր կան անկուած ցասման խաչ կոչուած, որոց բացատրութիւնն անգամ տալ անհրաժեշտ է, վասն զի այսուհետեւ ուղեւորութեանս կարգին մէջ շատ տեղեր ցասման խաչ կամ ցասման քար պիտի յիշուի, առանց այլ ևս անոր բացատրութիւնն կրկնելոյ ։

Երբ երաշտութիւն, ցորեաններու և ուրիշ արմտեաց արմատները կորող մարախ կամ մի այլ ընդհանուր պատիժ (բնականէն) տեղի ունենայ, յայնժամ գիւղացիք ամբողջովին հըսկումով պատարագ ընել և քար օծել կը տան, ու այդ քարը կը կանգնեն բլուրի մի վերայ 'ի բարձումն երկնային ցասմանն, որոյ անուամբ կը կոչեն զայն ։

Մեկնիմք Թեղուտէն 'ի ՓՈԽՈԽՍ. սոյն գիւ-

ղը կրնայ համարուիլ նախորդի երկրորդն , որ ունի 130 տուն բնակիչ , մի հսկայաշէն և գեղեցիկ եկեղեցի յանուն Ս. Ստեփաննոսի կառուցեալ կոփածոյ սեաւ քարերէ , ընտիր և ճաշակաւոր , որոյ նմանն գաւառիս մէջ չ'կայ ։ Ունին քահանայ և ո՛չ դպրոց ։ Ժողովուրդն առ հասարակ զուրկ է կրօնական զգացումէ և միանգամայն անսիրող իմաստութեան ։ Իգական սեռըն արականին ճշդիւ հակապատկերն է ։ Աստ 4—5 տուն Թողըքական կայ , որք երբեմն գասեր կը խօսին և իրենց լեզուաւ կը քարոզեն ժողովրդեան « կրօնասէրութեան » .

Գիւղիս եկեղեցւոյ շինութեան նկատմամբ հետեւեալ աւանդութիւնն աստ դնել աւելորդ չեմ համարիր , որ տեղւոյս տարեւորներէն կը պատմուի , իբրեւ թէ եկեղեցւոյն շինութեան համար գիւղացիք մի ժողով կազմած են և հետեւեալ պայմաններն կնքուելէն ետքը ձեռնարկած ըլլան գործի ։

« Ա. Եկեղեցւոյ կառուցման համար ո՛րչափ քար պէտք լինի , երիտասարդաց պարտքն է այս ինչ տեղէն բերել » ։

« Բ. Ցանուտերաց պարտականութիւնն լինի եկեղեցւոյ պարսպաց քարերու մէջտեղերը դըրուելի շաղախին պատրաստութիւն , որոյ մէջ ջըրոյ տեղ պիտի գործածուի ամբողջ գիւղիս ոչխարաց կաթերն և զօրաւոր ընելոյ համար հաւուց հաւկիթներն » ( սոյն նիւթերով շաղախին

պատրաստութիւնը ճարտարապետ, նախահրա-հանգն լինելու է ) :

« Գ. Հարսերն և չափահաս աղջիկներն պարտաւոր լինին պէտք եղած ջուրերը բերել շինութեան համար » :

« Դ. Փոքրիկ մանչեր և աղջիկներն ալ պէտք ըլլալիք խիճիր » :

« Ե. Քահանայից պարտաւորութիւնն լինի մի միայն գործոց հսկողութիւնն»: Այս սոյն պայմաններով կը շինուի այժմեան փառաւոր եկեղեցին, որոյ դերեզմանաքարինքն եւս ճաշակէ և ճարտարութենէ չեն զուրկ :

Գիւղիս հեռաւոր սահմանները կը գտնուին հին աւերակներ, ինչպէս և հետաքրքիր անուանք ունեցող եկեղեցեաց տեղիք, զոր անձամբ տեսնելոյ պատեհութիւն չունեցայ :

Փրխուսէն ելնելով մէկ ժամէն կը հասնիմք 'ի Նազիկ լճակ, որոյ երկայնութիւնն է յԱրեւելքէն յԱրեւմուտս, իսկ շրջապատը մէկ օրէն հազիւ մարդ մը կրնայ պտտիլ, եզերքներն շատ ներս և դուրս ինկած, ձմեռն սաստիկ սառ կը կապէ, այնպէս որ վրայէն երթեւեկութիւնք կը լինին : Գարնան եղանակին սառերու կոտրելոյ ատենները դժբաղդութիւնք եւս կը պատահին երբեմն : Սոյն լճակի մէջ մանր ձկունք կը գտնուին, որք կ'որսացուին դետերու միջոցաւ (թէ ի'նչպէս, 'ի Վասպուրական ընելիք ուղեւորութեանս մէջ մանրամասնօրէն կը գրեմ ) : Սոյն

լճակն այնչափ կատաղի ալէկոծութիւնք չունի, հանդարտ է բաւական, թերեւս այս նկատմամբ «Նազիկ» անուանուած է։

## ՄԵԿՆՈՒՄՆ

Նազիկլի քովէն մեկնելով 'ի Հիւսիսակողմն $1\frac{1}{2}$ ժամէն մեր դէմը կ'ելլէ Քեռս (թերեւս քեռխս) գիւղն, որ երբեմն ունեցեր է 50 տուն Հայ և այժմ 10 տուն քուրդ միայն։ Գիւղիս մէջ տակաւին ողջ կը կենայ Հայոց եկեղեցին, քարափոր գետնի տակ, ո՛ւր մտնելով զարմանքըս շարժեց սոյն եկեղեցւոյ փորուածքին համար ժամանակին 'ի գործ դրուած անհնարին աշխատանաց վրայ։ Չեմ գիտեր թէ արդեօք ստոյգ կը լինի՞ թէ որ ըսուի «մեր նախնիք ժամանակին երբեմն չ'կրնալով երկրիս երես զԱստուած պաշտել պարտաւորուած են երկրի տակը մտնելով անոր փառաւորութիւնն մատուցանել»։

Յիշեալ քարափոր անյիշատակ եկեղեցւոյ վերաբերութեամբ հետեւեալ աւանդութիւնն միայն մնացեր է, զոր անկորուստ պահելոյ բաղձանքով կը նշանակեմ աստ 'ի յաւէրժ յիշատակ հետեւեալ առաքինի Հայուն։

«Քեռս գիւղի նախկին բնակիչ Հայոց մեծն Աւտէ (Աւետիս) հարուստ և առատասեղան, երբ իւր տարիքն 80 կ'անցնի այլ եւս իւր տանուտիրական իշխանութիւնը կը թողու երէց որդ-

ւոյն և ինքն սոյն եկեղեցին գետնափոր շինել կը տայ, նոյնպէս մի սենեակ իւր համար յատուկ, որոյ պատուհանը կը նայի ճանապարհի վրայ, յարաժամ պատուհանի առջեւ նստած անցնողին առ ինքն կոչելով կը տար մի հաց անխտիր «տամ սիրով Աստուծոյ սիրոյն», որ ինձ պատրաստէ երկնից արքայութիւն»:

Այս տեղէն մինչև յԱպահունիս գաւառն 2 ժամուան տեւողութիւն է, որոյ վրայ 4—5 աննշան գիւղեր կան Քուրդ և Հայ:

Ճանապարհին կէսն լեռնային և երկիւղալից է և կէսն դաշտային և ապահով:

Վերադառնամք ի Դատուան շարունակելոյ մեր առաջադրեալ ուղին:

## ԳԼ. ԻԶ.

### ԴԱՏՈՒԱՆԷՆ Ի ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆ

Դատուանէն մեկնելով ուղեւորիմք 'ի Վասպուրական՝ ՀԱՅԱԲՆԱԿԻ կեդրոնական նահանգներէն մին, Վանայ ծովու Հարաւային կողմէն դէպ 'ի յԱրեւել տանող ոլորապտոյտ գծովն, որոյ վերայ ճանապարհն բաւական տեւողութեամբ ծովեզր լինելով կը կոչուի «կապան», ահա սոյն կապանէն յառաջ գնալով ճանապարհորդն պարտաւորուած է նախ լուրջ և զգուշ գնալ ու ապա իւր երկու աչքը չորս բանալով նայիլ ամէն կողմն, վասն զի տեղն բնական և

անբնական պատճառներէ ունի իւր բազմաթիւ վտանգաւոր կողմերն, որք կընան մարդոյ յառաջգնացութեան ուղին փակել իսպառ ։ Այսպէս կը մտնամք Կարճկան կոչուած գաւառակըն, որ 'ի հնումն Ռշտունեաց գաւառի արեւմըտամասը կը կազմէր ։

Երկիրն ընդհանրապէս լեռնային է և խիտ ու ընդարձակ անտառներով լի, ուր կը գըտնուին դայլ, արջ, խոզ, աղուէս և այլ տեսակ վայրի կենդանիք և զանազան թռչունք ։

Կարճան ունի պատուական կլիմայ և անուշ ջուր առատ ։ Հողային ընդարձակութիւնն այնչափ մեծ չէ, սակայն եղածն արգասաբեր է և առ հասարակ երկրի խոտաւէտութիւնն հըռչակ ունի, որոյ մէջ ցած անասուններ շատ անգամ չեն երեւիր ։ Ունի արծաթի, պղնձի և կապարի անգործ հանքեր ։

Անտառաց մէջ կանոնաւոր և գործածելի ծառոց տեսակներն են Արտուճ, որ հարիւրաւոր տարիներ կը դիմանայ առանց փտելոյ և ուտիչներէ (պտոտ) վնասուելոյ. սորա տերեւները բարակ կլոր բոյսի պէս են և մշտադալար նման դափնի, զոր շատ կը յարգեն Պօլսեցիք, մանաւանդ հանդէս կազմելոյ համար ։

«Կաղնի», որ կը ծառայէ ածուխ շինելոյ և վառելափայտի ։

«Կաղամախ», որմէ կը պատրաստեն տուներու շինութեանց գերաններ և մարդակներ ։

Մրգաստանի ծառաստանք հազուագիւտ են, իսկ ընկուզենիք խիստ առատ ամեն կողմն։

Կարճկան գաւառակն 14 Հայ և մի քանի Քուրդ գիւղերէ կը բաղկանայ, զորս միւտիրի մը յանձնուած են ընդ գերիշխանութեամբ Վանայ կուսակալութեան։ Հայ գիւղօրէից իւրաքանչիւր բնակութեանց միջին թիւը 25 կրնայ համարուիլ։ Ամենքն ունին իւրեանց եկեղեցիք հաստատուն կալուածներով, սակայն, ցաւ է ըսել, առանց դպրոցի են ընդհանրապէս։

Կէօլլիւ, որ գաւառակի կեդրոնական գիւղըն է. ունի 50 տուն բնակիչ, յորոց 30 Նըստկան են և 20 աստանդական. աստ միայն կայ Ներաշէն դպրոց մի կառուցեալ երկայարկ և օրինաւոր. աստ կ'աշակերտին 25—30 աշխոյժ և կայտառ ուսանողք Վարագայ ժառանգաւոր վարժարանի ուսումնաւարտ աշակերտներէն միոյն ուղղութեան տակ. Տեղւոյս դպրոցական գործի սոյն մխիթարական կողմն, որպէս անձամբ ստուգեցի. Խրիմեան Ս. Հայրիկի հայրական խրատուց և յորդորանաց արդիւնքն է. ինչպէս և ուսուցիչն Նորին Սրբազնութեան վարժարանի պտուղ։ Մեծ յոյս ունիմ, որ սոյն կրթարանն մի օր գաւառակիս լուսաւորութեան միջնորդ պիտի հանդիսանայ, եթէ ջանքեր չ'պակսին և լինին յարատեւ։

Կարճկանի ժողովուրդ մեծագոյն մասամբ խաշնարածութեամբ և երկրագործութեամբ

կ՚զբաղի . մի փոքր մաս ևս կը պարապի կօշկա-կարութեամբ. կօշիկներն խիստ անճոռնի են, որոց տակ ամեն տեղ կը քամեն ձիու պայտի բեւեռը կը չինեն նաև մի այլ հետաքրքիր տեսակ ոտ-քի աման, զոր իրենք կ՚անուանեն չարուխ, որ տրեխի կը նմանի, զոր կը պատրաստեն հետեւ-եալ եղանակաւ ։ Չարուխի տակի կողմն թա-ղիք է թանձր, վրան ամեն տեղ կը պատմեն տե-սակ մը կլորագլուխ բեւեռով, զոր տեղացիք կը չինեն . շրջապատն կանեփէ գործուած, երկու օխայէն աւելի ծանր կօշիկ և չարուխ տեսայ ի-րենց ոտքը ։ Այս տեսակ ոտքի ամաններ գործա-ծելոյ արդէն դատապարտուած է տեղւոյն բը-նութեան լեռնական վիճակին, որոյ վերայ ու-րիշ տեսակ կօշիկներ անյարմար են քալելոյ ։

Կարճկան վաճառքի գլխաւոր ներածութիւն չունի, իսկ արտածութիւն ունի հարիւրաւոր պարարտ ոչխարներ մեծամեծ դմակներով ծան-րացեալ ։ Իւրեանց հօտերու մէջ, զոր նոմէր կ՚ա-նուանեն, կը գտնուին երբեմն այնպիսի ոչխար-ներ, յորոց իւրաքանչիւրի դմակն 10—15 օխա-յի կշիռ ունի, զոր ոչխարը շատ անգամ իւր ետեւէն չ՚կրնար քաշել, որոյ համար կը գործա-ծեն սայլակներ, յորս դրած կը կապեն, որով այդ սուրբ կենդանին դիւրութիւն կ՚ունենայ իւր քայլեր յառաջ տանելոյ, որք չեն օգնել բնութեան իրեն պարգեւած դմակի ծանրութե-նէն ։

Նոյնպէս տեղէս 'ի վաճառ կը տարուին 'ի Բաղէշ և 'ի Վան (որոց հետ են իրենց առևտրական յարաբերութիւնք) պատուական իւղ, որ ազնուութիւնը վաճառողն գնողին ցոյց տալոյ համար «Ջրի պէս խմէ» կ'ըսէ երբ իւղի համն նայելով գոհ չ'լինի: Պանիր, մեղր և մեծ քանակութեամբ ընկոյզ, որոց հազարն 6-8 դահեկանի կը ծախեն: Նմանապէս, իբրև չոեմարան, առատ փայտ և ածուխ կը մատակարարէ Վանայ և Բաղիշոյ վիճակացն:

Կարճկանի Հայ բնակիչք առ հասարակ են բարձրահասակ, պարթևադէմ, լայնալանջ, կտրիճ, ուժեղ, զօրաւոր և միանգամայն հաչակաւոր նշանառու . . . . . . . . . . . . . . . . .

Ինքնապաշտպանութեան գործին մէջ արական սեռն շատ վարժ է և իգականն գրեթէ: Ձևերնին ընդհանրապէս քրդական են, գլուխնին արդէն բնականէն խոշոր կը դնեն նաև դառան բրդէ չինուած կոնաձև թանձր գդակ մի, զոր իրենք քօլըղ կ'անուանեն և որոյ վերայ 10—15 հատ երփներփեան թաշկինակներ կը փաթթեն իրարու վերայ իրենց մասնաւոր ճաշակաւն. կը հագնին տեսակ մի շապիկ, որոյ թևուց ճօթերու երկայնութիւնն գետին կը քսուի, այլ վերայ գոյնզգոյն ծաղիկներ բանելով կ'անուանեն «Ջեւյի» շապիկ, որ շատ յարգի է իւրեանց մէջ: Ահա ասոնց համաձայն են ըզդեստուց միւս մասերն: Սոյն դիրքով Հայերն

երբ կ'երեւին՝ անծանօթ մարդոց անմիջապէս
յիշեցնել կը տան ո՛չ թէ միայն զՆեբրովդ, զՍամ-
սոն և զԳողիաթ, այլ եւ նոցա հսկայագոյն պա-
պերն իսկ ։

Զարմանալի է որ հնախոյզ Եւրոպացիք շատ
անգամ ծով և ցամաք ընելով միշտ երկրի տակ
կը փնտռեն վիթխարի մարդոց մեռեալ դիակներ
'ի զարդ իւրեանց հնութեան թանգարանի, մինչ-
դեռ աստ 'ի Կարճկան գետնի երես, արեւու առ-
ջեւ, կենդանի, բանաւոր և խօսուն հսկայ մար-
դիկ կ'անտեսանան իրենց աչքին ։

Ահա բնական բարեմասնութեամբ օժտեալ
Կարճկան գաւառակն տակաւին ազգայնոց գը-
րեթէ անծանօթ՝ բնութեան մի խորշը մտած
կիսով չափ կը նայի միշտ Վանայ ծովու մակե-
րեւութին վերայ դէպ 'ի Հիւսիս աչքն յառած.
շատ գոհ կը լինի երբ 'ի ծովուն բացուած ա-
ռագաստանաւեր տեսնայ, որ հաւանականաբար
իւր վաճառաբարձ նաւերէն, ոմանք կրնան լի-
նիլ, որպէս Անգղիացւոց շոգենաւներ Պոլսե-
ցւոց համար՝ վաճառաբեր 'ի Սեւ ծովուն ։

Կարճկանի վերայ սոյն տեղեկութիւն տա-
լէս յետոյ, աստ կը նշանակեմ իւր գիւղերէն
ոմանց լոկ անուան, որք հետաքրքիր են, զոր օ-
րինակ Կոմս, Սորբ, Վանիք, Օղվանց, Կեն-
դրանց, Մրորս, Խումս, Արանց, Խնձորդին ևլն ։

Տեղական Հայոց ընդ-հանուր գործածու-
թենէն առնելով ուղեւորութեանս չարքին մէջ

տեղ տեղ երբեմն մանաւոր բառեր իւրեանց սովորական հնչմամբ գործածել կարևոր կը համարիմ ազգային բանասիրաց ուշադրութիւնն հրաւիրելոյ միակ նպատակաւ ։

Յաջորդն գլխով կ'ուղեւորիմք 'ի Գաւաշ ։

## ԳԼ. ԻԲ.

### ԿԱՐՃԿԱՆԷՆ Ի ԳԱՒԱՇ

Կարճկանէն մեկնիմք 'ի Գաւաշ, որ Ռըշտունեաց գաւառի կեդրոնական Արեւելեան կը կազմէ և երկրի գրեթէ միջավայրին վրայէն յառաջ երթալով դարձեալ փոքր ինչ տարբերութեամբ, նման Խօշ—Օղլանայ, մեզ կը հանդիպին հետզհետէ բազմաթիւ լեռնահովիտք, մեծամեծ ձորեր և ձորակներ, աննշան լերանց գօտիներ, մեծ և փոքր բլուրներ, որոյմէ ոմանք կարճիկ անտառներով զարդարուած, մեծագոյն մասամբ Հարաւէն 'ի Հիւսիս ձգուած են, որոց մէջ տեղ տեղ կը գտնուին Հայ և Քուրդ փոքրիկ գիւղեր, յորոց վերջինքն կըրնան առաջնոց հակառակ համարուիլ և վերջապէս միջանկեալ բաւական ընդարձակ դաշտօրայք արգաւանդք, ընտիր խոտաւէտ և ջրաւէտ տեղիք և աղբիւրք անմահականք կտրելով՝ յառաջ կը տանիմք մեր ընթացք ։ Ահա այսպէս Ուղեւորն պատուական մի կլիմայ ճեղքելով վայրկեան առ վայրկեան, ընդ միշտ կը

չնչէ մաքուր և կենսատու օդ մի, որոյ ազդե֊
ցութիւնն զգալի եղանակաւ մեծ է տեղական
բնակչաց վրայ, որոցմէ առաջին մասը նման
երկրորդին միշտ կեանք կ'ընդունի, այլ յար
դժգոհ իւր վիճակէն, որոյ պատճառը դըժ֊
բաղդաբար չ'կրցայ նկարագրել, վասն զի եր֊
թալու պահուս ինձ պատահեցան տեղւոյն համ֊
գամանաց մի քանի փորձառուք և ասացին թէ
«օրն տարաժամ է, գիշերուան իջեւանատեղին
դեռ հեռու, աստ երկիրն ամայի, դու դեռ
անփորձ և անծանօթ, փութա՛, ուղիղ յառաջ
տար, զի գալիք ճանապարհներն չատ նեղ են
և փշոտ, ո՛ւր գիշերին չ'կարես կենալ ո՛չ դու
և ո՛չ քո կարապետ։»

Այս յորդորական խրատուց վրայ մեք թէ֊
պէտեւ հոգնած, ուղինիս յառաջ վարելով կը
հասնիմք մի կլորակ դաշտավայրը, որոյ հիւսի֊
սային կողմն ահարկու լեռներէ չրջապատեալ
է, դաշտավայրն կանաչազարդ և ծաղկազարդ
լինելով սիրտս ցանկայ 10 վայրկենի չափ կանգ
առնուլ, որով չնչմամբ քաղցր օդոց իւր առըն֊
թեր տկարացած զոյգ թոքերուս նոր սնունդ
տալ, սակայն սիրտս չ'հասաւ իւր ցանկութեան,
ըստ որում անընական դիպաց բնական տագ֊
նապի երկիւղը զիս արդէն դրած էր յաճա֊
պար, նոյնպէս զընկերս, որ թէև չ'լինէր արիւ֊
նէս, այլ հաւատարիմ իւր ուխտին, չարունա֊
կեցինք մեր ճանապարհ և անվտանգ հասանք

՚ի Բէլու, որ սահմանն է կարճկանի և Գաւաշու միջև եղած ։ Սոյն գիւղն ունէր 80 տուն Հայ բնակիչ, 2 տարի առաջ 20 տունը գաղթեցին ՚ի Ռուսաստան, և այժմ 60 տուն մնացեր են։ Ունին մի եկեղեցի առանց դպրոցի, ժողովուրդը վերջին աստիճան խեղճ և ողորմելի է ։

. . . . . . . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . . . . . .

Ներքովգայ անունը շողափող մի այլ աւանդութիւն տեղւոյս կամ լաւ ևս է ըսել գաւառիս մէջ կը պահուի, որ աստ նշանակել աւելորդ չէ ։

«Երբ Բէլ սպաննուեցաւ ծանօթ պարագայից մէջ, մարմինն ինկաւ նոյն թշնամւոյն նետահար ։ Հարողն հրամայեց զհարեալ մարմինն բերել աստ ՚ի թաղել, ճանապարհին մինչ կուգային՝ Տրշող անուն մի գիւղ իջաւ ՚ի հանդիստ. մինչև այս տեղ յաղթանակող նետին ծայրն տակուին կը կենայ եղեր Բաբելոնեան հսկայի կուրծքը, ուստի երբ կը քաշեն դուրս, արեւն տեղւոյն վրայ զարնելով շող կը տայ ՚ի պատին հանդիպոյ, թոռնեկն յաղթող մարդուն զայս տեսնալով խմաց կը տայ մատնացոյց իւր մեծ պապուն ըսելով թէ «տե՛ս շող», այս պատճառաւ նոյն գիւղի անունը մնաց Տեսշող, որ յետոյ աղաւաղուելով եղաւ Տրշող, (որ այժմ ունի մի քանի տուն Հայ բնակիչ). ասկէ մարմինն առած կը բերեն և Բէլու գիւղի մէջ կամ մօ-

տեր մի տեղ կը թաղեն, որով գիւղին անուն կը մնայ Բէլու, թաղուողի անուամբը։ Բէլու անուան —ն հաւանական է ժողովրդեան կողմէն կցուած լինի ետքէն, այսու ամենայնիւ թէ՛ առաջին և թէ՛ վերջին որչափ հաւանական կրնան համարուիլ կը կենան մթոյ մէջ։

## ԱՄԱՅԻ ՎԱՔՆ ՄԸ

Բէլուի Հիւսիսակողմն, քիչ մը տարակայ, կը տեսնուի փոքրիկ գեղեցկաշէն վանք մի գմբեթաւոր, ճերմակ կոփածոյ քարերէ կառուցեալ երկայն բլրոյ մը ստորոտը՝ դարաւոր ընկուզենւոյ մը քով։ Վանքն ունի ճաշակաւոր շէնք և հաստատութիւն, որով ց'արդ նոր շինուածի պէս է և առանց ամենափոքր վնասու կը կենայ լռին ամայութեան մէջ։ Սորա քառանկիւն պարսպաց քառակուսի քարանց վերայ արդարև քառապատիկ նայեցայ, սակայն համոզիչ թուական մի չ'գտայ և իւր անունն իսկ ինձ անծանօթ մնաց դժբաղդաբար․ իւր առընթեր հինաւուրց ընկուզենին, թերևս իր ժամանակակից և ներկայիս մխիթարն, յայս պահուս Արեւելեան կծող հովէ մը զիւր գլուխ երերցնելով կը ծռէր զայն յԱրևմտակողմն, ո՛ւր կեցած կը դիտէի զինքն անկշտօէրն, առ այս պահ մ'անլեզու ծառն Ուղեւորիս ուշն յինքն գրաւեց, վասն զի մի արտաքոյ կարգի բնազդմամբ ինձ այնպէս թուեցաւ թէ ան կամէր խօսիլ ընդ իս

զտարեայն և զանցեալ կենայն ամայացեալ մենաստանիս, եթէ բնութիւնն չ՚արգելէր զինքն, որմէ մեկնեցայ ընդունելով ամենատխուր մի տպաւորութիւն, որ կրնայ ընդհանուր համարուիլ վանուցս քովէն անցնող Հայ ուղեւորաց։

Յետոյ քանի մի երկայն դաշտեր և փոքր ձորակներ կտրելով կը հասնիմք Ընձակ անուանեալ Հայ գիւղն, որ ունի 23 տուն բնակիչ, եկեղեցի և քահանայ առանց դպրոցի։

Սոյն գիւղին մերձ 'ի Հարաւակողմն կը գտնուի «Կապուտկող» անուամբ ընդարձակ եւ բարձր լեռն, որ Արեւելէն յ'Արեւմուտ ձգուած է լայնանիստ յատակագծով մի, որոյ կատարն Վանայ ծովու վերայ կը նայի, որմէ հեռու չէ։ Սոյն լեռ նախնիքներէն «Ընձաքիարս» կոչուած է, որ ըստ ամենայն հաւանականութեան, յիշեալ գիւղի անունէն ծնած պէտք է լինի։ Լեռն ստուգիւ կապտագոյն է, որպէս իւր նոր անուն իսկ նշմարել կըտայ, որով և կ՚անուանուի։

Այս այն լեռն է, որոյ վերաբերութեամբ կը պատմուի թէ «Ս. Յակոբ Մծբնայ Հայրապետ յայդ լեռան կատար ելնելով՝ գլուխ բաց ամբողջ Ռշտունեաց գաւառն (որոյ անունն կը կարծուի ծնած լինիլ Ռաշտա կոչուած իշխանի մի անունէն և 'ի Նորումս Գաւաշ և Կարճկան մասնաւոր անուններով կը յիշուին) անիծեց, որով 3 տարի Աստուծոյ հրամանաւ այս կողմերու երկնից կամար պղնձացոյց, կապեց անձ-

րեւաց և ցօղերու կաթիլներ օդոց մէջ, որք այլ եւս չ'կրցան իջնալ այն երկրին վերայ. ո՛ւր կը տիրապետէր 'ի նոյն ժամանակի Մանաճիհր Ռշտունի իշխան (ճոչ), որ հակառակ ծերունի Հայրապետի դառն թախանձանաց, նորա անմեղ սարկաւագներ 'ի ծով ձգել տուած էր անգթօրէն »:

Վերոյիշեալ լեռան մի կողի վերայ բաւական ընդարձակ շինուած է վանքն յանուն Ս. Յակոբայ, որոյ մասունք և Նոյայ տապանի կտորն (հրեշտակէն ընդունած) այդ վանուց մէջ կը պահուէին երբեմն, ունենալով, որպէս կ'աւանդուի, բաւական թուով սրբասէր մենաստանցիք, որովք կանոնաւոր միաբանական ուխտը. իսկ այժմ բոլորովին անշքացեալ է, և վերջի պատերազմի գրեթէ ամբողջ տեւողութեանը ամայացաւ, զոր յետոյ Ամեն. Խրիմեան Հայրիկ Տէր Սարգսեան Ստեփան վարդապետի վանահայրութեան յանձնեց, որ երթայ զայն բարեկարգէ: Լերան միւս կողերուն վերայ կան տակաւին 3 այլ վանօրայք, որք թէպէտ և անբնակ չեն, սակայն խիստ անշուք վիճակի մէջ կը գտնուին, ոմանք ունենալով հանդերձ բաւական եկամուտ:

Այս տեղէն մեկնելով մեր ճանապարհին վերայ կ'իյնայ Գաւաշի գլխաւոր տեղին, այն է Նոր—գիւղ, որ իւր կեդրոնական դիրքով, որով և առեւտրական վիճակաւն Ռշտունեաց գաւառի գլխաւոր քաղաքն կրնայ համարուիլ: Գիւ-

դիս առ երի շինուած է մեծ իջեւան մի, որոյ մէջ բաւական թուով կրպակներ եւ սենեակներ կան շինուած ։ Աստ կը նստի գաւառիս Գայմագամն Վանայ կուսակալութեան ներքեւ եւ ունի հեռագրաթել ։

Նոր—գիւղ լաւ օդով եւ ջրով, ունի գեղեցիկ տեսարան մի եւ կը գտնուի Վանայ ծովու եզերքը տափարակ դաշտի մի վերայ ։ Գիւղիս ծառաստանաց ամենամեծ մասն կը կազմեն ընկուզենիք, որոց պտղոյ հունձքի ժամանակը մեծ առեւտուր կը լինի ։ Տեղւոյս բնակչաց թիւն է 65—75 տուն Հայ, ունին անճաշակ եկեղեցի մի, նմանօրինակ դպրոց, ո՛ւր կը բնակին անախորժ թռչուններ, եւ ոչ թէ կ'ուսանին գիւղի մանուկներ, որք, ցաւ է ըսել, օրն 'ի բուն փողոցներն եւ անասնոց գոմերու անկիւնները կը դեգերին 'ի ժամավաճառ ։

Գաւաշու սոյն գլխաւոր գիւղ ամենամեծ առաւելութիւն մի ունի, զոր այլ գիւղօրայք շատ դժուար կրնան ունենալ, այն է թէ ունի գեղեցիկ երիտասարդութիւն, առոյգ պատանեկութիւն եւ կայտառ մանկութիւն. գրեթէ չ'կայ մի տուն որ գոնէ 2—3 րաու զաւակ չունենայ, 'ի հասակի 10—15—20 ամաց, ամենքն 'ի բնէ զօրաւոր կազմութիւն եւ առողջ մտքի տէր են, սակայն քանի՜ ցաւ է տեսնել զայնս անմշակ եւ խոպան, հակառակ իրենց ներքին փափաքանաց, զորս ինձ ցոյց կը տային ջերմա-

պէս համակրելով և ժպտելով առ իս, երբ խօսք կ'ընէի իւրեանց հարց՝ դպրոցի, վարժապետի, աշակերտի, թղթոյ, գրչի և մելանի վերայ:

Գիւղիս բնակիչք առ հասարակ քրդական ձեւ ունին թէ՛ մեծ և թէ՛ փոքր, այսու ամենայնիւ մխիթարութիւն է ըսել, որ իրենց զգացումներ և յատկութիւններ իսկական յատկանիշներէն զուրկ չեն: Ասոնց նիւթական վիճակը բարւոքեալ չ'կրնար համարուիլ:

## ՄԵԿՆՈՒՄՆ

Նոր-գիւղէն ճամբայ ելնելով 1 1/2 ժամէն կը հասնիմք յԱղթամարայ դրսի տուն: Այս տեղ դրսի տուն ըսելով պէտք է հասկնալ կարգ մը բնակութիւնք, որոնք կը վերաբերին ծովու մէջ գտնուած Աղթամարայ կաթուղիկոսանիստ վանուց: Այս բնակութեանց մէջ կը գտնուին վանուց մշակներ, խոտաղներ, հովիւներ, անդխարածներ, չօշրաըներ (կաթ կթող) պահապաններ և վերջապէս ամեն անոնք, որ վանուց սեպհական արտաքին գործերու մէջ կը գտնուին, որոց վարձքեր վանքէն կը վճարուին:

Սոյն բնակութիւնք Վանայ ծովու եզերքէն 6—7 քարընկէց հեռու են, շրջապատեալ մի կողմէն ծառաստաններէ, ո՛ւր տեղւոյն կաթուղիկոս իւր յատուկ բնակարանն ունի շինել տուած, որ շատ նմանութիւն ունի Պօլսոյ Խուլէներուն տեղւոյս տեսարանն շատ լաւ է:

Այս ժամանած ատենս, Աղթամարայ կաթուղիկոս բացակայ էր և հովուական այցելութեամբ կը գտնուէր 'ի Շատախ ։

Յաջորդ գլխով կը մեկնիմ դէպ 'ի գաւառին Արեւելամասն՝ յՈստանայ հովիտ ։

## ԳԼ. ԻԲ.

### ՄԵԿՆՈՒՄՆ ԴԷՊ Ի Յ'ՈՍՏԱՆԱՑ ՀՈՎԻՏՆ. ՎԱՆՈՐԱՅՔՆ ԵՒ ՀՆՈՒԹԻՒՆՔՆ

Այսօր կը մեկնիմք դէպ 'ի հովիտն Ոստանայ, որ երբեմն Ռշտունեաց գաւառի Արեւելեան գլխաւոր մասը կը կազմէր ։

Աղթամարայ դրսի տնէն 12 ժամ հեռու կը գտնուի Նարեկ անուանեալ գիւղն, որ ծընընդավայրն է Ս. Գրիգոր Նարեկացւոյն. շինուած ցած ու ընդարձակ բլուրի մի վերայ գեղեցիկ դիրքով, օդով և ջրով ։

Բնակչաց հողային կալուածներն այնչափ ընդարձակ չեն և իրենք ՀԱՅԱԲՆԱԿԻ այլ գիւղացւոց նման երկրագործ են, միայն սա տարբերութեամբ՝ որ նոցա տեղիք քիչ լինելով իւրեանց աշխատութիւնն ամփոփ է, որով համեմատաբար աւելի արդիւնք կրնան յառաջ բերել ։ Գիւղիս բնակութեանց թիւն 80էն աւելի է, որոց կեդրոնը կը բարձրանայ Ս. Գրիգոր Նարեկացւոյ այն ՀՌՉԱԿԱՒՈՐ ՄԵՆԱՍՏԱՆՆ, ո՛ւր արդէն կրօնաւորած է երբեմն յիշեալ հո-

գեղից Վարդապետն, որոյ գերեզմանն կը տես-նուի վանուց տաճարի աջակողմեան մատրան մէջ, մարմարիոնէ կափարիչի ներքև։ Այս ծուն-կի վերայ ներս կը մտնան յաղօթս բազմաթիւ բարեպաշտ ուխտաւորք, որ ամեն տարի պա-կաս չեն թէ՛ վանէն և թէ՛ մօտակայ ու տա-րակայ այլ և այլ գիւղերէ։

Մենաստանիս չէնքն հաստատուն և նշա-նաւոր ճարտարապետի գործ է, ունի կոկիկ զանգակատուն մի եռքէն շինուած։

Այս վանք Վանայ Առաջնորդի իրաւասու-թեան կը պատկանի, որոյ վանահայր Յովսէփ վարդապետն ձմեռս վախճանելով. Ամենապա-տիւ Խրիմեան Հայրիկ յատկապէս Վանուց այցելութեան եկաւ և յանձնեց զայն Տէր Սար-գիսեան Գեր. Արիստակէս վարդապետի վանա-հայրութեան. այժմ, ՚ի շնորհս Նորին Սրբազ-նութեան և ջանիւք նորընտիր վանահօր, վա-նուցս մէջ ցորեկօթեայ դպրոց բացուած է, ուր կը դիմեն գիւղիս անուս տղայք։ Լսածնիս նա-յելով՝ ջանքեր կը լինին յիշեալ դպրոցն գիշե-րօթիկի վերածել, որով թերևս վանքն իւր կա-րողութեան չափով յաջողի փարատել այս կող-մերու տգիտութեան մռայլն, որ պատեր է ա-մեն կողմն և կ'սպառնայ տեղւոյս Հայեր հա-ցընելոյ ամենատխուր ապագայի մը. դպրոցի նկատմամբ առած տեղեկութիւնս, եթէ լի-նի ստոյգ, ես այժմէն իմ ուրախութիւնս կը

յայտնեմ հրապարակաւ և կը մնամ լի յուսով։

Սոյն մենաստանէն մի ժամուան տեւողութեամբ հեռու 'ի Հիւսիսակողմն բարձր և անհադին ժայռի մը վերայ փորուած է երանելի Նարեկացւոյն աղօթատեղին, ո՛ւր երթալոյ և իջնելոյ համար երկրին Ուղեւորն յերկինս՝ 'ի հոգւոց աշխարհ ուղեւորելոյ չափ քաջութիւն պարտի ունենալ, և այնուհետև 'ի վեր ելնէ անվնաս 'ի վայր իջնելոյ անյողդողդ՝ յուսով մի. 'ի մի բան յաջողեցայ բաղձանքս լրացնել տեսնելով զճգնարանն, որ բաւական ընդարձակ է մի քանի փոքրիկ մէջէ մէջ սենեակներէ բաղկացեալ, որ կը թուին լինիլ քարափոր։ Ցատակի քարերն տեղ տեղ մարդոյ ոտքի մեծութեամբ փոս ինկած են, որոց նկատմամբ կ՛աւանդեն թէ «Նարեկացի Հօր ոտից տեղերն են, ուր յաճախ կոխելով քարերն մաշած»։ Աղօթատեղին ելնողն մի նշան թող կը տայ քարանց ծակտիքներուն վերայ, և նորէն վար կ՛իջնայ. իսկ ինձ դալով՝ զնոյն ըրի զգալով որ հակառակ պարագայի մէջ կրնայի ընկերներուս կրօնական զգացմանց դպչիլ և վերջապէս մի կարմիր թել կապեցի ու վար իջայ, ո՛ւր կարծես թէ Նոր յաշխարհ եկայ։

Աղօթատեղիէն ճանապարհին վերայ դալով՝ շարունակեմք զմեր ուղին։ Ճանապարհէն փոքր ինչ դուրս ձորակի մէջ Փշավանք անուն հայ գիւղ մի կայ 60 տնէ բաղկացեալ. ունին

եկեղեցի, քահանայ, իսկ դպրոց ո՛չ։ Անկէ յետոյ բաւական տեղ երկիւղալից կապաններէ և տեղերէ անցնելով կը մտնամք յՈստանայ հովիտն, ո՛ւր շատ կ՚արժէ կանգ առնուլ։

Արտօս, որ Վասպուրականի բարձր լեռներու կարգը կը դասուի, Արեւելէն և Հարաւէն կը տարածուի և հովտին սահմանի մի մաս կը կազմէ իւր լայնանիստ դրիւքղի . . . . . . . ։

Ոստանայ հովտի երկայնութիւնն կը տարածի Հիւսիսէն 'ի Հարաւ 2½ ժամ, իսկ Արեւելէն յԱրեւմուտ գրեթէ 1 ժամ բաւական լեռներէ շրջապատեալ է, մէջ տեղը դաշտային։ Ունի ամենապատուական կլիմայ և ջուր. երկիրը ծառաստան է, և կը տայ ծիրան, տանձ և ընկոյզ, յորոց առաջին և վերջին շատ նշանաւոր են և մեծ քանակութեամբ կը խըրկուին այլ և այլ գիւղեր և գաւառներ։ Արմտիքն են ցորեան, հաճար (չալտար), գարի և տեսակ մի կորեակ, որ նշանաւոր է իր տեսակին մէջ։ Նոյնպէս յառաջ կը գայ ծխախոտ։

Երկրի բարեբերութիւնն, կրնամ ըսել, աննման է, սակայն վարելահողերն նուազ են քիչ դաշտային լինելուն պատճառաւ։ Տնական զանազան ամաններ և թոնիր շինելոյ համար կարմիր հողեր (կաղճին) կան ընտիր, յորոց շինուած ամանները թէ՛ առողջապահական են եւ թէ՛ Պօլսոյ ախճապակիներէն շատ աւելի դիմացկուն, միայն թէ ճաշակաւոր ձեւ չունին։

Ոստանայ ընդհանուր բնակչութիւն է 740—750 տուն, յորոց 60 տուն հազիւ Հայ են, մնացածը Քուրդ ։ Բնակչաց մեծագոյն մասն կը բնակի շրջապատող լերանց ստորոտները և կողերուն վերայ, դաշտային տեղերը շատ քիչ բնակութիւնք կան, որ անյարմար են ։

Աթանանց կոչուած Հայ գիւղն ունի 40 տուն բնակիչ, 452 տարուան հին եկեղեցի՝ մի քահանայով և ո՛չ դպրոցով։ Սոյն գիւղ երբեմն Հայոց Ձորոյ վերայ ալ կը հաշուեն, վասն զի սահմանակից է անոր և ժամանակակից թերևս ։

## ԳՂ. ԽԹ.

### ԻԼՈՒ ՎԱՆՔ ԿԱՄ 40 ԽՈՐԱՆ ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ

Նախորդ գլխոյ վերջը յիշուած Աթանանց գիւղէն բաւական հեռու, հովտին մէջ, կայ Իլի կոչուած Հայ գիւղ, ո՛ւր 25 տուն բնակիչ կը գտնուի, ունին գմբեթաւոր հին վանք մի «Իլու վանք կամ 40 խորան Աստուածածին» կոչուած, որ այժմեան իւրեանց եկեղեցին է ։ Սոյն մենաստանը հանդերձ իւր 40 խորանովն Արծրունի ԳԱԳԻԿ կառուցած է, ո՛ւր ժամանակին բազմաթիւ միաբանութիւն կը գտնուէր և ունէր խիստ բարդաւաճ և ճոխ վիճակ մի եւ ծառայած յիշեալ Պետին ամարանոցի տեղւոյ ։ Կ'աւանդուի նաեւ թէ «ո՛վ որ քառասունք տալոյ բաղձանք կ'ունենար՝ սատ դալով օրը մէկ

խորանի վրայ պատարագել կը տայր և այսպիսով զիւր ուխտ կատարելով կը վերադառնար»։ Այսօր ահա այդպիսի անցեալ ունեցող մեծահռչակ մենաստանն զրկուած է իւր 40 գեղեցկաշէն խորաններէն, յորոց մի քանիներու հազիւ կը նշմարուին հիմնաքարինքն, և վանուց գալով՝ ամայութենէ մեծ տարբերութիւն մը չունի. 'ի մի բան տեղւոյս նախնական բոլոր փառքերը մարած են, չէնք ու չինութիւնք քար ու քանդ եղած՝ թող տալով միայն իւրեանց սերնդոց, 'ի յիշատակ՝ այժմեան աւերակաց վերջին բեկորքն։

Ռստանայ հովտին գրեթէ կեդրոնը կը գըտնուի «Ջաղար (Ջարահան) Ս. Նշան» կոչուած վանք, որոյ վանահայրը քահանայ մի է, Աղթամարայ կաթուղիկոսի կողմանէ կարգեալ։ Վանքը նիւթապէս բաւական հարուստ է, իսկ բարոյապէս տակաւին նոր հաստատնալոյ վերայ։

Մեր պատմաբան Եղիշէ վարդապետի գերեզմանն աստ է։ Սոյն վանուց դէպ 'ի Հիւսիսակողմն, քիչ մը հեռու, կը գտնուի Վառենչատ անուամբ 40 տարուան աւերեալ Հայ գիւղ մի, որոյ կիսակործան եկեղեցին և գերեզմանաց խաչքարինք կենդանի ու պատրաստ կը կենան և տակաւին չեն թողած նման իւրեանց անհեռատես տէրերուն։ Սոյն գիւղի վերաբերութեամբ կ'աւանդուի թէ «տեննով չատ Հայեր ունեցեր է»։ Գիւղիս աւերակները կը գտնուին տափարակ դաշտի մի վերայ, ունենալով ամեն

կողմանէ դէտ և աղբիւր ։ Ճուլամերկցի Ռաշիտ պէկ՝ քուրդ գայմագամն, որ կը նստէր 'ի Գաւաշ, այժմ աստ գալով հիմնաքարերովն և տապանաքարերովն սենեակներ շինել կը տայ, որպէս զի Գաւաշէն գայմագամութեան տեղին աստ փոխադրէ ։ Ս. Նշանայ վանահայր քահանայն Կաթողիկոսին բողոք տուած է, որ արգելել տայ եկեղեցւոյ քարերը գործածելէ, ց'արդ գիտցուած չէ թէ ի՛նչ արդիւնք ունեցաւ բողոքը, միայն այս յայտնի է որ շինութեան գործն յառաջ կը տարուի փութով ։

Ոստանայ Արեւմտահիւսիս բարձր բլուրի մը վրայ Վանայ ծովու եզերքը կը գտնուի ՈՍՏԱՆ կոչուած հին համբաւաւոր քաղաքն կամ աւանն, որ երբեմն Ռշտունեաց գաւառի գլխաւոր տեղին էր և ապա Արծրունի ԳԱԳԻԿ սիրելով տեղւոյս բնութեան սքանչելի տեսարանն՝ իւր համար յատուկ տեղի կ'ընտրէ, ո՛ւր փառաւոր տաճար, մը ապարաններ, բազմաթիւ սենեակներ, ծառաստաններ և վերջապէս նշանաւոր տեղի մի կը պատրաստէ ։ Ահա այս քաղաքի սոյն հուչակէն իւր անունը տարածեցաւ Ռշտունեաց գաւառի այս հովտանման մասին վերայ, որով կ'անուանի ց'այսօր Ոստան ( որ կը թարգմանուի մեր լեզուով իշխանական (կամ . . . . . . . . ) ։

Այս չքեղագոյն վայրն, ո՛ւր մի քանի տուն քուրդեր կը բնակին այժմ, կ'անուանեն Հէչէշար, որ բոլորովին նսեմացած է իւր նախ-

կին վիճակէն , այսու ամենայնիւ իր հնութեան դարաւոր ապացոյցներէն զուրկ չէ ։

Արծրունւոյն տեղւոյս լեռնակի գագաթան վերայ, Վանայ ծովու և իր աւանին վերայ նայող բերդն դարաւոր ժամանակի դէմն մաքառելով՝ տակաւին կը պահպանէ իր պարապաց կէսէն աւելին ։ Բերդէս փոքր ինչ հեռու կը նշմարուին հիմունք եկեղեցւոյ մը , որ հաւանականաբար պատմիչ Թովմայ Արծրունւոյն գոված եկեղեցին լինի , որոյ համար կ'ըսէ թէ «Գագիկ ամենափառաւոր եկեղեցի մի շինեց Ոստանայ մէջ , որոյ պայծառութիւնն արեգական ծագմանը՝ անցորդաց աչկունք կը խոխտացնէր» ։

Այս տեղերը խաներու և հին շէնքերու հետքեր շատ կը տեսնուին ։ Կը պատմուի ականատեսներէն՝ որ ասկէ 20 տարի յառաջ աստ դեռ մի քանի Հայ տներ կային, իբրև թերի շարունակութիւն նախկին վիճակի , ( որոյ վերայ խօսեցայ վերև ) և արդէն ականատես իսկ եղայ՝ կէս քարաշէն և կէս աղիւսաշէն հին եկեղեցւոյ մը և կարգ մ'աւերակ բնակութեանց , յորոց ոմանք ողջ տանիքով և երդիքով կանգուն կը կենան ։ Աստ պահ մի կանգ առի և դիտեցի և ինձ այնպէս թուեցաւ թէ ժամանակին Աստուածային բարկութեան վրէժխնդիր շունչ մի անցած է սոյն Հայ բնակութեանց և եկեղեցւոյն վրայէն ։

Ոստան քաղաքի մէջ կան մի քանի նշանա-

ւոր Քրդաց մեռելատեղիք, Խան—Մահմուտի ժամանակէն մնացած, որ երբեմն բերդիս մէջ բնակած է հանելով տեղւոյս տեսարանին։ Կը տեսնուի աստ նաև քարէ գեղեցկաշէն գմբեթ մի՝ կառուցեալ երկրի վերայ, Արաբական յիշատակագիրներով, որք ետքէն գրուած լինիլ կը թուին, իսկ գմբեթն՝ մեծ մարդոյ մը հանգստարան է, իր տեսքէն որպէս յայտնի կերեւի։

Ոստանայ կեդրոնական Հարաւ կայ գիւղ մի, զոր Հայ ծերունիք «Պարոնաց այգի» կ'անուանեն, իսկ Քրդերն «Ումըրան» (ամիրայից այգի)։ Սորա վերաբերութեամբ կը պատմուի թէ «երբեմն բազմահայ եղած է», իսկ այժմ միայն 1 տուն Հայ և 10 տուն Քուրդ կը բնակին, որք գաղթելոց կալուածները գրաւած կ'ապրին երջանիկ։ Գիւղիս հին բնակչաց գերեզմանատան քարեր կը տեսնուին և եկեղեցւոյն միայն տեղին նշմարել կուտան։

Յիշեալ գիւղի անուանն համամուտ լինելով՝ հետևեալ աւանդութիւնը գտայ ծերոց մէջ թէ «Պարոնաց այգի կոչուած գիւղն երբեմն բընիկ իշխաններու և պարոններու զբօսավայրն եղած է, ունենալով անմահութեան ջուր, գեղեցիկ տեսարան և ընտիր այգիներ, որոց մէջ խնճոյգներ կազմելով կը պարպէին զկարմիր գինին 'ի կենդանութիւն . . .։» Սոյն աւանդութիւնն ինձ հաղորդեց 105 (հարիւր հինգ) տարուան մտաւոր կարողութեան տէր մի ծե-

րունի, Թէպէտեւ ինքն ճերմակ ալեւոր, այլ հաստկաւ բարձր և փառահեղ, որ իր դէմս կեցող 35 տարուան առոյգ և ուժեղ Թուան պէս երիտասարդանալոյ բուռն փափաք մը յայտնեց ինձ . . . . . . . . . . . . . . :

Մեկնեցայ իւր Նահապետական տնէն դէպ 'ի յՈստանայ այլ կողմեր, ո՛ւր պակաս չեն դարձեալ բազմաԹիւ յիշատակարանաց Նշմարելի մասեր :

Վերոյիշեալ Զարահան Ս. Նշանի մէջ պահուած մի ձեռագիր կը պատմէ Թէ «Գաղկայ օրօք 90,000-100,000 բնիկ ժողովուրդ եղած է Ոստանայ հովտին մէջ, ունենալով օրինաւոր հրապարակներ և վաճառանոցներ» : Սոյն տառերուն 'ի հաստատուԹիւն. հովտիս մի մասնաւոր վայր կ'անուանեն « Ախպէրներու տեղ », ո՛ գիտէ Թէ հին շուկայներէն մին եղած չէ այս :

Յիշեալ տեղերն, ի բաց առեալ Ոստանայ հովիտն, 3 գլխաւոր Թաղերու կը բաժնուին, որք են՝ Ա. Առուամէջ, Բ. Միջին Թաղ, Գ. Վերին Թաղ, որք սոյն անուններ առած են իւրեանց բնական վիճակէն, այս տեղւոյ քուրդ բնակիչք այժմ իրենց լեզուաւ կ'անուանեն զայնս, որք հայուԹենէ ամայացած են :

Յաջորդով տեղէս կը չուեմք 'ի Հիւսիսակողմն:

## ՄԵԿՆՈՒՄՆ

Ոստանէն մեկնիմք դէպ 'ի Հիւսիսային Արեւմտակողմն 'ի Հայոց Ձոր ('ի հնումն Երուան-

գունդիք), որ կը գտնուի Վան-Տոսպ գաւառի Հարաւակողմն անկէ, 4 ժամ հեռու և ունի Արեւելէն յԱրեւմուտ 6—7 ժամ երկայնաձիգ տարածութիւն ու Հարաւէն 'ի Հիւսիս 1 ժամ լայնութիւն միայն ։

## ԳԼ. Լ.

### ՀԱՅՈՑ ՁՈՐ ԿԱՄ ԵՐՈՒԱՆԴՈՒՆԻՔ

Սոյն գաւառն կրնայ ըսուիլ որ ՀԱՅԱՍՏԱ-ՆԱԿԻ մէջ առաջինն է իւր այն ամենահին յիշատակութեամբք, որք երկրի նախկին հիմնադրի օրէն սկսեալ դարերով բեռնաւորուած կուգան և մեզ կը հասնին անթուական քայլերով, որոց վերայ արդէն առանց խօսելոյ չեմ անցնիր, երբ կարգը կուգայ։

Երկիրն Հարաւէն և Հիւսիսէն աննշան լեռներէ պատեալ գալով՝ բնական դիրքէն առած լինիլ կը թուի իւր Ձոր անունն, իսկ առաջնոյն գալով՝ ծնած պէտք է լինի տեղւոյս հին բընակչաց հոծ բազմութեան իսկական անունէն, որով կոչուեցաւ «Հայոց Ձոր», որ կատարեալ ձորադաշտ մի է, և ուր կը բնակին այժմ սերունդք այդ բնակչաց ։

Գաւառիս սահմանն է Արեւելէն վերին Խօշապ (Մահմուտիյէ), Արեւմուտէն Վանայ ծով, Հարաւէն Ոշտունեաց և Անձեւացեաց գաւառներն և Հիւսիսէն Վան-Տոսպ ։

Հայոց Ձորն ունի բարեխառն կլիմայ , գեղեցիկ օդ , լաւ ջուր և արգաւանդ հող ։

Ժողովուրդն առ հասարակ երկրագործ է , և մասամբ լուիք անասնաբոյծ . յառաջ կը գան ոչխար , սեւատաւար (գոմէշ) , նոյնպէս և եզ , կով ու դուն ուրեք ձի ։

Երկրի գլխաւոր բերքերն են հետեւեալ արմտիք , ցորեան իւր տեսակներով (աշնցան , որ աշուն կը ցանուի , գարնցան , որ գարուն կը ցանուի և աւետիք , որ ամենակարեւոր հաց կը լինի) , հաճար (չալտար) , գարի , կորեակ , կըտաւատ , ոսպ , կլոււլ բակլայ , կանճրակ , ոլխտոր , սոխ և շողգամ , վուշ , յորոց վերջի մի քանիքն մասնաւոր գիւղերու յատուկ են , զոր կը նշանակեմ յիւրեանց կարգին ։ Այլ եւս գաւառիս մէջ ընելիք ուղեւորութեանս չարքին աւելորդ կը համարիմ ընդհանուր եղող արմըտեաց անուանքը նշանակելով կրկնիլ ։

Երկիրն նուազ ծառաստան ունի և մանաւանդ մրգեղինաց վերաբերեալն , որ խիստ աննշան է ։ Ամառուան տաք ատենը շատ գիւղեր բերան մը թացելոյ չափ պտուղ չունին , այս մասին իրենց անհոգութիւնն արդարացնելոյ կողմն սա է թէ «մենք կը վաստկիմք , սակայն այլք կը մտնան 'ի մեր վաստակ» ։

Այս նկատմամբ գիւղացիք ստիպեալ են ցորեանի և մրգեղէնի փոխանակութեամբ գոհ լինիլ . այսինքն 2 ցորեան տալ և 1 միրգ առ-

նուլ ու գնալ արևուն տակ երկրագործելոյ նախնական ամենապարզ դրութեամբ, որոց համար նոր բան, նոր փորձ և նոր ուղղութիւն ոչինչ է, մինչև որ արտաքին օրինակ չըլլայ։

Հայոց Ձորոյ գլխաւոր ջրերն են Ա. Խօշապայ գետ։ Բ. Շամիրամայ գետ (՚ի բաց առեալ մասնաւոր վտակներ և աղբիւրներ, որոց թիւ բաւական մեծ է)։

Ա. Խօշապայ գետ կուգայ գաւառիս Արևւելքէն և իրեն երկայնութեան միջնագծի ուղղութեամբ կ՚երթայ յԱրեւմուտ ու կը թափի Վանայ ծովը։ Սոյն գետ զՀայոց Ձոր կը բաժնէ Հարաւային և Հիւսիսային երկու երկայն մասերու։ Գետն յիրաւի առատօրէն կը գայ, սակայն իւր դիրքովն ժլատ է երկրին պէտք եղածին պէս օգուտ մատակարարելոյ։ Գաւառիս համայն գիւղերէն հազիւ 6—7 գիւղերու մասնաւոր արտօրէից ջուր կը տայ։ Ինձ համար ամենէն ցաւալի կէտն այն է որ ժողովուրդը տակաւին հարուստ բնութեան դէմ մրցելով՝ անոր խուլոտ կողմերէն սնանիլ չ՚գիտեր և այս մասին միշտ պիտի կրկնեմ երբ առիթ ներկայանայ, «թէ կարգադրիչ և լուսաւորիչ կը պակսին» կամ «գործ կայ գործող չ՚կայ»։

Բ. Ասորեստանի մեծանուն թագուհւոյն անուամբ կոչուած Շամիրամն, որոյ վերայ երկարօրէն խօսելոյ մտադիր եմ, երբ կը հանդիպիմ իւր ական, որ ուղեւորութենէս դուրս

չէ և կը բղխի գաւառիս կեդրոնական Հիւսի-սային կողման «Սարպուլաք» կոչուած լեռան ստորոտէն ։ Հայոց Ձորոյ մէջ յիշատակութեան արժանի բազում տեղուանք կան , ոմանք չէն և ոմանք անչէն , զորս ընթերցողք ուղեւորութեանս կարգին մէջ մի առ մի պիտի տեսնեն ։

Հայոց Ձորոյ վերայ այս ընդհանուր տեղեկութիւնք տալէս յետոյ յաջորդ գլխով շարունակեմք ուղինիս տեղագրել մանրամասնօրէն և ճշտօրէն իւր բոլոր գիւղօրայքն , որք դըրեթէ ամբողջապէս ՀԱՅ են և թուով 32—34 գիւղ նստկան ։

## ՄԵԿՆՈՒՄՆ

Գաւառիս Հարաւային Արևմտեան կողմէն , այն է Վանայ ծովու եզերքէն սկսեալ ։

ՍՈՒՐԲ ՎԱՐԴԱՆ . — Սոյն գիւղ կը գտնուի Վանայ ծովու եզերքը բարձր զառիվայրի մը վերայ . ունի ամենապատուական օդ , ջուր և տեսարան , ինչպէս նաև սիրուն ծառաստան , յորս սօսիներ աւելի կը գտնուին ։ Գիւղս Առաքելոց թուով 12 տուն բնակիչ ունի ողորմելի և անճարակ , որք մնացորդ կրնան համարուիլ 50 տան , որոց անուանք կան և իրենք չ՛ըկան ։ Տեղւոյս Հայք ունին Ս. Վարդան անուամբ 13 տարուան նորոգուած եկեղեցի մը ։

Ասկէ 120 տարի յառաջ Ս. Վարդան անուն մի գեղեցիկ վանք եղած է ծովու անմի-

ջական եզերքը , որոց վերայ գտնուած են եղեր նաև գիւղիս տներն ։ Երբ ծովն ջրոյ յորդմամբ յիշեալ վանքը կը կոխէ և փլցնելով աներևոյթ կ'ընէ , գիւղացիք երկիւղէն տներնին վարէն կը բարձրացնեն յայժմեան տեղին , ո՛ւր յանուն ջրասոյզ եղած վանուց կը շինեն մի եկեղեցի , որոյ անուամբ կը կոչուի նաև գիւղս ։ Ահա այդ եկեղեցին է ներկայիս նորոգուածն , որ շրջապատը կան մի քանի ցուցման քարեր ։

Ս. Վարդանայ գիւղացիք շատ յուսահատ դտայ այնպէս որ չէի ուզեր փոքրիկ հանդիստ մի առնել իրենց ծառոց հովանեաց ներքև , հակառակ յիս խնթիւ նայող Արեգական տաքութեան . ինչ որ է հանդիստ մի առնելոյ հարկադրուած էի . այս պահուս մի ծերունի ականածելով ինձ մօտեցաւ իբրև պաշտօնական մեծ մարդոյ՝ դեռ չ'լսած իմ լեզուն , որ Հայ էի յիւր արիւնէն . նա շատ ցաւեր յայտնեց ուզեւորիս՝ որ նորա սիրտ միայն հասկցաւ և ոչ լեզուն , իսկ իւր կարապետն ո՛չ զառաջին և ո՛չ զվերջին ։ Ինձ այնպէս թուեցաւ հասկցածիս նայելով՝ թէ մարդուն սրտի գաղտնիքն այս էր . «մեր սրտերն ճճռնուած (փակչած) են մեր պապերու խաչ քարերուն և այս դրախտին ծառաստանին որ թէպէտ և փոքրիկ , այլ սիրուն և զուարճալի ։»

. . . . . . . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . . . . . .

Տեղէս ելնելու ատենը միխիթարեցի զայս ծերունին, որ գժբաղդաբար ո՛չ լեզուս հասկցաւ և ո՛չ սիրտս, սակայն իւր դէմքն զուարթ՝ ես մեկնեցայ 'ի Խորգոմ։

ԽՈՐԳՈՄ ԿԱՄ ՀԻՒՐԳՈՄ. — Գիւղս Նախորդի Հարաւակողմն է գրեթէ 1 ժամուան հեռաւորութեամբ, ունի լաւ տեսարան և մասնաւոր ծառեր միգեղինաց։ Կը բաղկանայ 35 տունէ, որք ունին մի եկեղեցի յանուն Աստուածածնայ կառուցեալ նոր և պարզ ճաշակաւ. ունին մի քահանայ և ո՛չ դպրոց, հակառակ իւրեանց բաւական բարւոք նիւթական վիճակին. իրենք ուսումնասէր և կրօնասէր են, ուրեմն պէտք է ըսել աստ «գործ կայ գործող չ՛կայ», զոր իբր գանգատ կարտասանեմ։

Գիւղիս ջրերն հռչակ ունի իւր հացի ուժովն և համովը. կոյնկան շատ կը ցանեն և կը պահեն սովորական անասնոց հետ նաև լաւ ձիեր. աշխատութեան բաւական վարժ են, այսու ամենայնիւ ցաւ է ըսել, որ 15էն աւելի պանդուխտ ունին 'ի Պօլիս ո՛ւր Թերեւս քաղցած կապրին, այն ինչ իրենց անելն զայլս լի ու լի կը կերակրեն։

Գիւղիս անուան վերաբերութեամբ կը պատմեն թէ «ժամանակին Արտամեւտցւոց (որոց վերայ 'ի կարգին կը խօսուի) հետ խնամութեան մ'առթիւ կը գժտուին և նոյա դէմ վրէժ կը կալեն, մի քանի տարիէն յետոյ 40 հոգի Ար-

տամետցի տեղս կը հրաւիրեն 'ի պատիւ, սոքա կարծելով թէ Հիւրգոմցիք մոռցած են իրենց վրիժառութիւնն, սիրով կը գան և խնճոյքի վերայ գիրենք այնչափ կ'արբեցնեն օղիով, որ կը խեղդուին և կը տանին առանձին տեղ մի կը թաղեն»: Ահա այս աւանդութեան պատճառաւ կոչուեցաւ «Հիւրգոմ» որ գաւառական բացատրութեամբ կը նշանակէ հիւրերու հաւաքուած տեղի: Յիշեալ 40 մարդոց գերեզմանատեղին ց'արդ ցոյց կը տրուի տեղացիներէն:

Տեղւոյս բնակիչներէն ականատեսք կը պատմեն թէ «ասկէ 45 տարի յառաջ Հիւրգոմցիք խնամութիւն չէին ըներ Արտամետցւոց հետ նոյն աւանդութեան պատճառաւ, որ մեծ պատուար մի դարձած է երբ սոյն երկու համարիւն գիւղերու միջեւ» իսկ այժմ հաշտեալ են:

Գիւղիս Հարաւային Արևմտակողմն 5 քարընկէց հեռու բարձր բլրակի մի վերայ յանուն Վարդ Պատրիկին շինուած մատուռ մի կայ, որոյ յատակին աւանդութեամբ կը կարծուի լինել «զարդուք զարդարեալ և հողով ծածկեալ մի եկեղեցի, ո՛ւր Վարդ Պատրիկ թաղուած է»:

Ահա՛ ժողովրդեան անհետաքրքրութեան մի կենդանի ապացոյց, որ դարերէ 'ի վեր լսած են և կը լսեն այդ աւանդութիւնը, սակայն մի անգամ փորձ ընելոյ անհոգ կը գտնուին:

Սոյն մատուռի դուռ գոց է, տարին մի անգամ Աշխարհամատրան կիւրակէ օրը բանա-

լով պատարագ կը մատուցանեն , ուր այլ և այլ գիւղերէ ուխտաւորաց բազմութիւնք կը դիմեն և այսպէս կը տօնեն զյիշատակն Վարդ Պատրիկի :

Շատ հետաքրքիր է տեսնել տեղս եկող գիւղացի ուխտաւորաց ուրախութեան եղանակն , ինչպէս նաև ընտանեկան ձեւերնին և հագուստնին , յորոց ոմանք իւրեանց մասնաւոր նշանակութիւն ունին :

Նոյնպէս կ'աւանդուի թէ « Վարդ Պատրիկ երբեմն Օսմանցւոց հետ միանալով զՑոյնս ՀԱՑԱԲՆԱԿԷՆ վռնտած են և Ցոյներն վրէժ ունեցեր են գերեզմանին Վարդ Պատրիկի , որոյ մարմինն իսկ 'ի ծով ձգելոյ հետամուտ եղած են եղեր , սակայն բարեբաղդաբար չեն յաջողած իւրեանց ջանքերն :

## ԳԼ. ԼԱ.

### ՀԱՅՈՑ ԶՈՐՈՑ ՀԻՒՍԻՍԱԿՈՂՄՆ

Խորդոմէն կամ Հիւրգոմէն մեկնիմք դէպ 'ի յԱրեւելակողմն 'ի Քէօշկ : Այսուհետև առանց կողմերու անուն տալոյ՝ ամենափոքր տարբերութեամբ , մեր ուղին կ'երթայ ընդ միշտ յԱրեւելակողմն մինչև գաւառիս Հիւսիսային այս երկայն մասի Արեւելածայրն, և հետեւաբար ուղղութեան գծերնիս ամեն ատեն յիշելն աւելորդ է , 'ի բաց առեալ այն բացառիկ տեղե-

րըն, ո՛ւր զգալի է մեր ճանապարհի չեղումն յիշեալ ուղղութենէն ։

ՔէՕՇՎ. — գիւղս նախորդէն կը գտնուի 20 վայրկենի չափ հեռու. ունի 22 տուն, մի եկեղեցի Ս. Գէորգ անուամբ 1 քահանայով, և մի ծաղկոց, ո՛ւր կ'աշակերտին ձմեռը 25—30 ուսանող, իսկ ամառն 12—14։ Ժողովուրդն առ հասարակ ուսումնասէր և շատ կրօնասէր է, նիւթական վիճակնին բարւոք ։

Գիւղս ունի բաւական լաւ տեսարան, սակայն ո՛չ մաքուր օդ պէտք եղածին պէս, վասն զի Արևմտեան կողմանէ որչափ որ մաքուր մի օդ կը փչէ, սոր հակառակն ևս Արևելակողմէն գիւղիս մերձ գտնուող եղեգնոյն կ'ապականէ զմաքուր օդն ։ Սոյն եղեգնոյն, որ բաւական ընդարձակ է, կը պատկանի գիւղին ամբողջութեան. տարին մէկ անգամ ձմեռ ատեն երբ ջրերն կը սառին և կարելի կը լինի մէջ մտնել, յայնժամ կը քաղեն և խուրձ խուրձ կապելով մէջերնին կը բաժնեն՝ համաձայն իւրեանց ստացուածնին և արքունական տրոց ։ Սոյն եղեգի հաստութիւնն բթամատի չափ է, իսկ բարձրութիւնն երկու մարդոյ հասակէն աւելի ։ Գիւղացիք ղայնս կը ծախեն՝ որ կը գործածուին տանեաց առաստաղներն ծածկելոյ համար. ոմանք ևս եղէգներն կը դնեն 'ի ջուր և կակղելէն յետոյ մասերու կը բաժնեն, ու կը գործեն փսիաթ (հասըր), որ դարձեալ մի և նոյն նպատակի կը ծառայէ ։

Աստ պէտք է գիտել՝ որ ադխտութիւնն իւր դեր կը խաղայ դարձեալ: Ես անձամբ ականատես եղած եմ երբեմն այլ ուղեւորութեանցս մէջ Գերմանացւոց բնակութեանց տանիքներուն, զորս բարակ փայտերով նախ կը տախտկեն երկանխատ անկեան ձեւով, որոյ մակարդակի երկու անկեան բացութիւնքն տան առջեւի և ետեւի ճակատներ կը կազմեն. յետոյ նման սոյն ձեւոյ, 4 մատի թանձրութեամբ, եղեգով կը ծածկեն, եղեգներու բարակ ծայրն վեր պահելով, որոց վերայ հեղեղի նման անձրեւներ ցօղեն, կաթիլ մի ներս չեն վազեր, և այդ եղեգնածածքն կը դիմանայ 15—20 տարի ու շատ տնտեսօրէն է: Մինչդեռ աստ բնութիւնն պարգեւած է անոնց ունեցած տարերքներէն լաւագոյնն. սակայն, ցաւ է տեսնել, որ ժողովուրդ չ'գիտեր թէ ի՛նչ բանի գործածէ զայն աւելի օգտակար է. իրենք փոխան եղեգի՝ կէս մեթրէն աւելի թանձր կաւով կը ծեփեն տանիքնին՝ տակէն դնելով ահագին գերաններ, որ կարող լինին այդչափ ծանրութեան դիմանալ, անոնց վերայ քովէ քով թեւի մը հաստութեամբ, փայտեր, որոց վերայ և այդ եղեգներ, այսու ամենայնիւ ձմեռը դարձեալ ջրերն շատ անգամ վար կը վազեն և տան ամեն կողմն դըժբաղդութիւն կը տիրէ:

Յիշեալ եղեգնոցի մէջ ամառ եղանակին երբեմն թռչուններ կ'որսացուին, ըստ որում

եղեգնոցի լճակին վրայ տեղ տեղ ահագին մեծութեամբ միակտուր մարգեր նաւու պէս կը ծփան, որոց վերայ բուսած են եղեգներն և երբ պատահի որ եղերքը գան գիւղիս, ճարտար երիտասարդք վրանին ցատկելով պտոյտ կ'ընեն, երբեմն 'ի նաւակի և կ'որսան այսպիսով զթռչունս։

ԻՇԽԱՆԻԳՈՄ. — Սոյն գիւղ նախորդէն 1/4 ժամ հեռու է, ունի 40 տուն, մի եկեղեցի 25 տարուան կառուցեալ և մի քահանայ, առանց դպրոցի։ Գիւղս ունի մի այլ եկեղեցի կիսակործան, որոյ նախկին ծխերն 'ի Ռուսաստան գաղթած են. տեղէս 25 հոգի պանդուխտ կայ 'ի Կ. Պօլիս։ Գիւղիս Հարաւակողմն փոքր ինչ հեռու կայ «քալայ» Աստուածածին (քաւիչ Աստուածածին) անուամբ մի հին վանուց տեղի, որոյ հիմունք տակաւին կը նշմարուին։ Սորա բոլորտիք են իւր խաչաքարինք սփռուած։

Գիւղիս Արեւմտակողմն մի քանի քարընկէց հեռու կայ «ԱՌԱՔԵԼՈՑ ԴԱՐ» անուանեալ մի բլուր, որոյ համար կ'աւանդուի թէ «Առաքելաչէն վանք մի եղած է ժամանակին». և յիւր չըրջապատ մասնաւոր խաչաքարինք կան։ Դարձեալ գիւղիս քովերը Ս. Սարգիս և Ս. Յարութիւն անուամբ աւերակաց տեղիք կը նշմարուին լի ոըխբութեամբ։ Տեղւոյս բնակիչք նախնապէս բաղմաթիւ եղած են ունենալով մեծամեծ այգիներ, որովք ժամանակին զբաղած են։

Գիւղիս անուան նկատմամբ կը պատմուի

թէ «՚ի Փէօշկ նստող բնիկ Իշխանաց ոչխարնե-
րուն գումն եղած լինելուն համար նոյն անուամբ
կոչուած է»։

Իշխանիգոմի տապանաքարաց մէջ անըն-
թեռնելի թուականաւ հետեւեալ յիշատակու-
թեան արժանի ողբ կը տեսնուի։

«Է ՈՂԲ»

«Աստ սպանաւ մեծն ՚ի նախարարս, որոյ անու-
նըն Ատում»։ Հաւանական է՝ որ Եղիշէ պատ-
մաբանի յիշած Գնդունեաց տոհմի Ատումն ե-
ղած լինի։ Տեղւոյս մի քանի գերեզմանատանց
նայելով՝ շատ դիւրին է երեւակայել իւր նախ-
կին բարգաւաճ վիճակն։ Յիշեալ երեք գիւղե-
րըն ընդարձակ մարգագետիններ ունին, սովո-
րական կենդանեաց հետ ձիեր ալ կը պահեն.
նիւթական կողմերնին բաւական մխիթարական
կընայ համարուիլ, և անկախ ինչ ինչ արկածնե-
րէ, որք երբեմն յայլ տեղիս կը պատահին։

ՄԱՇԿԱԿՏԱԿ. — Սոյն գիւղ նախորդէն 1/2
ժամ հեռու, ունի 50 տուն բնակիչ, մի եկե-
ղեցի Աստուածածին անուամբ 13 տարուան նո-
րոգուած, որոյ տաճար շատ հին կ՚երեւի, ափ-
սո՜ս, որ անթուական է կամ եղած և դարերու
ձեռամբ եղծուած, դպրոց չունին։ Աստ կան
10 տուն Քուրդեր։ Գիւղիս մէջ Ս. Դանիէլ ա-
նուամբ մի ՏԱՂԱՒԱՐԻԿ կայ, որոյ մէջ շաբաթ
իրիկուններըը ճրագ կը վառեն և խունկ կը ծը-

խեն «՚ի յիշատակ անցելոց»։ Արեւմտակողմն քիչ մի հեռու ցոյց կը տրուի Ս. Ցարութիւն անուամբ եկեղեցւոյ մի հիմունք, որոց շրջապատը լի է տապանաքարերով։ Սոյն հնութեանց համար կը պատմուի թէ «անոնց չէն եղած ատեն գիւղս 300 տուն բնակիչ ունեցած է», որոյ անուան ծագումն չ'կրցայ տեղէ մի նշմարել թէեւ անհետամուտ չ'եղայ։

Գիւղիս տեսարան բաւական լաւ է և ունի մի քանի ծառ մրգեղինաց և մէկ խաղողի այգի, թերեւս բաժակի համար տնկուած։

ԱՆԳՂ. — Նախորդէն դրեթէ 1 ժամ հեռու, ունի 70 տուն բնակիչ մի եկեղեցի Ս. Գէորգ անուն 30 տարուան շինուած, իսկ տաճարըն հին է, թուականն անծանօթ՝ բերանացի «առաքելաշէն» դպրոց չունին և ունենալու պէտքըն շատ զգալի է։ Գիւղիս տեսարանն լաւ է և ունի ծառաստան։ Պանդխտողաց թիւն 45ի կը հաշուի։ Անգղայ մէջ երկու բլրակներ կան, մին Ս. Սարգիս և միւսն Ս. Ծիրանաւոր, որոց եկեղեցեաց տեղուանքն են տակաւին նշմարելի։ Գիւղիս մէջ սովորական բերքէն զատ յառաջ կը բերեն մեծ քանակութեամբ շողգամ, յորոց մին մէկ օխայի կշիռ կ'ունենայ երբեմն, որ նշանաւոր է իւր քաղցրութեամբ, որով շատ անգամ խնձորի նման կուտեն մեծ ախորժակաւ։

## ԳԼ. ԼԲ.

### ԱՆԳՂԱՅ ՎԱՆՔ ԵՒ ՀՆՈՒԹԻՒՆՔՆ

Անգղէն 10 վայրկեան հեռու կը գտնուի «Անգղայ Աստուածածին» անուն մի վանք, որոյ վանահայրն է մի քահանայ՝ որ իւր եղբօր հետ կը վարէ, կը ցանէ վանուցս արտօրայք, տարեկան տուրք մը տալով Աղթամարայ կաթուղիկոսին, որուն թեմականն է։

Սոյն վանք կը բաղկանայ 3 խորանէ, մէջինն Ս. ՍՏԵՓԱՆՆՈՍ, աջակողմեանն Ս. ԳԷՈՐԳ և ձախակողմեանն Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ անուամբք։ Ս. Գէորգայ խորանին առ երի կայ մի այլ խորան յանուն Ս. Յովհաննու Կարապետի, ո՛ւր է «խուղածորան» պատուհանն և Թադէոս առաքելոյն օծած խաչքարն, որոյ վերայ կը խօսուի հետևեալ տողերովս, և որոյ համար շատ գրեանք թղթատեցի, միայն ձեռքս հազիւ կրցայ անցունել 60 տարուան ձեռագիր մի կոնդակ Յովհաննէս Ալթիպարմաղեանէ գրուած և ներկայ վանահայր քահանային երբ նուիրակութեան երթայ զայն հետ կ՚առնու։

Յիշեալ կոնդակին նախաբանին մէջ երկարօրէն օրհնութիւնք կարդալէ յետոյ սոյն վանուց հնութեան վերաբերմամբ ծանօթութիւնք կը տայ, որոյ էական մասերու բովանդակութիւնը կը նշանակեմ աստ աշխարհիկ լեզուի վերածած։

«Երբ աշխարհներ առաքելոց մէջ բաժնուեցան, Թադէոս սրբազան առաքելոյն վիճակեցան Հայոց — Ձոր, Ոստան, Գաւաշ և այլքն, ինչպէս Բարդուղիմէոս սրբազան առաքելոյն եւս ինկաւ Աղբակու երկիրներն։

«Թադէոս առաքեալն իրեն հետ կ'առնու զԱստուածամուխ գեղարդն Քրիստոսի, զպատուական քօղն Տիրամայր Ս. Աստուածածնայ և զչիչ իւղոյն, ասոնցմով քարոզելով եկաւ Հասավան քաղաքի մօտ Հարաւակողմն Խօշապայ գետոյն եզերքը, որ այժմ Անգղայ գետ կը կոչուի։ Առաքեալն տեղւոյս վայելուչ դիրքը տեսաւ, ո՛ւր բարձր և ահագին կուռք պատկեր մը կանգնած՝ բազմաթիւ մարդիկ երկրպագութիւն կ'ընէին. Ս. Թադէոս Առաքեալը զայս տեսնելով շատ ցաւ զգաց, որ մարդիկ ճշմարիտ Աստուած թողած դիւական պատկերի երկրպագութիւն կ'ընէին, և կ'աւանդեն թէ մի գիշեր մինչդեռ Ս. Առաքեալը կ'աղօթէր, յանկարծ Տիրամայր Ս. Աստուածածին անպատմելի փառօք և լուսով իրեն երեւեցաւ մարմնացեալ Քրիստոս իւր գիրկը, և ըսաւ. «Ո՛վ Թադէոս, իմ որդւոյ սիրելին, շուտով խորտակէ՛ այդ դիւական կուռք պատկերները և անոնց տեղ իմ անուան տաճար մի շինէ և ամփոփէ զչիչ իւղոյն, 'ի նշան բժշկութեան, ամենայն ախտաժէտաց։» Առաւօտ Ս. Առաքեալն եկաւ խորտակեց կուռքերն և ըզմարդիկ դարձուց յԱստուածպաշտութիւն. և

սկսաւ հիմնարկել և շինել զտաճարն, սակայն առաքեալն ցերեկին կը շինէր, իսկ դեւերն գիշերանց կը քանդէին զայն և քարինք տանելով կը ձգէին «Մաչան» ըսուած գետն (սոյն Մաչան կոչուած գետն Անգղայ գետոյ շարունակութեան մի մասն է տեղէ 10 վայրկեան հեռու, ո՛ւր վիթխարի քար մի ևս կայ, որոյ վըրայէն գետը վար թափելով կուգայ և Մաչան անունը ց'արդ կը պահուի ժողովրդեան մէջ աւանդաբար)։ Այս բանին վրայ Առաքեալն ըսկըսաւ տրտմիլ, Տիրամայր իրեն կրկին երևցաւ և ըսաւ թէ «խաչ մի օծէ՛ և իւղոյն շիշը վրան դիր և դու պիտի տեսնես Աստուծոյ սքանչելիքն։»

Առաքեալն առաւօտ ելնելով քարէ խաչ մի շինեց և իւր ձեռօք օծելով իւղոյն շիշը վրան դրաւ և տաճարի պարսպի հիմնաքար ըրաւ (որ այժմ ցոյց կը տրուի)։ Այսուհետև շինուածն անխախտ մնաց և առաւօտ տեսնուեցաւ, որ քարաշէն պատուհանէն իւղն աղբիւրի պէս դուրս կուգար, իսկ քարերը քակող դեւերը, մարմնաւոր տեսքով սեւ երամ ագռաւուց նման, կապուած ինկած էին և յայն պահուն «անգղ» կոչուած թռչնոց երամք եկան և Առաքեալն հրամայեց անոնց, որ կտցով զարնելով բռնեն այդ ագռաւներն և ձգեն 'ի Մաչան, ո՛ւր անոնք տաճարի հիմնաքարինքն կը ձգէին երբեմն և ահա այս պատճառաւ գիւղն կոչ-

ուեցաւ «Անգղ» և վանքն՝ «Անգղայ վանուց Աստուածածին», որ այն օրէն ցʼայսօր հաստատուն կայ և չէն ։ Հրաշալի սուրբ լուղն ալ ցայսօր յայտնապէս ակներև կը բղխի չոր քարի մէջէն տաճարի պատուհանի գոգն ʼի բժշկութիւն այլ և այլ կերպ ախտից և ցաւոց, որոց վերայ քսեն ։»

Դարձեալ կը պատմեն աւանդութեամբ և հին նամակներով թէ «առաջ սոյն խուղ մի կարաս կը լեցնէր տարին, վանահայրքն ագահութիւն ընելով կը ծախէին, այս պատճառաւ կըտրեցաւ և այնչափ միայն կուգայ, որ մի կանդեղի հազիւ կը բաւէ» ։

Ցիշեալ կոնդակն մի քանի օրհնութեամբ կը վերջացնէ ըսելով «գրեցաւ ʼի ՌՄԿԳ, յունվ. ԺԳ, ձեռօք մեղաւոր գրչիս Յովհաննէսի Ալթիպարմաղեան» ։

Անգղ այն գիւղն է, զոր Եղիշէ պատմաբանն «մեծ գիւղաքաղաք» կʼանուանէ, երբ կը նկարագրէ Վարդանանց դէպքերն Պարսից հետ՝ յայս կողմերն ։ Սոյն գիւղ «նախապէս 1,200 տուն» եղած կʼաւանդուի, և Եղիշէն կարդացողըն չʼտարակուսիր այս թուոյն վերայ ։ Աստաճարի եւև մի քանի խաչաքարեր կան, յորոց 2—3ին համար կʼըսուի թէ «Վարդանանց ժամանակէն մնացած են», և թուականքն անընթեռնլի յաջորդով մեկնիմք ոեղէս ։

# ԳԼ. ԼԳ.

## ԱՆԳՂԷՆ ՄԵԿՆՈՒՄՆ

*Անգղ. գիւղէն ելնեմք և ուղղինիս յառաջ վարելով 1 ժամէն կը հասնիմք հետևեալ գիւղը։*

*ՔԱՐԱՎԱՆՑ. — գիւղս ունի 10 տուն Քուրդ և 2 տուն Հայ։ Երկրնակ Հայերն ունին կիսակործան եկեղեցի մը Ս. Սարգիս անուամբ և բազմաթիւ տապանաքարինք, յորս 350 տարեկան քար կը գտնուի։*

*Աստ կայ «Ջերմուկ» անուն մի անուշ և պաղ ջուր, որոյ վերայ տնկուած կը տեսնուի մի խաչաքար։ Սոյն աղբիւրն ուխտատեղի է՝ դող, ջերմ և եռքոր (բորոտի մի տեսակ է) ունեցողներուն, որք սոյն ջրով կը լողանան և կ'ըսուի թէ «կը բժշկուին»։*

*Աղային հանքեր կը նշմարուին յայս կողմեր։ Գիւղս աւերեալ բերդ մի ունի, որոյ միայն հիմունք մնացած են և որոյ քովեր շուրջ մը սենեակներու տեղիք կան, որք կը թուին լինել կրպակներու յատակներ հին ժամանակուան։*

*Տեղւոյս հնութեանց թուականք կը պակսին, միայն թէ բնակող ժողովրդեան պահպանած աւանդութեան նայելով՝ «Քարավանց մեծ գիւղաքաղաք եղած է երբեմն»։ Աստ ուռենւոյ մը հովանեաց ներքև նստած էր մի տխուր պատանի, որոյ աչերն ցոյց կը տային թէ պահ*

մի յառաջ արտասուաց կաթիլներ ցօղած էին . զայս տեսնելով , դեռ չ'գիտցած թէ ի՛նչ ազգէ է , անմիջապէս 'ի տուն վազեց թաշկինակով աչքերը սրբելով . առ այս զգացի թէ նա Հայ էր , թէև ձեւոյն քրդական , որ շատ չ'անցած առ մեզ դարձաւ և հրաւիրեց զմեզ յիւր պալատտուն , ուր մտանք հաճոյքով և ելանք ցաւօք ու դառնութեամբ , վասն զի տան երիցագոյն զաւակն երեք օր առաջ հիւանդացած կայր յանկողնի ուժաթափ , որոյ որդին էր պատանին որ զմեզ ճանապարհի վրայ առաջնորդելով ինքըն վերադարձաւ և մեք մեկնեցանք 'ի Կեմ :

ԿԵՄ . — Տեղւոյս բնակութեանց թիւն է 90 , ունին մի եկեղեցի յանուն Թադէոս առաքելոյն կառուցեալ , 2 քահանայ և մի նախակրթարան Միացեալ Ընկերութեանց վերաբերող : Գիւղիս եկեղեցւոյ տաճարն բարձր ճարտարապետի գործ է , և ըստ աւանդութեան «առաքելաշէն» , որոյ 'ի նշան ցոյց կը տան տաճարի դրան վերայի մի խաչաքար , որոյ մէջտեղն բեւեռ կայ մխուած , զի առաքելոց և մանաւանդ Թադէոս առաքելոյն յատուկ է եղած իւր օծած խաչերու մէջտեղը բեւեռ զարնելն : Գիւղէս փոքր ինչ հեռու չէնք մի կայ « Աւեր վանք » կոչուած , որոյ հիմանց և կշտանոցի քարերն տակաւին կը տեսնուին լերան ստորոտը :

Գիւղիս քով մի այլ բլրակ կայ , իբրեւ տեղի նախնի անյիշատակ եկեղեցւոյ , որոյ վերաբերութեամբ աւանդութիւն մի չ'գտայ :

## ԽՆԴՐԱԿԱՏԱՐ

Կեմայ Հիւսիսակողմը ½ ժամ հեռու աւերեալ մի գիւղ կայ, որ ունի «Խնդրակատար» անուամբ մի քանդեալ եկեղեցի, որոյ տաճարն մեծագոյն մասամբ կանգուն է և այժմ ուխտատեղի՝ բարեպաշտ գիւղացւոց, որք երբեմն աստ գտնուող աղբիւրին քով մատաղ կը կտրեն, ՚ի յիշատակ տեղւոյս անցեալ փառաց։

Գիւղս ունի բաւական ծառաստան և լաւ տեսարան։ Տեղէս ՚ի Պօլիս 35 պանդուխտ կը գտնուին, որք ունին արտի հատորներ։

Կիմայ Հայերն մեծ քանակութեամբ կը ցանեն շողգամ և առատ սխտոր և լաւագոյն նիւթական վիճակի տէր են։

Մեկնիմք տեղէս ՚ի Կալպալասան։

ԿԱԼՊԱԼԱՍԱՆ. Սոյն գիւղ ունի մի քանի տուն Քուրդ և գաղթեալ Հայոց յիշատակութեանց երևոյթներն։

## ՍՐԽՈՒ ՎԱՆՔ ԿԱՄ ՍՈՒՐԲ ՄԱՐԻԱՆՈՍ

Սոյն վանքն նախորդ գիւղի Հիւսիսակողմն է և անկէ կէս ժամ հեռու շինուած է ցած, այլ ընդարձակ լեռնագօտւոյ մը կողին վերայ՝ երկայն ժայռոտ հովտի մը գլուխը. մենաստանիս շինութեան թուական չերևիր, սակայն տեսքն ցոյց կը տայ իւր հնութիւնն։ Վան-

քըն ամենայն մասամբ չէն է, սենեկաց մեծա-գոյն մասն տակաւին խուրեանց ծածկոցներով կը կենան։ Ասկէ 2 տարի յառաջ վանահօր մը հըս-կողութեան տակն էր՝ ունենալով իրեն համա-ձայն պարագայք, բայց ինչպէս կը լինի վանա-հայրն կը ձգէ զվանս, որ այսպէս կ՚ամայանայ և ո՛ւր ժամասացութիւնք և սաղմոսք կը լռեն։

Վանուց 400 չափ տեղւոյ արտերն, Աղթա-մարայ Կաթուղիկոսի կարգադրութեամբ, գիւ-ղացիներէն միոյն յանձնուած են, որ կը վարէ զայ-նըս և կը ցանէ, տարեկան տուրք մի տալով յիշ-եալ կրօնական Պետին։ Օրն երեկոյ լինելով ճանապարհէն չեղեցայ ընկերիս հետ, փափա-քելով մի գիշեր Սըխու վանուց մէջ անցունել վանահօր քով, առանց գիտնալոյ վանուցս արդի ամայութիւնն, սակայն ի՞նչ կը լինի խանձեալ Ուղեւորին, երբ Հայ լինի և տեսնայ չէն վանք մ՚անմարդի. մուցայ ըսելու շատ երկիւղիւ ներս մտանք, զի որջ գազանաց էր դարձած, Վանքս ունի պատուական ջուր մի, զոր կշտո-րէն խմեցինք կարապետիս հետ, որ չ՚կամէր աղբիւրի քովէն հեռանալ թէև օրն լինէր տա-րաժամ և տեղին անընական երկիւղոտ։ Այս եղաւ ահա՛ մեր հոգնութեան վարձքն, որ քըր-տինքի մէջ կը ծփայինք, երբ վանուց բլուր կըտ-րեցինք հեւալով և ընջասպառ լինելով։

Մենաստանիս վերաբերութեամբ կ՚աւան-դուի թէ «երբեմն ճոխ կուսաստան է եղած,

ուր կը գտնուէին 300 կուսակրօն սրբուհիք, որոց գլխաւորն և վանահայրն եղած է Ս. Մարիանոս, որոյ անուամբ կոչուեցաւ մենաստանն»։ Այժմ Ս. Մարիանոսի գերեզմանն կը գտնուի վանքէն քիչ մը հեռու, մի անշուք տեղի մատուռի մը մէջ, որ կիսով չափ քայքայեալ է և դարձած ուխտատեղի ամուլ և անկաթ կանանց համար.

## ՄԵԿՆՈՒՄՆ

Նախորդ տողերով յիշեալ կուսաստանէն վար ճանապարհին վերայ իջնալով՝ շարունակեմք մեր ընթացք գրեթէ մի և նոյն ուղղութեամբ։ Մեր ճանապարհի Հիւսիսակողմն գրեթէ 1 ժամ տեւողութեամբ ընդարձակ լեռնամէջ մի կայ «Խարամկայ Կէտուկ» կոչուած, որ Հարաւէն 'ի Հիւսիս Վան տանող ուղին է երթեւեկութեանց, որք յաճախ են։

Սոյն ձորոյ Արևմտեան թեւն գրեթէ անառիկ, ահագին և բարձր մի լեռ է ընդարձակ լեռնադաշտով, յորոյ վերայ փոքրիկ մատրանման չէնք մի կը տեսնուի, զոր տեղացիք «Խըրամկայ պուրճ» կ'անուանեն, որոյ նկատմամբ կը պատմեն թէ «Խարամիկ անուն աւազակապետ մը հին ժամանակ սոյն լեռան վերայ կ'ապաստանէր, և անցորդաց շատ չարիք կը հասցնէր, յետոյ բարեխնամ կառավարութեան ձեռամբ բռնուելով պատժուեցաւ, այս առթիւ յիշեալ

անունն առած է, որ կը նշանակէ «Խարամկայ որջատեղի»։

Այժմ սոյն լեռնաձորոյ մէջ 10—12 սեաւ գերեզմանք կան երկիւղ ազդող երթեւեկողաց, որք անցած ատեն՝ սովորութեան համաձայն, մի մի քար կը ձգեն փոքրիկ այդ գերեզմանաց վերայ, յորս գտնուած մարմիններն վայրենի գազաններէ ապահով պահելոյ բարեմտութեամբ։

Ներկայիս մէջ տեղւոյս երկիւղն գրեթէ փարատուած է, և ճանապարհորդք աներկիւղ անց ու դարձ կարող են ընել, միայն թէ «Խարամկայ Պուրճ» անունն տեղւոյ բնական ահարկութեան հետ միանալով երկիւղ կ'ազդեն ուղեւորաց, յորոց երկչոտն այս ձորի մէջ մտած ատեն արագաթեւ ԹՌՉՈՒՆ կը դառնայ։

Տեղէս մեկնելով մէկ ժամէն կը հասնիմք յՈչխրանց։

Սոյն գիւղն ունի միայն 7 տուն բնակիչ, երբ 80 տուն էին, եկեղեցիէ և դպրոցէ զուրկ չեն պատմեր, իսկ այժմ այդ երկու լուսատու աչքեր չունին, յորոց առաջնոյն պէտք երկնից սատղեր ճանչնային, և երկրորդովն երկրի մարդոց գործեր և հետեւաբար տեղւոյս ողորմելի բնակիչք ո՛չ երկնից և ո՛չ իսկ երկրի վերայ գաղափար մ'ունին։ Ոչխրանց գիւղ գրեթէ ամբողջապէս Վանայ մի քանի գլխաւոր մարդոց սեպհականութիւնն է, իրենք ատատէր, և բնակիչք ատատառու են, որք կը վարեն, կը

*ցանեն, կը հնձեն, կը կալեն և կը հանեն ար-մտեաց պտուղն՝ համաձայն կալուածատեարց կամաց և հաչւոյն:*

*Գիւղիս Արևմտահիւսիս 4 քարնկէց հեռու բարձր բլրակի մի վերայ կը գտնուի Ս. Ատուլ-մայ կիսակործան մատուռն, որոյ համար «շատ զօրաւոր» կը պատմեն տեղւոյ բնակիչք, ինչ-պէս և այլ գիւղացիք, որոց համար մասնաւոր ուխտատեղի է, մանաւանդ ամուլ կանանց հա-մար: Աստ երբեմն ոչխար կը մորթեն յանուն Ս. Ատուլմայ:*

*Ոչխրանից Արեւմտահիւսիս աւերեալ գիւղ մի կը նշմարուի Վերին Ոչխրանց անուամբ, ո-րուն յաջորդն կը թուի լինիլ այժմեանն:*

## ԳԼ. ԼԳ.

### ՈՋԽՐԱՆԻՑ ՀՆՈՒԹԻՒՆՔ

*Արեւմտեան Հիւսիս գրեթէ 1 ժամ հեռու ձորակի մի բերանը կը տեսնուին «Տաղձրանց» կոչուած աւերեալ գիւղի մը հետքեր. սոյն գիւղին վերաբերութեամբ 'ի ծերոց կը պատմուի աւանդաբար թէ «բաղմահայ և ճոխ եղած է, որոյ գիւղապետի խաչօրհնքի համար եփուած ճաշին 1 քիլէ աղ գործածուած է և ըստ այնմ հաշիւ ընելու է նաեւ ուրիշ բաներ»: Աստ կայ մի այլ աւանդութիւն, որ կենդանի կը պահ-ուի նոյն իսկ ամենափոքր մանկան բերնի մէջ,*

որ չեշտելով կ'արտասանէ թէ՛ 'ի տան և թէ՛ 'ի դաշտի անվեղծօրէն . Իսկ Ուղեւորիս գալով տժգոհ եմ ես այդ բերանացի պատմութիւնէն , զոր չ'կամիմ և չ'կարեմ իսկ սուտ նշանակել միշտ պատճառելոյ ազնիւ ընթերցողիս :

Այժմեան Վարի Ոչխարանց գիւղին մէջ նահատակուած են Ատովմանք Պարսկական և արեւապաշտական մոլեկրօնութեան առջեւ և կ'աւանդուի թէ « այն ատեն ոչխարի նման մորթուած լինելուն պատճառաւ գիւղիս անունն մնաց « Ոչխարանց » . այս առթիւ Սուրբ Ատովմայ համար կըսուի թէ , « այն բլրակի գըլխէն , ո՛ւր յանուն իւր մատուռ շինուած է, Թաշկինակի մէջ մի մեծ քար դրած՝ պարսատիկի նման, դարձնելով նետած է առ Պարսից Թըշնամիս դէպ 'ի Հարաւ . այս աղագաւ նոյն ցար կը կոչուի « Անխի քար » (Թաշկինակի քար) , որ այժմ կը գտնուի մատռան Հարաւակողմն 4—5 քարընկէց հեռու արտի մի մէջ , ո՛ւր գնալով տեսի զայդ քար՝ որ կապտագոյն է և կլոր , սակայն եթէ ստոյդ է աւանդութիւնն , պէտք է ըսել թէ մարդկային կարողութեամբ ձգուած չէ այդ քար յիշեալ տեղէն :

Երբ տեղս եկայ և ուզեցի մի փորձառու տարեւորէ պարզ տեղեկութիւնք առնել . դըտայ մի մարդ՝ ճերմակ սրտով և սեաւ դիմօք , այլ չ'կարաց ինձ ասել՝ զոր ինչ լսել կը ցանկայի իրմէն . Նա շատ բաներ ինձ պատմեց , և շա-

տաղոյնն իրեն պահեց՝ կասկածելով թէ անծանօթիս ըսելով մի գուցէ ինքն անուղղակի պատճառ լինի գիւղիս արքունական տրոց յաւելման, յորմէ զինքն ապահով ըրած՝ մեկնեցայ։

Վերստին շարունակեմք մեր ուղեւորութիւն այն տեղէն, ո՛ւր 2 օր կանգ առնելոյ հարկադրուած էինք . . . . . . . . . . . . ։

Ց'Ոչխրանից մեկնելով կէս ժամէն կը հասնիմք հետեւեալ գիւղը ։

ԱՍՏՈՒԱԾԱՇԷՆ . — Ունի 50 տուն բնակիչ, յորոց 30 տուն Հայ և մնացած Քուրդեն, Հայք ունին մի եկեղեցի կառուցեալ յանուն Ս. Ստեփաննոսի և մի բարեպաշտ քահանայ. իսկ կրթական կողման գալով՝ ո՛չ դպրոց ունին և ո՛չ ունենալոյ միտք, վասնզի իրենք դժբաղդաբար անսիրող են իմաստութեան և չունին մտաց հեռաւոր հորիզոն, որ կարենան այդ ԳՈՀԱՐԻՆ արժէք ճանաչել. ունին շատ նուաղ ջերմեռանդութիւն առ եկեղեցին ։ Գիւղիս քահանայն թէպէտ և չէր բանգէտ, սակայն մեծ սէր ունէր առ կրօն և առ ուսումն, որոյ վերայ յաճախ կը փափաքէր խօսիլ ընդ իս, որ արդէն իմ ուզած բանն էր ։ Բարեմիտ քահանայն ինձ առանձին գանգատներ յայտնեց ըսելով թէ « իմ Քրիստոսի ժողովուրդ Աստուծոյ եկեղեցին չ'սիրեր և ես ճարտասանութիւն չ'գիտեմ՝ որ զիրենք համոզեմ, բանն տիրոջ է մնացեր, զի քարոզիչ վարժապետ ալ չունիմք » ։ Մի գիշեր որ յայս գիւղ

իջեւաններոյ պարտաւորուած էի , բնաւ չ'զղջացի կենալուս , ըստ որում գտայ այն ներքին և արտաքին գաղտնիքներն , որք զիրենք կը հեռացընէին այդ հողւոյ և մնաց լուսաւոր տաճարներէն ։ Նախ եկեղեցին 450 տարուան է , և իրենց խօսքին նայելով « ծերացած է այլ եւս չը լսեր իրենց աղօթից ձայն , » ատոր համար չեն սիրեր զայն . երկրորդ՝ միտքերնին զբաղած է անակնկալ ինչ ինչ դէպքերով , յորս ընկղմած են ու ժամանակ չունին խորհիլ իւրեանց զաւակաց ուսման և դաստիարակութեան վերայ ։

Տեղւոյս ժողովուրդն ունի մի այլ նախնական պատճառ եկեղեցին չ'սիրելոյ , այն է թէ իրենք թերևս սերնդական շառաւիղ են այն հարց՝ որք երբեմն չաստուածներ կը շինէին գիւղիս մէջ , որոյ համար աւանդութիւնն կը պատմէ թէ՝ «Հայկ նահապետ տակաւին յայս կողմերըն չեկած՝ գիւղս կռապաշտից արհեստարան էր . աստ կը շինէին զանազան չաստուածներ , որոց պատճառաւ Աստուածաշէն կոչուեցաւ , » որ ինչպէս յայտնի է , կը նշանակէ Աստուածներ շինող ։ Երբ յիշեալ նահապետ կուգայ յայս կողմն , քար ու քանդ կընէ կռոց արհեստարաններն , զարհեստաւորսն յայնժամ կը դարձնէ յԱստուածպաշտութիւն ։ Աստ տեղւոյն բնակութեանց փոքր թուոյն հակառակ՝ կը տեսնուի մի բաւական ընդարձակ գերեզմանատուն , ուր կան զանազան ձևեր և գոյներ ու-

նեցող խաչաքարինք , որք զվնասուելէ պարիսպներով ապահովեալ են. և շատ հին քարեր դըժբաղդաբար թուականն չունին , ինչպէս նաև յիշատակութեանց գրեր կամ նշաններ :

Գիւղիս յԱրևմտահիւսիս, փոքր ինչ հեռու կընշմարուին երկու աւերեալ գիւղերու տեղուանք. նոյնպէս 'ի Հիւսիսակողմն 1/2 ժամ հեռու 2 բլրակաց մէջ կը գտնուի Կասրիկ անուն փոքրիկ գիւղ մի , ո՛ւր 2 տուն Հայ և 3 տուն Քուրդ կը բնակին : Հայք ունին Աստուածածին անուամբ անշուք եկեղեցի մը , ո՛ւր երեկոյ և առաւօտ կ'երթան աղօթել, առանց քահանայի և առանց տիրացուի , երբ եկեղեցիէն դուրս կելլեն՝ կը նային մի անգամ իւրեանց պապերու 60—70 տան խաչաքարանց վերայ ու մխիթարուելով կ'երթան 'ի դաշտ երկրագործել արեւուն տակ , և յարաբերութեան մէջ մտնել ձեռօք բնութեան հետ և մտօք երկնից հետ :

## ԳԼ. ԼԵ.

### ՀԱՅԿԱՅ ԲԵՐԴ ԿԱՄ ՊՕԼՏԱՂ

Անցնիմ նկարագրել և տեղագրել Աստուածաշէն գիւղիս մերձակայ նշանաւոր և հսկայ հնութիւնն , զոր Հայք կը կոչեն « Հայկայ բերդ , » իսկ Տաճիկներ՝ « Պօլտաղ » :

Գիւղիս յԱրևելակողմն Արևմուտէն յԱրևել ձգուած սոյն բերդն երկայն և բնական

լեռ մի է առանձին և բաւական ընդարձակ դաշտի մի մէջ բարձրացած , որ գիւղիս գրեթէ անմիջական քովէն կ'սկսի նեղ գիրքով և երթալով կը տարածուի ։ Տակաւ առ տակաւ կը բարձրանայ և կուգայ բերդի նախագլուխն , որոյ կողերուն վերայ անթուական հին խաչեր կան փորուած աննշան , վրան կայ սենեկի յատակացծի պէս տեղի մի , ուրմէ 'ի վեր բարձրանալով կը գայ լեռնափորն լայնածաւալ դրիւք . յետոյ կը հանդիպիմք նեղ կիրճի մը 2 մէտր՝ լայնութեամբ Հիւսիսէն 'ի Հարաւ երկայնաձիգ բացուած՝ այս բնական լերան մէջէն ։ Սոյն կիրճէն անցնելով վեր ելնեմք շարունակելով դարձեալ մեր լեռն ուղին. և ապա կ'սկսի բուն բերդն բարձր և վիթխարի . ըստ տեղական աւանդութեան , « Նահապետի շինութեան աւերակներն են , » որոց գլուխն ելնելոյ համար բնական ճանապարհէն զատ քարոտ և դժուարել տեղերն յատակապէս շինուած կ'երեւին երթեւեկութեանց դիւրութեան համար ։

Բուն բերդի Հարաւային և Հիւսիսային կողմերն , գրեթէ 1 խորանարդ մեթր մեծութեամբ, յղկեալ ահագին քարերով պարիսպներ շինուած կան լեռան զօտիէն սկսեալ աստիճանաբար 'ի վեր ելած , այժմ քարերէն ոմանք հողերու տակ ծածկուած , ոմանք ինքնին գլլորուելով ինկած են գետնի վերայ և ոմանք իսկ ոչխարի նման սփռուած են լերան մօտակայ դաշտերու երեսը ։

Ցիշեալ քարերէն կը գտնուին նաև մերձակայ գիւղօրէից գերեզմանատանց մէջ իբրև տապանաքար․ Նոյնպէս և շատ բնակութեանց հիմնաքար ըրած են, այսու ամենայնիւ տակաւին 3—4 կարգ քարեր իրարու վերայ կանոնաւոր շարուած կը կենան ։ Այս տեղէն ելնեմք դէպ 'ի գլուխն, որոյ վերայ բաւական տեղի լեռնադաշտ է, ո՛ւր երկու այրեր կը տեսնուին իրարմէ փոքր ինչ հեռու, բերաններն 1 քառակուսի մեթր լայն և բարձրութիւն 1 1/2 մեթր, միակտուր քարէ փորուած, յորմէ ներս երթալով կ'ընդլայնի և կը տարածուի բերդի մէջ ։ Տեղացիք «սատանայ կայ» ըսելով երկիւղէն մի անգամ ներս մտնել չեն համարձակիր․ իսկ ինձ գալով՝ որ անձամբ ականատես եղայ, պէտք է ըսել որ զգուշանալու է․ կամ լաւ ևս է ըսել, վախնալու է հեղձուցիչ կազերէ, որք երկրի խաւերէն բնականաբար կրնան կազմուիլ այս օրինակ դարաւոր այրերու մէջ ։

Սոյն այրերն աւանդութեամբ «Ջրամբար» կ'անուանին, որոց շրջապատն 2—3 փոքր սենեակներու հիմունքներ կը տեսնուին, յորոց մի մասն բնական լեռներէն տաշուած և մի մասն ևս արհեստապէս շարուած են ։ Ասա երբ ձեռքի գաւազան 'ի գետին զարնուի, ներսի կողմն պարապ լինելոյ նշան տուող ձայներ կը լսուին ։ Գիւղիս բնակիչք երբեմն հետաքրքրութեամբ ինչ ինչ բաղձանքով այս տեղերն 1—2 մեթր

խորունկութեամբ փորած և դատած են տիգի և նետի, նոյնպէս և խեցեղէն ամաններու անարժէք կտորուանք, որք ուղևորի աչքին անտես չեն այժմ, եթէ յիրաւի սրատես լինի ։

Ջրամբարի տեղէն շարունակեմ դէպ 'ի վեր մի քանի սենեկաց տեղուանք կը նշմարուին, որոց Հիւսիսակողման բերդի գրեթէ ստորոտը կայ ամրաշէն մի աւերակ, զոր տեղացիք «Ըղատու բակ» կ'անուանեն; ո՛ւր ուղտեր կապուած են 'ի հնումն, և որոյ Հարաւային պարիսպն բերդիս բնական ժայռերն են. իսկ միւս երեք կողմերը 1 1/2 մէթր լայնութեամբ քարաշար են, յորոց մեծագոյն մասն քայքայեալ են։ Ցիցեալ սենեակներու տեղէն մի և նոյն ուղղութեամբ ելնեմք 'ի վեր, մեր դէմը կուգայ լեռնադաշտ մը, որմէ անցնելով կը հասնիմք միջնաբերդ, որ ունի միջակ բարձրութիւն, սորա առջև կայ 10 մեթր քառակուսի երես ունեցող քար մը, որ յղկուած կը տեսնուի մուրճով. և զոր տեղացիք ծանուցեալ նահապետին անուամբ կը կոչեն « դատաստանատեղի, » որոյ վերաբերութեամբ կ'աւանդեն իբրև թէ « երբ նոյն մարդոյ ծառայից մէջ կռիւ մի կամ վէճ մի ծագէր, նոքա դատ սոյն տեղւոյ վրայ կը տեսնայր, աթոռի վրայ նստած ։ »

Ասկէ դարձեալ վեր բարձրանալով կը հանդիպիմք մի քանի սենեակներու հիմնատեղեաց, որոցմէ քիչ մը վերօք փոքրիկ էջ մի կայ, ոյր

առջեւը նախորդի նման լեռնակիրճ է ճիշդ, մի և նոյն ուղղութեամբ և նպատակաւ բացուած։ Այս պահուս ամառուան միջօրէի տաքութիւնն յիս կը նայէր շատ խեթիւ, մի կողմանէ. Ջուր չ'կար, ես միայնակ կը մարէի ծարաւէն և կարապետս խիստ հեռու ձիս երկիւղէն կը պահպանէր աչալուրջ՝ մի ամայի ձորոյ մէջ՝ այլ եւս քայլերս չէին օգներ յառաջ գնալ և դողդողալ սկսան՝ բայց ի՛նչ ասեմ, 'ի սոյն ժամու, յանկարեկիր փոխուած իմ սրտին, որ յար կը տենչար սաստ կենալ թափառելով զբօսնուլ այս դարաւոր յիշատակաց բեկորներուն մէջ, թէպէտեւ տեղին լինէր կասկածոտ և յիշատակք ամբողջովին անթուական։ Վերջապէս, փառք երկնից, որոյ ամպերէն յանկարծակի զովացած՝ ես առաջ տարի կրկին զիմ ուղին և հասայ յԱրեւելեան ամենաբարձր գագաթ Պօլտաղին, ո՛ւր շինութեան նշմարանք չէին տեսնուեր Ուղեւորիս աչքին, որ սուրօրէն կը նայէր չրջահայեաց դիտակաւ։ Սոյն գագաթն բնականէն անառիկ է գրեթէ, յորմէ շարունակելով կը հանդիպիմք բերդիս կից քառաճղի լերան մը, որ Արեւելածայրն է և կ'սկսի վար իջնալ տափարակ դաշտի վերայ։ Սոյն լեռնային ուղեւորութիւնս 5 ժամ տեւեց՝ սաստիկ հոգնութեամբ։

Պօլտաղ բնաւ ջուր չունի և բուսականութիւնն շատ նուազ է, միայն թէ կրնայ մի քանի հարիւր ոչխարներու երբեմն արօտ տալ։ Սոյն

լերան վերայ դուն ուրեք կը տեսնուին վայրի կենդանիք, զոր օրինակ. գայլ, աղուէս, լապըդտրակ (նապաստակ)։ Լերան շրջապատն ընդհանրապէս դաշտ և դաշտային գիւղօրայք են։

Աստուածաշինոյ գիւղացիք, իբրեւ հարազատ Թոռնիկներ իւրեանց պապուն, և տէր այդ ահաւոր աւերակաց՝ Փիզիքապէս յիրաւի կայտառ և աշխոյժ են, սակայն սիրտերնին և միտքերնին մնացած են խոպան, նիւթապէս աղքատ։ Հետեւեալ գլխով շարունակեմք մեր ուղին։

## ԳԼ. ԼԶ.

### ԱՍՏՈՒԱԾԱՇԷՆԷՆ Ի ՆԱՆԻԿ ԿԱՄ ՀԱՐԱՏԵՆՑ

Մեկնելով պատմական անորոշ կեանք ունեցող Աստուածաշէն գիւղէն, գնամք իւր պարծանաց սարի կողմն և կէս ժամէն կը հասնիմ յիշեալ տեղը։

ՆԱՆԻԿ ԿԱՄ ՀԱՐԱՏԵՆՑ. — գիւղս ունի 20 տուն բնակաւոր Հայ և 2 տուն եկաւոր Քուրդ։ Հայք ունին մի անշուք՝ և ողորմելի եկեղեցի՝ անծանօթ Թուականաւն, մի քահանայ ծանօթ բարեպաշտութեամբ, իսկ դըպրոց ո՛չ ըսելոյ ցաւալի հարկին մէջ կը գտնըուիմ. չ՛ունին սէր առ այն և ո՛չ գաղափար այդ յարկի կարեւորութեան վրայ. և որ աւելի ցաւալին է, կը պակսին խօսող լեզուներ ու կարեկցող զգայուն սիրտեր իրենց համար։

Բանասէր ընթերցողի հետաքրքրութիւնն աւելի զարթուցանելոյ համար, գիւղիս վերաբերութեամբ առած ճոխ աւանդութիւնք աստ կը նշանակեմ։

Ի ծերոց կաւանդուի թէ «950 թուականին, երբ Պարսիկք կուգան այս կողմերն և արշաւելոյ, զօրապետն իւր բանակը գիւղէս 20 վայրկայն հեռու՝ լճակի մի քով կը դնէ։ Հարատենց նոյն ատենն 300 տուն բնակիչ կունենայ, յորոց ամենէն հարուստ Հայ գիւղապետն տեսնելով, որ Պարսից դերի պիտի լինան՝ անմիջապէս գիւղական ժողով մի կը կազմէ, և հետեւեալ որոշումն կը տան ու կը ձգեն գիւղապետին 'ի գործադրութիւն։ Հայալից գիւղապետն 7 տեսակ հացերէ, զոր օրինակ, ցորեան, տարեկան, գարի, կորեակ ևայլն 7 սայլ կը բառնայ, իւրաքանչիւր սայլի մի տեսակ հաց բեռնաւորած՝ կը տանի առ Պարսից զօրագլուխն, և անմիջապէս ամեն մէկ սայլի վրայէն մէկ մէկ հաց կ'առնու փոքր փոքր թխել տուած՝ ու տանելով զօրապետի առջև կը դնէ, 'ի նշան իւր հիւրասիրութեան, առ Պարսիկս։ Զօրապետն անտեղեակ լինելով հացերէն վերջի չորս տեսակներուն՝ մի առ մի բռնած 'ի ձեռին, կը հարցանէ գիւղապետին «այս ի՞նչ է» կը պատասխանէ «Նան» (հաց)․ մէկ ալ ցոյց կը տայ թէ «այս ի՞նչ է» — «Նան» (հաց), վերջապէս երբ զօրապետի չորս հարցմանց «Նան» պատասխան կը տայ

գիւղապետն , մեծ հաճոյք կ'զգայ զօրապետն , որ կը պատուիրէ գիւղապետին թէ «այսուհետեւ գիւղիդ անուն Նանիկ թո՛ղ կոչուի (փոքր հայ)», որով ց'արդ կը յորջորջուի ։ Ցետոյ զօրապետի սիրտն իջած՝ երբ իր բանակը քաշելոյ վրայ կը լինի , վերստին կը կոչէ զգիւղապետն եւ անոր կը պատուիրէ ըսելով թէ «այսուհետեւ դու իմ մարդս ես , եւ ո՛վ որ քեզ նեղութիւն կը տայ ինձ իմացուր, ես կը պատժեմ զնա» ։ Պարսից մեկնելէն ետքն Խօշապայ Քուրդ Պարոն երբ կ'իմանայ թէ իր հպատակ Հայն Պարսից զօրաց առջեւ 7 տեսակ հացէ հանած 7 սայլերու բարձած 'ի պատիւ անոնց, անմիջապէս առ ինքն կը կոչէ յիշեալ հաց տուող գիւղապետն, զոր կապաննէ 'ի միասին նորա չորս եղբարց հետ ։ Այս միջոցին Պարսից զօրապետն երբ կը լսէ Խօշապայ Պարոնի սոյն անգթութիւնը , շատ կը վշտանայ եւ հրաման կ'ընէ՝ որ նոյն 5 եղբարց վերայ իւր ծախիւք տապանաքարեր տնկուին ։ Այս կողմերն օրինաւոր քար չ'գտնուելով Ախլաթէն բերել կը տայ 5 հատ վիթխարի քարեր , յորոց 4ը ց'արդ գերեզմանոցի մէջ կը կենան եւ մին Խօշապայ կողմն տանելով կամուրջ ըրած են ։» Սոյն աւանդութիւնն ինձ պատմեցին երկու ծերուկներ, որք փոխադարձաբար իրարու սխալ կը ջնջէին՝ նըստած մի կիսաւեր տան պարսպի շուքին տակ , ո՛ւր ուշադրութեամբ կ'ունկնդրէի իրենց , եւ նոքա ախորժանօք կը պատմէին ինձ ։ Սոյն աւան-

դուլթեան աւարտման վերայ խումբ մը կենդա-
նի մարդիկ ձգած՝ կարապետիս հետ մեռելոց
այցելութեան գնացի և 'ի գերեզմանատան ա-
կանատես եղայ յիշեալ չորս հօկայ տապանա-
քարանց, որք յիրաւի Ախլաթու քարերուն յար
և նման էին, զորս երբեմն ի նոյն գաւառ տե-
սած էի, նախորդ ուղեւորութեանս մէջ։ Սոյն
չորս մահարձանաց վերայ խաչի և ծաղիկներէն
ընտիր տեսակներ քանդակուած էին ճարտարօ-
րէն և մի և նոյն արհեստաւորի ձեռքէն ելած։
Քարանց յիշատակագիրներէն մեծագոյն մասն
անընթեռնլի գտայ։ Աւասիկ, զոր ինչ ընթերցայ
քարերէն միոյն վերայ իւր ճշդութեամբ։ «Թվ.
ՋՁԵ Մելիք խանս կանգնեցի զխաչս՝ բարեխօս
առ Քրիստոս վասն հոգոյ եղբայրին իմոյ Ստե-
փաննոսին, որ սպանաւ ձեռամբ անաստուած
ուլամին, (.*) որք հանդիպիք Աստուած ողորմի
ասայէ՛ք»։ Միւս չորս խաչաքարանց վերայ 2—3
տարուան տարբերութեամբ մի և նոյն թուականք
կան և «սպանաւ» կ'ըսէ մնացեալ գրեանք չեն
կարդացուիր։ Եթէ յիրաւի սոյն տապանագիր-
ներն ամբողջապէս և անսխալ ընթեռնլի լինէին,
պատմական փոքրիկ լոյս մը թերևս կարելի կը
լինէր առնուլ, որով հետաքրքրուիլ։

Գիւղիս երկրորդ անուան գալով՝ Նորա վե-
րաբերութեամբ եւս կ'աւանդուի թէ «ծանուց-
եալ նահապետն երբ նետ կը մխէ ականաւոր
թշնամւոյն կուրծք, մխեալն շնչասպառ ինկած

տեն իր Թոռնիկ անդ կանգնած լինելով՝ յանկարծակի կը տեսնայ և կը հարցնէ իր մեծ պապուն թէ «Ի՞նչ եղաւ, ո՞հ դառնիկ խարատեց գլխս» կը պատասխանէ, որով գիւղին անուն մնաց «Խարատեց», որ յիշեալ անուան աղաւաղեալն է։ Գիւղիս առաջին անուն Նոր է վերջինէն, որ աւելի ընդհանուր է գաւառիս մէջ։

Խարատեց կամ Հարատենց գիւղի յատակըն շատ ջրային է։ Ականատեսք կը պատմեն թէ 80--90 տարուան միջոցին մի անգամ գետնի տակէն սեւ ջուր ելնելով գիւղը կոխած է, այնպէս որ դժբաղդ գիւղացիք ստիպուած են մի ժամանակ գիւղէն հեռանալ մինչեւ որ «Աստուծոյ այս պատիժն անցնի». Ջուրը քաշուելէն յետոյ կը վերադառնան յիւրեանց գիւղ։ Նոյնպէս ասկէ 14 տարի յառաջ դարձեալ գիւղիս յատակի սեւ ջուրն սկսած է յորդիլ և մի քանի Թոնիրներ լեցուած են, որոյ պատճառաւ գիւղացիք ահով ու դողով կը պաշարուէին. սակայն բարեբաղդաբար 4—5 օրէն ջրերն կ՚իջնան և գետին կ՚սկսի ցամաքիլ, որով ժողովուրդն սիրտ և հոգի կ՚առնու։ Գիւղիս սոյն բնական երեւոյթն կարծել կը տայ թէ իր տակը շատ խորունկ լըճակ մի կայ, որոյ հետ յարաբերութիւն ունին տակէն վազող անծանօթ ջրեր։

Տեղւոյս Նախկին վիճակը շատ լաւ կը պատմեն, մանաւանդ բազմամարդ և լի եղած այգիներով և մրգեղինաց ծառաստաններով, այն-

պէս որ « փոքրիկ առուաց մէջ ծառերէն թափուած խնձորներն երբեմն զջուրն արգիլած են և ջրէն լեցնողները կ'ստիպուէին նախ խնձորներ մէկ կողմն տալ և ապա սափորնին լեցնել » ։ Այժըմ այս ամենքն կորած են , մի միայն մի քանի, ծերունի ուռենի , ծառեր կը տեսնուին, որք չուք տալէն զատ ուրիշ օգուտ մի չունին ։

Գիւղէս տակաւին չ'մեկնած՝ երբ գիւղացւոց կը հարցնէի թէ քանի՛ հատ դպրոցական տղայ ունիք , մի նորահաս մարդ , որոյ ընչացք դեռ նոր կը մրային , 'ի հեռուստ յատուկ զիս կը դիտէր և ինձ հետեւեցաւ երբ եկեղեցւոյ ճակտի դրեանց վերայ նայելով անցայ 'ի գերեզմանատուն , ո՛ւր քարերէն միոյն դրերն հետաքրքրութեամբ լուալ տալով ընթեռնելի ընել կը ցանկայի, որով խաւարէն լոյս մը տեսնել ։

Տեղէս մեկնած պահուն յիշեալ տարիքով ազնիւ երիտասարդն , ինչպէս նաեւ սրտիւ , մըտօք և հոգւով բարի երիտասարդը, մինչեւ գիւղէս դուրս մեզ ընկերացաւ և բաւական յառաջ գնալէն յետոյ շնորհակալութեամբ ստիպեցի զինքըն՝ որ վերադառնայ 'ի գիւղ և մնաս բարեաւ խօսքը տակաւին բերնէս ամբողջապէս դուրս չը ելած՝ ձիուս սանձէն բռնելով սկսաւ զիս թախանձել թէ « Ստամպօլէն է՞ր եկած ես էսա ջապու ( խիստ տաք ) արեւուն » ման կուգաս ( կը պտըտիս ) մեր աւերակ երկիրները , դու Հայանական Ազգ սիրող մէկ կ'երեւիս իմ աչ-

քերաց, եթէ քու Աստուած կը սիրես քու միտք և սիրտ ճիշդ ինձ սաս՛, որ քեզ թող տամ, ես քու բաղդն եմ ինկած, սաս՛ թէ ազգին ինչ աղէկ բան պիտի ըլնի մեռած պապերու խաչ—քարերէն, ժամերու (եկեղեցի) դռան դըրերէն և մեր լանկլավաղ ճժերէն (մանր մունր տղայ)։» Այս առթիւ իրեն հասկանալի լեզուաւ բաղումդժուարութեամբ կարծեմ կրցայ զինքն համոզել՝ ըսելով թէ քարերէն եթէ օգուտ մի չըլնի, դըրերէն և ճժերէն մի օր բարիք մը պիտի ծնի, եթէ աներկմիտ հաւատայք և կարդացնէք ու կրթէք զանոնք. զայս ըսելով նա գիւղ վերադարձաւ, ես ուրախ տպաւորութեան մը տակ՝ մեկնեցայ 'ի Նոր—գիւղ, որ կը գտնուի Հարատենից յԱեւելահիւսիս 2 ժամու չափ հեռու անկէ։

## Գլ. ԼԵ.

### ՀԱՐԱՏԵՆՑԷՆ ՄԵԿՆՈՒՄՆ

Հարատենցէն մեկնելով դէպ 'ի յԱրեւելահիւսիս 2 ժամէն կը հանիմք հետեւեալ գիւղն։

ՆՈՐ—ԳԻՒՂ. — Ունի 50 տուն, մի եկեղեցի՝ սուրբ Ստեփաննոս անուն 150 տարուան և մի քահանայ, կենդանի և աշխոյժ։ Ունին մի ծաղկոց, ո՛ւր կ'աշակերտին 30-35 ուսանողք, յորոց մեծագոյնմասն ամառը և ձմեռը կը յաճախէ 'ի վարժարան։ Ժողովուրդն ունի սէր առ

եկեղեցին և փոփաք առ ուսումն և դաստիա֊րակութիւն ։ Դպրոցն յանձնուած է վանքի մի պարկեշտ երիտասարդի, որ իւր զարգացմամբն գոհ կ՚ընէ զուսանողս, սակայն հրահանգի, չատ պարագայից մէջ, կրնայ կարօտիլ։ Հոգւով չափ բեկրութիւն զգացի երբ առոյգ և կայտառ գը֊տայ տեղւոյս մանկտին, որոյ եռանդին դժբաղ֊դաբար չեն պատասխաներ դրական պիտոյքն ։

Գիւղիս մէջ բաւական թուով երիտասարդ֊ներ կը գտնուին, որք ունին կորով. տեղւոյս տուարներ և ոչխարներ իրենց հանգստութիւ֊նըն և ապահովութիւնը պարտական են յիշեալ երիտասարդաց սոյն օրինակելի վիճակին ։

Նոր—գիւղն չինուած է տափարակ դաշտի մը վերայ, որոյ հիւսիսային Արեւելը կայ Ս. Գէորգ անուամբ փոքրիկ մատուռ մը կառուց֊եալ ապառաժի մը վերայ ։

Սոյն գիւղն ժամանակակից չէ Հայոց Ձորոյ միւս գիւղերուն, որպէս իւր անունէն կը յայտ֊նուի ։ « 80 տարի յառաջ աստ կը բնակէր 130 տուն բնակիչ » ըստ աւանդութեան ։

Գիւղիս ճանապարհի վերայ գտնուիլն ա֊մենամեծ դժբաղդութիւն կրնայ համարուիլ բնակչաց համար, որոնցմէ բարեբաղդաբար 3—4 հոգի հազիւ կը գտնուին 'ի Պօլիս պանդուխտ։

Նոր գիւղի Արեւմտահարաւը 20 վայրկեան տարակայ՝ Տէ. անուամբ աւերակ քաղաքի մը տեղն ցոյց կը տրուի, որոյ հնութեանց բեկոր֊

ները գրեթէ աննշմարելի չեն ։ Այն քաղաքի անուան վերաբերութեամբ 'ի ծերոց կ'աւանդուի թէ «ժամանակին չքեղ և լաւ գիւղաքաղաք մը լինելով՝ հեռաւոր տեղերէն իրեն 'ի տես կը գային , այս պատճառաւ անունն մնաց «Ե՛» որ յետոյ փոխուած և եղած է «Է» ։

ՄԵԿՆՈՒՄՆ

Նոր-գիւղէն ելնելով շարունակեմք ընթացքնիս միեւնոյն ուղղութեամբ կը հանիմք հետեւեալ գիւղը ։

ԱՌԻԵՂ. — Նախորդ գիւղէն 1 1/2 ժամ հեռու կը գտնուի 14 տուն Հայ և 3—4 տուն Քուրդ ։ Հայք ունին աննշան եկեղեցի մի , յուսահատ քահանայ մը . իսկ դպրոցին գալով՝ ոչ թէ միայն չ'ունին , այլ նաև ունենալոյ յոյսեր կը պակսին , վասն զի իրենք շատ ողորմելի և աղքատ են աւատական դրութեան մը տակ ։

ՍՈՒՐԲ ՎԱՐԴԱՆ

Գիւղիս յԱրեւելակողմն կէս ժամ հեռու կայ Ս. Վարդան անուամբ մի փոքրիկ վանք՝ կառուցեալ ընդարձակ բլրակի մը ստորոտէն քիչ վերև ։ Յիշեալ վանքն այժմ ամայի կը կենայ փակեալ դրամբ . տարին մի անգամ Ս. Վարդանայ տօնին գիւղիս քահանայն երթալով կը պատարագէ 'ի ներկայութեան բազում ուրախալից ուխտաւորաց ։

Աւանդութեամբ կը պատմեն թէ «Ս. Վարդանայ գլուխն սոյն վանուց մէջ թաղուած է մի անծանօթ անկիւնը»։ Սոյն աւանդութիւնն ըստուգութենէ շատ կը շեղի, երբ Արտազու դաշտ միտքերնիս բերենք, ուր Վարդանն ինկաւ։

Առեղ կը գտնուի Հայոց Ձորոյ Հիւսիսային երկայնութեան Արեւելածայրը։

# ԳԼ. ԼԲ.

## ՀԱՅՈՑ ՁՈՐՈՅ ՀԱՐԱՒԱԿՈՂՄՆ

Հայոց Ձորոյ Հիւսիսային մասն աւարտած լինելով՝ նախորդ գլխուն վերջը յիշուած Առեղ գիւղէն մեկնիմք դէպ 'ի Հարաւ և անցնելով Խօշապայ գետ կը հասնիմք 'ի Հնոսստան գիւղ, որ կը գտնուի գաւառիս Հարաւային երկայն մասի Արեւելածայրը, որմէ շարունակաբար ուղեւորիմք յԱրեւմուտս կրկին դէպ 'ի Վանայ ծովն, առանց այլ եւս ուղղութեան գծերնիս յաճախ յիշելոյ, երբ ճանապարհի շեղումն մեծապէս զգալի չ'է, որպէս առաջի նախապէս, երբ 'ի սոյն գաւառն մտնելով կ'սկսէի տեղագրել նորա Հիւսիսային երկայն մասն։

ՀՆՍՏՍՏԱՆ. — Նախորդ գիւղէն 1 1/2 ժամ հեռու է և շինուած «Ալլաաաթ» (Ալուսէթ) լայնահատակ լերան ստորոտը։ Ունի 30 տուն բնակիչ, յորոց 5 տուն Քուրդ են։ Հայք ունին մի նորաշէն ու բաւական ճաշակաւոր եկեղեցի

յանուն Ս. Աստուածածնայ կառուցեալ. մի ընտիր քահանայ՝ ուսեալ և առաքինի, որոյ նման գաւառիս մէջ չ՛կայ․ այս մասին Հնտստանցիք բարեբաղդ կրնան համարուիլ, սակայն մե՛ղք որ դպրոց չ՚ունին, որոյ դռնէն պիտի ցոլայ իւրեանց եկեղեցւոյ լոյս, յորմէ տեղւոյս դժբաղդ նոր սերունդ զրկուած է։

Աստ եկեղեցւոյ արտաքին սրահը քահանային և մի քանի գիւղացւոց հետ նստած՝ մինչ կը խօսէինք դպրոցի վերայ, 10էն աւելի հոլանի և բոկոտն, այլ կայտառ մանուկներ մեզ հանդէպ կեցած՝ այնպէս որ իրարու միշտ կը հրէին անծանօթ հիւրի մը նկատմամբ զգացած ուրախութենէն, որ յուզուիլ սկսայ և իբրեւ արդար իրաւունք այդ մանկանց, մեծ ցաւ յայտնեցի ներկայ ծնողաց, որ անմտօրէն այս լուսոյ դարու մէջ ՚ի խաւարի կը մեծցնեն իրենց յուսալից զաւակները։ Գիւղիս մխիթարական կողմըն միայն սա էր թէ երիտասարդութիւնը կորովէ զուրկ չէ բոլորովին։

Հնտստան ՚ի հնումն 6 եկեղեցի ունեցեր է, որոց հետքերն ց՚արդ կը նշմարուին, նախապէս 400 տուն բնակիչ ունեցած է՝ որոյ ապացոյց իւր մէջ է։ Գիւղիս Արեւելակողման Ապլասաթ լեռն տեղ տեղ կարճիկ կաղամախներէ ծածկեալ է, որոյ վերայ կան նաեւ մի քանի անթուական ժամանակէ մնացած գերեզմանաքարինք, որոց համար անորոշ աւանդութիւնք կան, զորս աստ նշանակել աւելորդ են։

Գիւղիս յԱրեւելակողմն 3 քարընկէց հեռու կը տեսնուին երկու «քոյր-եղբայր» անուամբ գերեզմաններ, որոց վերաբերութեամբ կը պատմուի 'ի ծերոց թէ « յանուն կրօնի նահատակուած են և իրենց արեամբ տեղւոյն վերայ մի քանի ծառեր բուսած ,» որք այժմ կը տեսնուին գերեզմանաց շուրջը , որոցմէ փոքրիկ ճիւղ մը անգամ չ'են կտրեր , զի մասնաւոր ուխտատեղի է , մանաւանդ իգական սեռի համար ։

Հնտստանայ տեսարան այնչափ գեղ չ'է , միայն թէ մի քանի հատ ուռի ծառերէ զատ' այլ ծառաստան չ'ունի։ Այժմ տեղւոյս երիտասարդներէն մտաց և կորովոյ տէր մին' մրգեղինաց ծառաստան և խաղողոյ այգի տնկած է . տա՛յր երկինք , որ անվնաս մնայր և լինէր 'ի Հայոց Ձոր նախանձելի օրինակ մը զիւր նմանիս յառաջ բերելոյ , վասն զի , ինչպէս նախորդ յօդուածներէս միոյն մէջ դիտել տուած եմ, թէ գաւառիս խիստ մեծագոյն մասն' բերան մը թացելոյ չափ մրգեղինաց ծառեր չունի ։ Սոյն գիւղ պարբերական անախորժ դէպքերու ենթակայ կը համարուի 'ի տեղացւոց ։

Խէչք . — Հնտստանէն մեկնելով մէկ ժամէն կը հասնիմք 'ի սոյն գիւղ, որ ունի 20 տուն Հայ և 3 տուն Քուրդ. առաջինք ունին մի եկեղեցի Ս. Սարգիս անուամբ , առանց քահանայի և առանց դպրոցի. իրենց կրօնական պէտքերն մերձակայ գիւղի քահանայի կողմանէ կը հոգացուին, Գիւղիս տեսարան լաւ է քան զառաջնոյն ։

# ԳԼ. ԼԸ.

## ԽՆԿՈՅՑ ՎԱՆՔ

Խնքայ յԱրեւմտահարաւ 20 վայրկեան հե-ռու կը գտնուի «Խնքուց Ս. Գէորք» կոչուած անկախութիւնը հին վանք մը, որոյ շինութեան թուական չ՚կրցայ գտնել դժբաղդաբար, միայն թէ վարդանանց դէպքերէն ետքը շինուած լի-նելու է, շատ անճաշակ և հին ձև մ՚ունի։

Վանքն ունի բաւական ընդարձակ հող և ջուր, ընտիր տեսարանաւ և հին շինուածքնե-րով. այժմ Տէր Սարգիսեան Սահմեան վարդա-պետի վանահայրութեան յանձնուած է. որպէս և կապուտ կողայ վանքն, (որոյ վերայ խօսուած է։) Յիշեալ վարդապետի ջանիւք շինուած են մի քանի նոր սենեակներ և խուցեր. 'ի մօտոյ պիտի ունենայ վարժարան մը, զոր անցեալ տա-րի արդէն ունէր։

Խնքուց վանքի առջեւ իր շրջապատէն դուրս «Ձկնտուն» կոչուած տեղի մի կայ, որոյ վե-րաբերութեամբ կ՚աւանդեն թէ «մի դեղեցիկ լճակ եղած է ձկներով լի, որոյ վերայ Պօլսաղի Հայ մեծեր երբեմն իւրեանց ընտանեօքն կ՚զբօս-նուլին։»

## ՍՈՒՐԲ ԱԲՐԱՀԱՄՈՒ ՎԱՆՔ

Խնքուց վանուց յԱրեւելահիւսիս մէկ ժամ

հեռու ձորադաշտի մը վերայ լերանց ստորոտը շինուած է Ղեւոնդեանց աշակերտ Ս. Աբրահամու վանք, որոյ մասին Եղիշէն կը գրէ ։ »

Այս մասին ծերոց մէջ հետեւեալ աւանդութիւնը պահուած է ։

« Երբ Ղեւոնդեանց դէպքի ժամանակ Աբրահամ և Խորէն 'ի Հարաւ գերի կը տարուին, անդ՝ ծանօթ ընդունելութենէն յետոյ՝ կը վերադառնան 'ի Հայս, և վերոյիշեալ տեղին իրենց համար աղօթատեղի կ'ընտրեն, ո՛ւր տակաւին բընակութիւն չէր եղած ։ Աստ իւրեանց փոքրիկ մատուռ մը շինելով կը բնակին աղօթելով եւ սաղմոսելով, սակայն ջրոյ պակասութեան համար շատ կը նեղուէին և իրենց ծարաւը կ'անցունէին մէկ ժամէն աւելի հեռու Խօշապայ գետոյ ջրովը ։ Իրենց դէմքի վերայ դրուած անախորժ նշանաց ամօթէն, սոյն երկու երկինից նուիրեալներն ժողովրդեան մէջ մտնել չէին կըրնար, մի օր երբ ջուր խմելէն յիւրեանց աղօթատեղին կը վերադառնան, ճանապարհին անտանելի վիշտէ մը բռնուած՝ կ'արտասուեն, և երբ յաղօթատեղին կը հասնին, կը տեսնեն որ լերան ստորոտը մի աղբիւր բղխած է պաղ եւ անուշահամ, և ձայն մը կը գայ առ Աբրահամ և առ ընկերն թէ «Աբրահամ այս ջուր և ձեր դերեզմանք լինին ցաւագարաց 'ի բժշկութիւն» ։ Սոյն մենակեաց սրբակրօնք մի քանի տարիէն երբ կը մեռնին, այս կողմերու բարեպաշտ քը-

րիստոնեայք խորհուրդ ընելով՝ աստ յանուն Ս. Աստուածածնայ փոքրիկ մենաստան մի կը շինեն որոյ Հիւսիսակողմն. կից տաճարին, կ'ընտրեն տեղի գերեզմանաց յիշեալ կրօնաւորներուն և անդ կ'ամփոփեն նոցա չարչարեալ մարմիններ, անոնց վերայ կառուցանելով մատուռիկ մը: Զայս մենաստան, ուր կը հաւատայր այլակրօն, այլ ջերմեռանդ կարապետս, տեսնելոյ եկանք, առանց գիտնալոյ նորա արդի տխուր կացութիւն, երբ վանուց մտեցանք, մարդ և անասուն չ'տեսնելով ցաւ և զարմանք զիս պաշարեց ու վերջապէս գտանք զայն ամայի և դարաւոր ուռենեաց մ'առընթեր: Այն ուռենին պահապան Աբրահամու մենաստանին, գլուխը ձգած դէպ 'ի յայն, որուն շուք տալ կ'ուզէր, այլ չ'կարէր յաջողիլ, զի կարճ էր հասակաւ, թէեւ լինէր հաստարմատ և ճղաչատ:

Այն վանուց տաճարն անվնաս կը կենայ գեղեցիկ շինուածքով, առջևի սենեակներն կիսակործան, տաճարին կից սրբոց հանգստարանը փոքր մասամբ վնասուած է, և ո՛ւր կը տեսնուէին, ձէթ, իւղ և մոմ, զոր վառեց կարապետիկս համբուրելով և ծնրադրելով, սակայն պակաս թողուց քառաթեւել, զոր չէր սորված: Այս պահուս մինչ կը դիտէի վանուց պարսպի քարերուն վերայ իւր անցեալ կենաց պատմագիր մի գտնելոյ, յանկարծակի հրացանի ձայն մը սոսկալի եկաւ յիմ ականջ. ես սիրտ առի

և ձայն տուի կարապետին. երկուքս մէկէն, որպէս երկիւղալից երբեմն ներս մտանք 'ի տաճարն, դուրս ելանք անտի աներկիւղ և ի՛նչ տեսնեմք. մի կոնաձև գլխարկաւոր բարձրահասակ և ահարկու մարդ, որ զիս գիտաց յիւր կրօնէն երկիւղ կրելով վեց աչերէն, ուր պարտական մեր կեանք մնաց, երբ անծանօթն զանծանօթս ողջունելով հեռացաւ պաղարիւնութեամբ և մտախոհ։

Կրկին վերադարձանք 'ի տաճարն, ո՛ւր չը գտնելով մի որոշ թուանշան, դուրս ելանք տըխուր տպաւորութեան մը տակ։

Սոյն վանք տարին մի անգամ Համբարձման տօնին բազմաթիւ ուխտաւորք կուգան և Խէքուց վանուց վանահայրն, որոյ տրամադրութեան տակ են ամփայացեալ մենաստանիս արտօրայքն, աստ գալով կը պատարագէ։ Տեղւոյս ծանուցեալ աղբիւրն տակաւին ջուր կը տայ նուազօրէն և կը ծառայէ ուխտաւորաց։

## ԳԼ. ԼԹ.

## ՍՈՒԲՐ ԱԲՐԱՀԱՄԷՆ Ի ԾԻԾԱՂԱԲԵՐ ՎԱՆՍ

Ս. Աբրահամու վանքէն ելնելով չարունակեմք մեր ուղին։ Խէքուց վանուց առջևի ճանապարհը բռնելով 1 ժամէն կը հասնիմք «Ծիծաղաբեր Ս. Աստուածածին» կոչուած փոքրիկ վանքն, որ կառուցեալ է տաճարաւոր և խիստ

հաստատուն շինուածով՝ դրեթէ տափարակ տեղւոյ մը վերայ. ունի 2 հատ հետաքրքիր և լաւ-պահարաններ ։

Սոյն մենաստան կը թուի լինիլ Թադէոս առաքելոյն շէնք, որոյ նկատմամբ կ՚աւանդեն թէ «երբ յիշեալ առաքեալն ՚ի Հայոց Ձոր գալով՝ եկաւ աստ ու նստաւ «Կուռդար» անուն բլրոյ մը վրայ, զոր այժմ ցոյց կը տան, որ կը գտնուի վանուց անմիջական կռնակը, (ո՛ւր նախապէս բնիկներու բերդ մ՚եղած է) և անդ Թադէոս առաքեալն յոգնութենէն փոքրիկ նինջ մը կ՚առնու ։ Ս. Աստուածածին ՚ի տեսլեան իրեն կ՚երևայ ծիծաղուն դիմօք, առաքեալն «ինչո՞ւ կը ծիծաղիս ո՛վ Տիրամայր, կ՚ըսէ, նա կը պատասխանէ թէ «կը փափաքիմ որ աստ մի վանք շինել տաս» և աներևոյթ կը լինի ։

Առաքեալն վեր ելնելով կը յայտնէ բարեպաշտից, և կը շինեն այժմեան վանքն՝ անուանելով զայն «Ծիծաղաբեր Աստուածածին» ։

Յիշեալ Կուռդար կոչուած բերդի տեղւոյն ՚ի Հարաւակողմն փոս արտ մի կայ, որոյ համար աւանդութեամբ կը պատմեն թէ «Նահապետի ձեռակերտին շէն եղած ատեն «Նահապետական գերդաստանին զբօսանաց լճակն եղած է, զոր յատուկ շինել տալով խօշապայ դետոյ ջրովն կը լեցնէին, և վրան ամառ եղանակին նաւակներով կը զուարճանային ։»

Վանուց անմիջական յԱրեւել բաղմաթիւ

դերեզմանատեղիք կան առանց խաչքարի և ունեցողներուն ընթեռնլի ամենամեծ թուականն 980 էն վեր չէ։

Վանքէն քիչ մը հեռու՝ ՚ի Հարաւային Արեւելակողմն «Եէզտիներու գերեզման» կոչուած բլրակի մը վրայ՝ կը կարծուի լինիլ երբեմն նոցա աղօթատեղի կամ այլ նուիրական վայր։

Սոյն Ծիծաղաքեր Աստուածածին վանքն ունի վանահայր-վարդապետ մը Աղթամարայ կաթուղիկոսի դերիշխանութեան ներքեւ։ Ունի բաւական թուով ոչխար, տաւար և ծառաստանով լաւ տեսարան մը, բայց դժբաղդաբար դըպրոցէ և մտային կեանքէ բոլորովին զուրկ է։ Այսուհետև մտադիր են ունենալ «եթէ յաջողին։»

Սոյն մենաստանէն մեկնելով քիչ մ'ետք մեզ պատահեցան 6—7 Հայ մարդիկ լուրջ և բաւական զգայուն տեսակէն. երբ զիրենք ողջունեցի, նոքա կը խօսէին ընդհանուր վիճակի մասին, ինձ պատմեցին շատ թէթեւ մի նիւթի վերայ մեր ուսումնական դասուն կենաց վերաբերեալ և յանձնարարեցին խղճիս և զգացմանս, որ գրեմ հրապարակաւ։ Ասոնց մտաց թարգմանութիւնն այլում նուագի թող տալով, շարունակեմք մեր ուղին և 20 վայրկենէն կը հասնիմք Էրէմէրու կամ Հէրէմէրու կոչուած գիւղը, որոյ վերայ յաջորդով։

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ

Նախորդ գլխոյ վերջի գիւղին վերայ տակաւին չ՚խօսած ցրտաշունչ ձիւն մը զիս արգիլեց յառաջ գնալոյ, իսկ այժմ ուրախ եմ ասել՝ որ այդ ձմեռն անցուցի և կը շարունակեմք վերստին մեր ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆՆ, կամ որ նոյն է ըսել այն նախնական և սիրուն երկրի այլ եւ այլ անցից և վիրաց պատմութիւնը, զոր այս անգամին ես, նման առաջնոյն, մերթ կծկծելով, մերթ լայնելով յառաջ տանիլ և 'ի . . . հարկէ ստիպեալ՝ մտաց դարձեալ ոլորապտոյտ շրջանակ մի ընտրելով խօսիլ և գրել զհնոցէն և զնորոցէն, զգըրոցէն և զբրոցէն այդ երկրին, որոյ վերայ սիրահար բանասիրաց ուշքերն հրաւիրելով։

Վերսկսիմք ուրեմն ճիշդ այն տեղէն, ո՛ւր յիշեալ պատճառաւն կանգ առի պահ մը։ Ինձ համար ամառն է այսուհետեւ, բնականէն այլ եւս երկիւղ չունիմ, իսկ անբնականին գալով պէտք եղած տեղն ինքնապաշտպանութեամբ դիմադրելոյ պատրաստ՝ յառաջ երթամք գրելով համաձայն նախընթացիս ուղղութեան և ոճոյն որոց համար շատ ուրախ եմ ըսելոյ, որ 'ի բազմաց շնորհակալութիւններ ընդունեցայ, յորոց արժան կը համարիմ աստ նշանակել Մեծ. Մ. Էֆէնտի Աղաբէգեան, այն հայրենասէր հոգին, որ բոլոր գրածներս կրկնակի ախորժանօք ընթերցած է և կ՚ընթեռնու իբրեւ երկրի «Հին

ԵՒ ՆՈՐ ԿԵՆԱՑ ԱՒԵՏԱՐԱՆ ,» իմ փոխադարձ շնորհակալութիւնն իւրեանց յայտնելով շարունակեմք ուղինիս ։

Հայոց Ձորոյ Հարաւակողման մասի ԾԻԾԱՂԱՔԵՐ ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ վանքէն Հէրէմէրու կամ Էրէմէրու հասած լինելով՝ խօսիմք այժմ սոյն գիւղին վերայ հետեւեալ գլխովս ,

## ԳԼ. Խ.

### ՀԷՐԷՄԷՐՈՒ ԵՒ ԻՒՐ ՍՊԱՐՏԱՒԱԶ

Սոյն գիւղն ունի 40 տուն բնակիչ ։ Աստուածածին անուամբ հնաչէն եկեղեցի մը , իսկ քահանայ և դպրոց «Աստուած տայ» ։

Տեղւոյս Հայոց կրօնական պիտոյքը կը մատակարարէ մերձակայ գիւղի քահանայն ։ Աստ կը տեսնուին երեք գերեզմանատունք, յորս թաղուած են տեղւոյս հին ատենուան 700 տուն բընակաւորաց 'ի Քրիստոս ննջեցեալներն , որոց մահարձանաց ընթեռնլին և ամենահինն 632 տարեկան է ։

Գիւղիս սահմանին մէջ երեք աւերեալ եկեղեցեաց տեղուանք ցոյց կը տրուին, յորոց մին կը կոչուի «Սպարտաւազ» , որոյ ընդարձակութեան մասին աւանդութիւնը կ'ըսէ թէ «երկու հազար հոգւով կարելի էր անդաստան օրհնել իւր մէջը» , իսկ միւս երկուքի տեղիքն կան , իրենք և անուանքն չ'կան ։

Գիւղիս բնակչաց նախնի սովորութիւնն է

Երբ նորապսակ մի երիտասարդ մեռնի, թէ՛ արական և թէ՛ իգական սեռէ լինի, նորա տապանաքարի վերայ, թէպէտև լինի անճաշակ, կը քանդակեն մեռանողի պատկերն, 'ի ձեռին մի ծաղիկ և գլխուն կամ կուրծքին վերայ խաչ. ծաղիկն 'ի նշան իւր գարուն հասակին, իսկ խաչըն ջերմեռանդութեան ապացոյց.

Հէրէմէրուի երիտասարդութիւնն մխիթարական կողմեր կրնայ ունենալ, եթէ իրեն որրուած յորդորական խոհեմ խրատներն ապարդիւն չ'լինին, որով սիրեն թուղթ և գրիչ. իրենք առոյգ, կտրիճ և ուժեղ են, նոյնպէս և իգական սեռն անուժի չէ. սակայն ինչ օգուտ անմշակ միտ և սիրտ յառողջ մարմնի:

Գիւղս իւր նախորդէն աւելի գեղեցիկ տեսարաններով շրջապատեալ է.

Գիւղէս չ'մեկնած՝ ծառոյ մը շուքին տակ մի քանի գիւղացւոց հետ մինչ վերջի հանդիստս կ'առնէի, առջևս դրուած էր գիւղական, այլ պատուական նախաճաշիկ մը. սոյն պահուն հեռատես ծերունի մը, որ ինձ թուեցաւ մարմնով տկար և մտօք նոր, կարեկցութեան արժանի 10—12 փոքրիկ և միանգամայն բոլոր մանուկներ՝ ոչխարի նման առջև ձգած՝ բերաւ առիս և զանոնք ինձ մատնացոյց ըրած ըսելով «եթէ կը սիրես էսա ճժերու (սոյն տղայոց) կանանչ արևուն՝ մեզ մի վարժապետ խրկէ Ստամպօլէն, որ զանոնք կրթացնելով ՄԱՐԴ ընէ».

այս էր ահա՛ պատկառելի ալեւորին խնդիրն, որ խոկոյն սիրտս և հոգիս յուզեց, որով հակառակ քաղցած վիճակիս՝ տխուր զգացումներով կշտացայ. տանուտէրն (նախաճաշիկ բերողն) զարմացաւ, երբ առանց ուտելոյ ետ քաշուեցայ սեղանէն, զի գաղտնիք մի էր իմ կրած յանկարծական, այլ բնական փոփոխութիւնն։ Ինձ համար ամենէն աւելի ցաւալի կէտն այս եղաւ, որ քովիս գրքոյկներն հատած էին, որով չ՛կըրցայ այդ կլոր-մլոր սիրուն մանկիկներն ուրախացընել, թէև այլ եղանակաւ զիրենք գոհ ըրի, սակայն ես իմ նպատակիս չ՛հասայ։

Տեղէս մեկնելոյ պահուն, յիշեալ ծերունին զգածեալ վիճակով մը ինձ կրկին մօտեցաւ և այս անգամին ձեռքէս բռնելով՝ ըսաւ սըրտագին՝ «կը խնդրեմ որ չքռխես (չ՛բարկանաս) մի բան էլ ասեմ իմ տէրութեան (քեզ), զոր ծերութենէս մոռացայ առաջուց ասել. էն վարժապետ, որ կուգայ յէսս երկիր, ինոր (անոր) ասա՛ որ պախս (պահք) չուտի, մեր ժամն (եկեղեցին), պատարագն սիրէ, մեր ջան (անձ) իրեն ղուպան կանեմք. թէ որ սկուն չանի (եթէ անանկ չընէ) հիւ հիւ (բնաւ երբէք) մի՛ խրկեր մեր երկիր»։

ԱՆԿԾՏԱՆՑ. — Սոյն գիւղն նախորդէն կէս ժամ հեռու է, ունի 45 տուն բնակաւոր Հայ և մէկ տուն եկաւոր քուրդ։ Հայք ունին յանուն Ս. Ստեփաննոսի մի անշքան եկեղեցի՝

քիչ տարուան նորոգուած, մի քահանայ՝ պարզ և ողորմելի, բաւական թուով տխեղծ մանուկներ՝ անգիր և անդպրոց, և որ աւելի ցաւալին է՝ ժողովուրդն գործելոյ տրամադիր, ընդունակ ազգային զգացումներէ ներշնչուելոյ, սակայն կը կարօտի արտաքին յորդորանաց։ Աստ իբրև գանգատ պէտք է շեշտելով կրկնել թէ «գործ կայ, գործող չ'կայ»։

Գիւղիս տեսարանը կրնայ ըսուիլ որ բաւական լաւ է, որոյ անուան սկզբնապատճառն չ'գտայ. իւր սահմանին մէջ երկու եկեղեցեաց տեղիք ցոյց կը տրուին հիներէն և նորերէն, աւանց անուններն յիշելոյ, որք անշուշտ դարերու հոլովմանց մէջ մոռցուած են.

Աստ ես հանգիստ առած միջոցիս՝ մինչ այլակրօն կարապետս խոտաւէտ արտի մ'եզերք ձիս երկայն չուանով երկիւղէն յիւր ոտն կապած և ինքն երկրի վերայ երկարած՝ կը նընջէր անհոգ, մի շատ պառաւ կին գաւազան 'ի ձեռին առ իս եկաւ դողդոջելով, որոյ երիտասարդ զաւակն 'ի Պօլիս կը գտնուէր, որմէ 10 տարիէ 'ի վեր լուր մի չունէր այդ խեղճ կինըն, որ չ'գիտէր իսկ թէ ո՛ւր է նորա գործատեղին կամ բնակավայրն։ Նահապետական տան մ'այս հինաւուրց տառապեալ գեղջկուհին դառըն արտասուօք Տեղագիր-Ուղեւորիս շատ բաներ պատմեց և հետևեալ սրտաճմլիկ խօսքերն ըրաւ. «Իմ լաճու (մանչ տղայ) անուն Ցարօ

(Ցարութիւն) է, երբ կերթաս ձեր Ստամպօլ և կը տեսնես զինքն, դու քու Աստուած կը սիրես՝ իրեն ասես թէ արի՛ (եկուր) քու պառաւ մէրկան (մօր) գլուխ գերեզմանի մէջ դի՛ր, նորէն դոր (ուր) կ'ուզես գնա՛». այս ըսաւ և ինձ յատկապէս ցոյց տուաւ իւր պանդուխտ զաւկի պատուական արտօրայքն, որք խօպանացեալ կը կենային անմշակ. առ այս աւելցուց թէ «կը տեսնե՞ս էսա (այս) խօրոտ (գեղեցիկ) հողերն ինորն (անոր) է, թողած երեսի վրայ գնացեր է ձեր Ստամպօլ, ո՛ւր ո՛վ գիտէ հիմա անօթի է, ծարաւ է, մերկ է, պօպիկ (բոկոտն) է, ի՞նչ է. Աստուած ինձ մէկհատիկ զաւակ տուաւ, փա՛ռք իւրեան, բայց ի՞նչ անեմ, որ վերջէն քիւռ ու ծուռ (անխելք) եղաւ»։ Սոյն խելահաս թէև զառամեալ կնոջ աստ յիշեցի իւր այն արժանաւոր և գնահատելի հաւատքին համար, զոր ունէր այդ երկրի վրայ և այս անհեռատեսութիւն մը չէր։

Քանի՛ քաղցր զուգադիպութիւն կը լինէր և սրտի գոհունակութիւն Ուղեւորիս, եթէ սոյն խօսքերն աստ մեր Անկշտանցի Ցարօն լսէր և վերադառնայր առ իւր պառաւ, այլ յարգանաց և խնամոց արժանի կաթոգին մայրիկն, որմէ հեռացած պահուս յանուն իւր Ցարօին կ'արտասուէր դառնապէս։

Անկշտանց գիւղէն մեկնելով ճանապարհնիս շարունակեմք քիչ մը հեռու 'ի Հիւսիսակող-

մըն կը հանդիպինք «Կզզի» անուն Հայ գիւղն, որ ունի 10 տուն բնակիչ, մի եկեղեցի և մի քահանայ, առանց դպրոցի։

Գիւղս ունի պատուական տեսարան և փոքր ինչ ծառաստան, թէև լինի ոչ պտղատու, որ դարձեալ մխիթարութիւն է, վասն զի, գոնէ շուքովն օդուտ կ՚ընծայէ ամառուան տօթն աբուակէզ խեղճ գիւղացւոյն, որ երբեմն խեթիչ արեւու կիզմանէն ճարահատ եղած՝ դաշտի մէջ տեղը անկեղու եղան ոտքեր կը կապէ, որպէս զի անշարժ կենայ և ինքն այդ անասունի ըստուերի տակը փոքր ինչ պատսպարի, մինչև որ միջօրէի տաքութեան սաստկութիւնն մեղմանայ։ Ուշիմ ընթերցող, ահա՛ քեզ մի կենդանի և հետաքրքիր պատկեր՝ Աստուծոյ և բնութեան հետ գործ ունեցող Հայ գիւղացւոյ մը։

Սոյն գիւղն «Կզզի» անունն առած է իւր բնական դիրքէն, վասն զի ամէն կողմանէ գըրեթէ շրջապատեալ է Շամիրամ գետոյ ջրոյն ոլորապտոյտ ճիւղերէն։

## ԳՂ. ԽԱ.

### ԿԶԶԻԷՆ Ի ԽԱՌՆՈՒՐԴ

ԽԱՌՆՈՒՐԴ. — Գիւղս 1/4 ժամ հեռու է Կզզիէն և որոյ մէջ հազիւ 3 տուն բնիկ մնացած է, իբրև այրած սրտի մխիթարանք։ Տեղւոյս եռատուն Հայերն հին աւուրց քիշտակներ

րէ զուրկ չեն [illegible], թէեւ նոքա լինին

. . . . . . . . . . . . . . . . . . . .

այժմ իւրեանց նշանակութիւնք բոլորովին կորսընցուցած ։ Աստ կը բնակին 10 տուն եկովի (անբնիկ), այլ հարուստ քուրդեր, որք տիրաբար կը վարեն իրենց կեանք ։

Շամիրամայ ջուրն, որոյ ական վերայ քիչ մ'ետքը պիտի խօսիմ, իւր բաժանեալ ճիւղերովն 40 հատ ահագին ջրաղացներ կը բանեցնէ աստ, յորոց մեծագոյն մասին ուրոյն ուրոյն ջուր կը տայ՝ կազմելով հետաքրքիր և պատուական տեսարաններ ։ Սոյն ջրաղացներն, զորս «չըլաշ» (պարսկերէն 40 աչք) կ'անուանեն, սովորականներէն մեծ տարբերութիւն ունին իրենց աւելի քանակութեամբ ցորեան աղալովն, մի և նոյն առեննուան մէջ. չատ դիւրին է գիտնալ թէ սոյն տարբերութեան պատճառն է ջրոյ առատութիւնն, որով և երկանաքարանց մեծութիւնն, որ գրեթէ 1 1/2 մէթր տրամագիծ և 1/2 մէթր բարձրութիւն ունի, և կը դառնայ կայծակի արագութեամբ ։ Այս աղօրեաց ջրերը յիշեալ գիւղի առջեւը դալով կը միանան կամ կը խառնուին իրարու, և կը կազմեն ամբողջութիւն մը. սոյն պատճառաւ տեղւոյս անունն «Խառնուրդ» կոչուած է, որ խառնուած տեղի ըսել է, տեղական նշանակութեամբ ։

## ԽԱՉ-ԿԱՄՈՒՐՋ

Խառնուրդ գիւղի հիւսիսակողմն 5 քառընկէց հեռու կամուրջ մի կայ «Խաչ-կամուրջ» ըսուած, որ իրապէս խաչաձև է, վասն զի Խօչապայ կամ Անգղայ գետն (որոյ վերայ խօսուած է) Արեւելքէն կուգայ դէպ 'ի յԱրևմուտս և կը գնայ 'ի Վանայ ծով, իսկ Շամիրամն կը գայ Հարաւէն և նորա վերայ փոս կամուրջի մէջէն անցնելով կ'երթայ 'ի Հիւսիս. զիրեար այսպէս խաչաձև կ'ողջունեն սոյն երկու գետերն։ Աստ ուղեւոր մը չ'կրնար կանգ չ'առնուլ տեղւոյս բնութեան գեղեցիկ և զուարճալի տեսարանաւն պահ մը զուարճանալոյ համար։

Խաչաձև կամուրջէս հանդիպոյ Արևմտակողմն 3 քառընկէց հեռու ահագին լեռնակարկառի մը հարաւային ճակատի վերայ կը տեսնուին մի քանի տող սեպաձեւ գրեանք, հնութենէն բոլորովին անընթեռնլի. սոյն անծանօթ յիշատակարանն կը թուի լինել Շամիրամ թագուհւոյն ժամանակակից կամ նորա գործ։

Շամիրամ կոչուած գետն Անգղայ գետոյն վերայէն անցնելէն անմիջապէս յետոյ իւր հըպարտ և հսկայ գլուխն կը ծռէ յԱրևմուտս, և անոր հետ իրարմէ քիչ մը հեռու զուգընթաց կ'ընթանայ մինչև 'ի Մաշկակտակ (որոյ վերայ խօսուած է). ասկէ յետոյ իւր վերջի հրաժեշտն կը տայ ընկերին և զիւր ընթացս կ'ուղ-

ղէ հեռահեռէ դէպ 'ի Հիւսիս ու կ'երթայ յԱր-տամետ (որոյ տեղագրութիւնն գործոյս Բ. մասին մէջ պիտի տեսնուի), ո՛ւր բազմաթիւ այգիներ և արտորայք ոռոգելէն ետքը կ'երթայ 'ի Վան, որոյ մէկ մասին ևս ջուր կը տայ, և վերջապէս կը թափի Վանայ ծովը։

Շամիրամն սկիզբէն ց'վերջ 12 ժամ կը ճանապարհորդէ առատ բարիք մատակարարելով երկրին, որով և ժողովրդեան, որ յանհնարինս կը տառապի երբեմն նորա առուներն մաքրելոյ համար, որոց աշխատութիւնն կարգաւ է։

Շամիրամայ գետոյն հետ զԽօշապայն բաղդատելով պէտք է զվերջինն ծուռ կոչել, վասըն զի գաւառիս ամբողջ երկայնութիւնն կը չափէ և հազիւ թէ 7—8 գիւղօրէից մասնաւոր արտօրայք կ'ոռոգէ. ժողովուրդն ալ դժբաղդաբար բնութեան դէմն մրցելոյ ոգին չ'ունի, որ կարենայ իրապէս գետոյ ընթացքին տիրելով՝ անոր իւր ուղած ուղղութիւնն տալ, որով շահաբեր առնել զայն, որ ըստ ինքեան անշահ չ'է։ Անիրաւութիւն մ'ըրած չ'լինելոյ համար պէտք է ըսել որ սոյն գետն Շամիրամէն ուրիշ առաւելութիւն մ'ունի, այն է թէ գարնան ատենները բազմաթիւ «տառեխ» ըսուած ձկունք կը խաղան իւր մէջ, որոց որսորդութիւնը տեղական կառավարութենէն կը ծախուի տարին մի անգամ գարնան ժամանակը։

ՆԵՐՔԻՆ ՊԺՆԿԵՐՏ. — Խառնուրդ գիւղի

Հարաւակողմն կը գտնուի և անկէ 3/4 ժամ հեռու է , ունի մի քանի տուն Քիւրտեր և 9 տուն բընիկներէն մնացած խեղճուկ Հայեր , որք իւրեանց մեծ պապերու խաչաքարանց ստուերներու նման օր ըստ օրէ աներևութանալոյ վրայ են ։

ՎԵՐԻՆ ՊԺՆԿԵՐՏ . — Ունի 16 տուն բնակիչք , յորոց 6 տուն Հայ և մնացածը Քիւրտ է ։ Հայք ունին մի անշուք , այլ բաւական ընդարձակ եկեղեցի , որ գիւղիս կեդրոնը կը բարձրանայ և դրօքն փակելովք կը կենայ , առանց քահանայի կամ փոխասայ տիրացուի մը , ուստի ժամասացութիւնք և սաղմոսք լռած են՝ հակառակ իւր հին ժամանակի ճոխութեան և բազմահայութեան ։ Զ'մոռնալ պէտք է աստ յիշել թէ բազմաթիւ բուեր և անախորժ թռչուններ շարունակ մուտ և ել կ'առնուն իւր անձուկ պատուհաններէն , որոց եղերքն երթալով կը հուէ ։

Նոյն գիւղի մէջ , հակառակ իմ և կարապետիս խոնջելու վիճակին , չուզեցի փոքրիկ հանգիստ մի առնուլ . սորա պատճառն շատ երկայն է և ես կարճ տեղին կապելոյ խոհեմութենէն բռնուած՝ կը մեկնիմք տեղէս դէպ 'ի Հարաւ 3/4 և ժամէն կը հասնիմք հետևեալ տեղին ։

## ՇԱՄԻՐԱՄ ԳԵՏՈՅ ԱԿՆ

Նոյն մեծահռչակ գետոյ ակն կը գտնուի

«Սարպուլաք» կոչուած լայնայատակ լերան ըս-
տորոտը, որոյ 8—10 քոմէքով ելող ճեղ-
քուածներէն դուրս կը տայ ջուրն հանդար-
տօրէն և մեղմիկ ու զուլալ (վճիտ) նման
արտասուքի, որ նախ կը ծովանայ, յետոյ
կը լճանայ և վերջապէս կը գետանայ, դարձեալ
հանդարտիկ և մեղմիկ։ Գետոյս ակնէն կէս ժամ
հեռու միեւնոյն լերան Հիւսիսային կողմերէն
մի քանի տեղերէ պատուական ջուրեր կը բղխին
և կը թափին անմիջապէս 'ի Տամիրամն, որ կը
ընթանայ իւրեանց առջեւէն։ Տեղւոյս բնական
դիրքին և կազմութեան նայելով կրնայ կարծուիլ՝
որ Տամիրամն կը բղխի այդ Սարպուլաք լերան
ներքին պորտէն, ո՛ւր ջուրն հորիզոնական դիր-
քով ընթացք չունենալու է, այլ վարէն 'ի վեր
դուրս տուող պէտք է լինի և լերան կեդրոնա-
կան յատակը դաշտանալով կը տարածուի և
դուրս կը տայ այլ և այլ կողմերէ ցած ճամ-
բաներ գտնելով։ Յիշեալ մասնաւոր ջրերն, որ
անմիջապէս կը թափին 'ի Տամիրամն և որոյ ակ-
նէն 3/4 ժամու չափ հեռու կը գտնուին, պէտք
է լինին Տամիրամայ մասն միեւնոյն կեդրոնէն
բաժնուած և մեկնած, ու դուրս տուած տար-
բեր ուղղութեամբք։

Տամիրամ գետն, որ իւր յորդութեան ա-
մենամեծ կէտին կը հասնի տակաւին կէս ժամ
ճանբայ չառած, Հայոց Ձորոյ վերին և ներքին
մասերու սահմանը կը կազմէ և արդէն ինքն է

բաժանող այդ գաւառի ամբողջութիւնն երկու գլխաւոր մասերուն, զորս վերեւ յիշած եմք։

Շամիրամն գաւառիս 23—25 գիւղօրէից մեծապէս օգտակար լինելով, որպէս ըսուեցաւ, Հարաւէն կը դիմէ 'ի Հիւսիս և Խառնուրդ գիւղին նկատմամբ խօսածիս համաձայն ուղղութեամբ յառաջ կ'երթայ և գիւր ընթացս կ'աւարտէ 'ի Վանայ ծովն։ Յիշեալ գետոյ ական քովերն բազմաթիւ Հայ բնակութիւնք եղած են յանցեալումն, ապրողք այն պատուական ջրոյն առընթեր և շնչողք տեղւոյս կենսատու օդոյն։

Ներկայիս մէջ բնակութեանց հետքն անգամ չերեւիր, միայն թէ աստ և անդ կը տեսնուին հին յիշատակութեանց բեկորներն, որք դարերու ձեռամբ, թաղուած են տեղւոյ . . . հողին տակը, զոր վարած ատենն երբեմն ակօսի մէջ երկրագործող խոփին դէմն գալով ամբողջ գութան պահ մը կանգ առնելոյ կ'ստիպեն . . ։

## ԳԼ. ԽԲ.

### ՇԱՄԻՐԱՄԷՆ ՄԵԿՆՈՒՄՆ

Շամիրամ գետոյ ակնէն, ըստ նախնթաց ուղղութեան, մեկնելով յԱրեւմտակողմն 3/4 ժամէն կը հանդիմք հետեւեալ գիւղը։

ԽՈՍՊ. — Աստ կը գտնուին 14 տուն բնակիչք, որք ունին յանուն Ս. Սարգսի կառուցեալ մի հնաշէն եկեղեցի, մի քահանայ և ողորմելի մա-

նուկներ առանց դպրոցի։ Գիւղիս բնակիչք բաւական հետաքրքիր կը լինէին աշխարհիս ընթացքին վերայ և երբ այնչափ յառաջ կ'երթային իրենց հարցմանց մէջ ապագայի բարեաց ակնկալութեամբ, ստիպուեցայ տակաւին պատասխան մը չ'տուած՝ հարցանել թէ քանի՞ մարդ կամ տղայ ունիք ձեր գիւղին մէջ գրել կարդալ գիտցող, թո՛ղ լինին ամենապարզ տեսակէն, այդ ևս իւր օգուտն ունի. մին 'ի նոցանէ ճարտար յամենայնի կարծուած՝ յիրաւի բաւական ըմբռնեց թէ ժողովրդեան յոյսն ի՛նչպէս կը համեմատէր իմ հարցման հետ. այսու ամենայնիւ, տեղւոյս* Հայքն, հակառակ տեղւոյ պատուական տեսարանին և աճեցուն բնութեան, բոլորովին յուսահատ և լքեալ վիճակի մէջ տեսայ։ Աստ 3 ժամու չափ կեցայ այդ խեղճ և միանգամայն նահապետական հիւրասէր թոռունք ամեն կողմանէ զիս շրջապատեցին՝ իբրև փրկարար այցելու մ'իւրեանց անպատմելի նեղութեանց և տառապանաց, զորս երկրին, գըլխաւորաբար տգիտութեան երեսէն մշտապէս կը կրեն, որոց վերաբերութեամբ հանդարտեցուցիչ յոյսեր տալոյ պարտքս կատարեցի և քանիցս յայտարարութեամբ կարծեմ հազիւ կըրցայ զիրենք համոզել թէ՝ պաշտօնական մարմնոյ մը կողմանէ չեմ եկած, որպէս ըմբռնած կ'երեւիք, այլ մի միայն ձեր այս կայտառ մանկանց կրթական վիճակն, իբրև մասնաւոր ան-

հատ, կը փափաքիմ անձամբ տեսնել շօշափելով միանգամայն երկրի հին և նոր բարոյական կենաց փոփոխութիւնք, որք պատիւ պիտի բերեն թէ Ազգին և թէ մանաւանդ մեր Օսմ. մեծազօր տէրութեան գահուն . . . . . . . . .
. . . . . . . . . . . . . . . . . . . .

## ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ ԱՄԱՑԻ ՎԱՆՔ

ԽՈՍՊ. — Սոյն գիւղէն ելնելով 1/4 ժամէն կը հասնիմք Խոսպայ Ս. Աստուածածին անուն փոքրիկ, այլ բաւական կոկիկ և գեղեցիկ վանքն որ թէև, անվնաս, սակայն փակեա՛լ և ամայի կը կենայ շրջապատեալ հինաւուրց և նորաւուրց խաչաքարներէ ու լաւ տեսարաններէ։

Սոյն անբնակ մենաստանի շինութեան թուականն չ'կայ. տապանաքարանց վրայ հազիւ կը տեսնուին 150 տարուան յիշատակարանք. ըստ բանի ծերոց «280 տարուան մօտ կը կարծուի կառուցման թուականն»։

Տարբեր անձերու աւանդութեանց նայելով, սոյն վանքն ունեցած է երբեմն բաւական, կանոնաւոր միաբանութիւն և ըստ այնմ պարագայք, իսկ այժմ ամենայն ինչ անհետացած են,
. . . . . . . . . . . . . . . . . . . .

Վանքն գմբեթաւոր չէ և կը բաղկանայ գրեթէ երկու յարկերէ։

Թող տալով այս մենաստանիկ իւր արդի ամայութեան մէջ և . . . . . տպաւորութեան

մը տակ մեկնիմք տեղէս, ճանապարհնիս ուղղելով մասամբ մը յԱրեւմտահարաւ եւ 1 ժամուան տեւողութեամբ տափարակ արտօրայք եւ դաշտօրայք կտրելով կը ժամանեմք հետեւեալ գիւղը ։

ՀԻՐՃ. — Այս գիւղն ունի 20 տուն քուրդյեկաւորաց եւ 'ի բնակաւորաց 10 տուն, որք 120 տունէն մնացած են. ունին կոփածոյ քարերէ կառուցեալ գեղեցկատեսիլ եկեղեցի մի, ո՛ւր ողորմելի քաջանայ մ'երեկոյ եւ առաւօտ ժամասացութիւն կ'ընէ՝ առանց տիրացուի եւ անդ կը ժողովին ծերունի արք եւ պառաւ կանայք աղօթել եւ խնդրել յԱստուծոյ իւրեանց մեղաց 'ի թողութիւն եւ հոգւոյ փրկութիւն՝ որովք պիտի ազատին իրենց հոգեկան դարաւոր տառապանքներէն, որպէս կը հաւատան ։ Եկեղեցւոյս թուականն ինձ անծանօթ մնաց, ըստ որում անընթեռնլի էր ։

Գիւղս լաւ եւ սիրուն տեսարաններէ բոլորուած է եւ Հայ ժողովուրդն նիւթապէս եւ բարոյապէս ողորմելի վիճակ մի ունի. աւելորդ է ըսել թէ դպրոց չունին, որով տեղւոյ խեղճ մանուկներն, հակառակ իւրեանց կայտառ եւ առողջ կազմութեան, կը մեծնան տգիտութեան տղմին մէջ անտէր եւ անտիրական, թէպէտ եւ ունին հայր եւ մայր, սակայն նոքա եւս, նման իւրեանց զաւակացն, խնամոց եւ կարեկցութեան արժանի են եւ այսպէս ամենամեծ իրաւամբ հա-

ռաչանքներ կը կորզեն զգայուն Հայ ուղեւորաց սիրտերէն, եթէ յիրաւի, մսեղէն շինուած են ։

Օրը տարաժամեալ և ժիր կարապետս (այս անգամին կտրիճ Յակոբիկ Մանասէրեան) սաստիկ խոնջեալ լինելով, ինձ արդար իրաւամբ փափաք յայտնեց յայս գիւղն իջեւանիլ սոյն գիշեր, սակայն յաջողեցայ համոզել զինքն ըսելով թէ ընդ փոյթ հեռանալ պէտք է այս վայրէն, ո՛ւր կենալով մի գուցէ հանդիպիմք ուրիշ աւելի տխուր երեւոյթից, որոնք բնականաբար սիրտերնիս նորանոր ցաւերով և վիշտերով բեռնաւորելոյ տեսակէն կրնան լինիլ, և մանաւանդ զմեզ այս կասկածոտ ճանապարհի անքնական երկիւղին առջև լալկան մանուկ մի դարձնել, կորզելով մենէ ոյժերնիս և կորովնիս, որպէս շատ դիւրին էր գուշակել։

Հայոց Ձորոյ ծանուցեալ Հիրճ գիւղէն իրիկուան ժամ 12ին աճապարանօք մեկնելով՝ ճանապարհնիս շարունակեցինք Արեւմտահարաւային ուղղութեամբ, սակայն չ'մոռնամ ըսելոյ որ կարապետիս հետ սիրտերնիս և հոգինիս նըման ովկիանոսի՝ վտանգաւոր ալեկոծութենէ մը բռնուած էին, որոյ բուն շարժառիթն կրնայի ամենայն ճշդութեամբ աստ նշանակել, եթէ գրիչս, իւր նորութեան պատճառաւ, երբեմն ինձ դէմ ապստամբելոյ սովորութիւն չունենար ։ Թէև յապահովութիւն իմ կենաց լինէր այն, զոր վերայ դարձեալ դժգոհ եմ, ըստ որում ուղ-

ղակի զգայմանցս կը հակառակի . ինչ որ է, յաջողեցանք զմեզ նետել հետեւեալ գիւղն ։

ԳԶԸԼ-ԹԱՇ (կարմրաքար) . — Սոյն գիւղն ժամանած պահուն կարապետս գրեթէ չնչասպառ եղած էր, և խղճիս դպչելով զինքը դուռ ըրի մի այլ եղանակաւ . աղնիւ ընթերցողն թող չ'զարմանայ առ այս, վասն զի ճար չ'կար չաճապարելոյ, երբ օրն տարաժամեալ էր, որպէս յիշեցի, և առնելիք ուղինիս անբնական վտանգներէ անզերծ, թէև մենք լինէինք կազմ և պատրաստ նոր զինուք ։

Այս գիւղը նախորդ Հիրճ գիւղէն մէկ ժամ հեռու է, և չինուած կարմրագոյն լեռնակի մը գրեթէ ստորոտը, ուստի և իր անուն առած լինել կը թուի ։

Տեղւոյս Հայ բնակութեանց թիւն է 16, որք ունին յանուն Ս. Երրորդութեան պարզ եկեղեցի մը, կառուցեալ քառաժայռի մը ստորոտը, ունին մի քահանայ և ոչ դպրոց ։ Ժողովուրդն առ հասարակ չ'քաւոր է ։ Աստնիւթական կարողութեան տէր մէկ տուն միայն կայ, որ յիրաւի իւր ճոխութեամբ և դրութեամբ նահապետական կատարեալ տիպարն կը կրէ . այս տունը Մխտիւր Մ. Փոխան աղայի տունն է, ո՛ւր նոյն գիշերին անցուցի ընկերացած 7—8 այլակրօն հիւրերու ։ Սոյն տանտանեղան տան վերաբերութեամբ ինձ պատմեցին թէ 40 հոգիէ կը բաղկանայ, 'ի բաց առեալ խոտաղներն, մը-

շալներն, հովիւներն, դառնարածներն, չօշրարներն (ոչխար կթող կանայք) և որթարածներն։

Այս Նահապետական տան մէջ տարին 100 (հարիւր) Վանայ քիլէն ցորեանէ հաց կը թխուի (կ'եփուի։) Վանայ 1 քիլէն 8 չափ է, կամ որ նոյն է ըսել 8 կոտ է. 1 չափն միջին հաշուով 5 1/2 լիտր է և 1 լիտր Պօլսոյ 8 օխան է, և հետեւաբար թուաբանական այս պարզ հաշւին ընելով կը գտնեմք 35,200 (երեսուն և հինգ հազար երկու հարիւր) օխա որ 12 ամսուան մէջ կ'սպառի իբրև տարեկան պաշար, վասն զի այս մեծ տունէն ամեն օր բաղմաթիւ երթեւեկողք պակաս չեն, ի'նչ ազգէ լինին նոքա թող լինին. տան տիրոջ սեղանն առատ և պատրաստ է զանոնք կերակրել լիութեամբ և ճանբել։

Արմէնեան ուշիմ ընթերցող, այս տեսակ ասպնջական տանց տէրերն հազար անգամ աւելի իրաւունք չունի՞ն առաւել եւս մեծասիրտ լինելոյ քան այն կարգ մը [illegible], որք կը շըրջին 'ի Հայս ժողովրդեան զինքեանս իմաստութեան գերագոյն էակներ ցոյց տալով՝ դու այժըմ սոյն կէտն 'ի մտի ունեցիր, որ յետոյ քեզ պիտի պատմեմ հրապարակաւ թարգմանելով ՀԱՑԱԲՆԱԿԻ մի քանի կարեւոր գաւառաց տանուտերաց միտքերն և սիրտերը, որ խղճիւ և զգացմանցս յատկապէս յանձնարարած են։

## ԳԼ. ԽԴ.

### ԳԸԶԸԼ-ԹԱՇԷՆ ՄԵԿՆՈՒՄՆ

Գըզըլ-Թաշէն մեկնելով Արեւմտեան Հարաւակողման գծովս 1 ժամէն կը հասնիմք հետեւեալ տեղին ։

ՔԵՐԾ. — Գիւղս ունի 60 տուն Հայ բնակիչք, որք ունին Ս. Ստեփաննոս անուամբ մի եկեղեցի 300 տարուան կառուցեալ, անշուք, եւ անճաշակ դրիւք. ունին երկու խեղճուկ քահանայ՝ ողորմելի մատակարարք իրենց կրօնական պիտոյից եւ 'ի պահանջել հարկին մխիթարիչք հոգեկան տառապանաց ։

Աղթամարայ (որուն թեմն է գիւղս) կաթուղիկոսի ջանիւք աստ շինուած է գիւղական ճաշակաւ մի դպրոց, որ պիտի տայ յոյս եւ լոյս այս խաւարամիտ գիւղացւոց, որոնք մեծ համակրանօք կը նային յԱթոռն Աղթամարայ, եւ այս անշուշտ ամենամեծ իրաւամբ ։

Գիւղիս առընթեր երկու այլ եկեղեցեաց հիմնատեղիք կը նշմարուին, որոց շրջապատը փարած են իւրեանց նախնի ժամանակի ժողովրդոց անշունչ մահարձանները, յիշատակարանքն՝ մեծագոյն մասամբ անընթեռնլի և դըրուած առ հասարակ լեռան (շատ ամուր) կապտագոյն քարանց վերայ ։

Գիւղիս Արեւելահիւսիսը ցոյց կը տրուին հիմունք աւերեալ բերդի մը, որոյ նկատմամբ 'ի ծերոց կ'աւանդուի թէ «Նախապէս երկրի բնիկներու ձեռքն էր, որ յետոյ այլոց անցած, դարերու հոլովմամբ աւրուելով ամայացած և արդի տխուր պատկերն ստացած է»։

Քիրծայ, 400—450 տարի յառաջ, ունեցած կենաց վերաբերութեամբ 'ի տարբեւոր արանցմէ կը պատմուի թէ «յիշեալ 2 եկեղեցեաց չէն եղած ատենը գիւղս ունեցած է 7—800 տուն բնակարանք, բաժնուած այդ երկու սրբավայրերուն վրայ, ունենալով ընդարձակ և պատուական որթատունկներ»։ Ցիրաւի Տեղադիր-Ուղեւորիս չատ զգալի եղաւ սոյն աւանդութեան ստուգութիւնն, երբ մի անգամ գիտական աչօք դիտեցի տեղւոյս արեւերես պառիկներն, (երկրի հակեալ դիրքի երես կամ բլրոց կողեր), որք ամեն յարմարութիւն ունին որթատնկոց տեղի լինելոյ և ընտիր խաղող հասցնելով տալ ժողովրդեան պատուական գինի, որոյ երես այժմ երբ տեսնեն, ձեռքերնին կը դողայ այդ խեղճ արարածոց, որք կարեկցութեան խիստ արժանի վիճակ մի ունին, մանաւանդ բարոյական տեսակէտով։

Տեղէս մեկնելոյ վերջի պահուն մի խեղճ պատանի գիւղացի, ուսման չատ ծարաւի և սըրտիւք ազնիւ ու կենդանի, ամօթխածութենէն չիկնած, որով եկաւ պատկառոտ դիմօք

ձեռքս համբուրեց և հեռացաւ, կեցաւ լուռ և մտահոգ։ Ուշիմ ընթերցող, այս երեւոյթին վերայ չէի զարմանայր եթէ կրօնաւոր եղած լինէի. առ ի՞նչ ուրեմն այդ անմեղ համբոյրն սրտագին, զոր պատանին ընծայեց արեւակէզ իմ ձեռաց. — գաղտնիք մի ունէր յիւր սրտին, որ կը յուղէր զինքն յաւէտ, խորհուրդ մ'ունէր անշուշտ՝ թերեւս խորհուրդ մեծ այդ գիւղական պատանին, և երբ տեսաւ յիմ ձեռին կապար—դրիչ կը շարժէր, ուշիմ տղուն սիրտըն կրկնակի յուզուեցաւ նման Մելքիմայ աւազանին, յայնժամ գաղտնեաց խորը կրցայ թափանցել թէ ի՞նչ կ'ուզէր պատանին, որոյ դէմքն նման արեան կարմրած և սուր լեզուն թէեւ լուռ, այլ ինքն ամբողջովին զոգցես բնականէն լեզու կտրած՝ խորհրդապէս ինձ կ'ասէր «դրել կարդալ շատ կը սիրեմ, այլ ո՞ւր երթամ չ'գիտեմ»։

Յիշեալ Քերծ գիւղը երբ հանդիստ առած կը պատրաստուէի մեկնելոյ և վերջի խօսքերնիս այգիի վերայ էր, յիշեցի իւրեանց թէ՝ շատ լաւ կը լինի որ դուք վերստին սկսիք այգի տնկել, որ ձեզ երկու տեսակ շահաբեր է. նախ կ'ունենաք գինի 'ի պէտս ձեր զուարթութեան, երկրորդ որ ձեր նախնեաց մեռեալ յիշատակն յարուցած կը լինիք և այս քիչ գոհունակութիւն չէ, եթէ արդարև ունիք այդ օրինակ զգացումն։

Խեղճ մարդիկ, որոց լեզուն թէպէտև հայ էր, որպէս և արեամբն էին նոյնն, սակայն լեզուս և սիրտս չ'էին լաւ հասկնար, թէև կը ճգնէի իրենց հասկացողութեան յարմարցնել զայնս . . . . . . . . . . . . . . . . . . :

Քերծայ վարելահողերն ամենամեծ մասամբ ոստին (անջրդի) են, այս պատճառաւ շատ ուղիղ կը լինի ըսել թէ գիւղիս բաղդն երկնից կամարէն կախեալ է և իրենք սովորականէն աւելի ջերմեռանդ են:

Գիւղս 20 հատ պանդուխտ ունի 'ի Պոլիս. այդ պանդուխտներէն ոմանք ունին գաւազանի վրայ կռթնող տարևոր հայրիկներ ու մայրիկներ, որոց աղի արտասուքը չ'կրցայ անթաց աչօք դիտել, երբ հառաչելով և հոգւոց հանելով կը յիշէին իւրեանց երիտասարդ զաւակները կամ թոռները:

Տեղէս մեկնելով մասամբ մը գիւղիս Արևմրտեան գծի ուղղութեամբ 1 ժամէն կարող ենք հասնիլ հետևեալ գիւղն:

ՊՂԹԵՆՑ. — Սոյն Հայկական գիւղն, որ շինուած է Արտօս լերան մի մասի ստորոտը, ունի 36 տուն Հայ բնակիչք, որք են աղքատ և անճարակ, 3 տուն ևս եկաւոր քուրդ՝ հարուստ և ճարակ: Հայք ունին Ս. Ստեփաննոս անուամբ 250 տարուան եկեղեցի մը և ոչ դպրոց: Գիւղիս հարաւակողմը 3—4 քարընկէց հեռաւորութեամբ Ս. Յովհաննէս անուն հիմնայատակ ե-

կեղեցի մը կայ, շրջապատեալ տապանաքարերէ, յորս տարւոյն և ընթեռնլին կը կրէ 432 տարուան որոշ թուականն ։

Աստ կը գտնուին նաև ինչ ինչ նշմարելի յիշատակարանք, որոց մասին դժբաղդաբար չը կրցայ որևէ աւանդութիւն կամ լոյս մը քաղել, որոյ աղագաւ անկարևոր կը համարիմ բան մը գրել։

Գիւղիս անուան ծագումն ունի իւր աւանդութիւնն. կարծիքներ կան իբրև թէ «անթուական ժամանակի մը մէջ մեծ կոտորած կամ ջարդ տեղի ունեցած լինի, աոր համար անունն մնացեր է «Պլթենց,» որ ըստ իւրեանց բացատրութեան կը նշանակէ «բրթեց», որ ուղիղ անունըն է նախորդ աղաւաղելոյն ։

Պլթենից 36 տուն Հայ ժողովուրդն կընայ իբրև մնացորդ կամ տկույք համարուիլ, ըստ աւանդութեան, նախնի 400 տան, որոց անհետանալոյն վերայ որոշակի տեղեկութիւն մի չ'ունէին այժմեանքն ։

Աստ 2—3 ձիթահաններու տեղուանք կը նշմարուին, որոց նայելով թերևս կընամք աղօտ լոյս մ'ունենալ գիւղիս անցեալ ճոխութեան վիճակին և աստիճանին վերայ ։

## ԳԼ. ԽԳ.

### ՊԼԹԵՆԻՑ ՄԵԿՆՈՒՄՆ Յ'ԱԹԱՆԱՆՑ ԵՒ ԱՆՈՐ «ԱՒԵՐ ՎԱՆՔ»

Տեղէս ելնելով գնամք յ'Աթանանց, որ Հայոց

Ջորոյ և Ոստանայ գրեթէ սահմանի անկիւնն կը կազմէ, որոյ վերայ արդէն Տեղագրութեանցս Ոստանայ մասին մէջ խօսուած է, սա այսչափ միայն կարևոր կը համարիմ յաւելուլ թէ գիւղիս Հարաւային Արևելակողմն և «Աւեր վանք» կոչուած աւերակմի և կայ ձորակի մը մէջ, յորմէ փոքր ինչ տարակայ կը նշմարուին եկեղեցւոյ մը հիմունք, որոց առընթեր 3—4 հատ տապանաքարինք կը տեսնուին անընթեռնլի յիշատակագրութեամբ ։ Այս տեղ Տեղագիր-Ուղեւոր մը չ'կրնար պահ մը չ'զարմանալ և չ'լինիլ մտահոգ, երբ մտածէ թէ սոյն նախնական ժողովրդեան կամ որ նոյն է ըսել Արմենական Ազգի արմատն յիրաւի ինչ աստիճան հաստատուն պէտք է եղած լինի, որ այսչափ դարերու հսկայ ժամանակաց դէմն մրցելով տակաւին իւր մէջ կենդանութեան հիւթ կը պահպանէ. առ այս դժուար չէ երևակայել թէ սոյն ԲԱՐԵԲԱԽՏՈՒԹԻՒՆՆ պարտական եմք կամ երկնից ցօղերուն, կամ լաւ ևս է ըսել Ս. Գրիգոր Լուսաւորչի օրհնութեամբ կազմակերպեալ ՏԱՃԱՐՆԵՐՈՒ ՀԻՄՆԱՔԱՐԱՑ ։ որոց դէմն խաղացողքն ոչ թէ միայն ազգի գոյութեան ուղղակի թշնամիներն են, այլ նաև անհաւատարիմ հպատակ մեր Բարեխնամ Կառավարութեան, որ հովանեաց ներքեւ ց'արդ կ'ապրիմք, իմ սոյն վերջի դիտողութիւնն իբրեւ բացարձակ ճշմարտութիւն պիտի ճանչնան այն հայրենասէրքն, որք երկաթէ կօշիկներու դէմն կռուե-

լով յաջողած են երկրի բնիկներու կեանքն թով-մային պէս մօտէն շօշափելու բախտն ունենալ անվնաս :

Գլթենց Հայկական գիւղի . . . . վայրէն ուղինիս յառաջ վարելով դէպ 'ի փոքր ինչ Հիւսիսային Արեւել 1 ժամէն կը հասնիմք հետեւեալ գիւղը :

ՄԻԽԼՔ. — Ունի 20 տուն եկաւոր Քուրդ և 5 տուն բնիկ Հայ, որոց կրօնական պիտոյից մատակարարութիւն մերձակայ գիւղի քահանային պէտք է պատկանած լինի, ըստ որում ո՛չ սեփական քահանայ ունին և ո՛չ սրբավայր՝ տեղի աղօթից, միայն անհետացեալ եկեղեցւոյ մը հիմունք նշմարելի են տեսանելի խաչաքարներովն :

Գիւղս շինուած է Անգղայ գետոյ եզերքը և ունի գեղեցկագոյն տեսարան մը, զոր վայելողք . . . կը պակսին :

Աստ երբ կիջնէի մի չքաւոր և դարաւոր ուռենւոյ ճղաշատ թեւոց ներքև ցորեկուան ճաշս ընելոյ և հոգնութենէս փոքր ինչ հանգչելոյ, առ իս եկան երկու հոգի հասակաւ բարձըր, ձեռամբ և բազկաւ զօրաւոր և սրտիւք վեհերոտ, որք գիտացին զիս իբրև . . . . . գլխաւոր պաշտօնեայ և հետեւաբար բարեկարգիչ այդ գիւղօրէից : Սոքա ինձ պատմեցին շատ դէպքեր վերաբերութեամբ իւրեանց հին և նոր կենաց և խօսեցան մի շատ բանաւոր դատ-

մունքով, զորս աստ յիշելոյ գրիչս կը տժգունի . . . . . իւրեանց տան խոհեմագոյն խրատներ և մանուկնին կարդացնելոյ յորդորներ, որք չէին բղխեր ո՛չ պաշտօնական մի աղբիւրէ և ո՛չ մասնաւոր մի տեղէ, այլ անհատական իմ սրտէն, կամքէն և կարծիքէն, որ դժբաղդաբար չէ ազատ դուրս ելնել այն շրջանակէն, զոր կը գծէ Արեգական ճառագայթից ներքեւ մեզ աւելի մօտ կիսալուսին ։

Ասկէ ելնելով սոյն մարդոցմէ տարեւորն 'ի գիւղ դարձաւ և Նորատին կարապետիս ընկերացած՝ մեկնեցանք 'ի Մարդս գիւղն, որմէ մեր գիւղացի նոր ընկերն ետ դարձաւ ։

ՄԱՐԴՍ. — Սոյն գիւղն իւր նախորդի Արեւմտակողմն է և անկէ 10 վայրկեան հալւհեռու. ունի 8—10 տուն Հայ, իբրև յետին մնացորդ իւր նախնի բազմահայութեան, որ սոյն խեղճ մնացողաց թողած է 'ի յիշատակ մի բաւական ճաշակաւոր եկեղեցի, որոյ չ՚լուտ (անզարդ բոլորովին կամ մերկ) վիճակն տեսած պահուս միտքս ինկաւ Պօլսոյ Մայր—Եկեղեցւոյ սեղաններուն փառքն խաչելութեան աւենուան՝ Քրիստոսի մերկութեան ժամանակը և Ամեն. Խրիմեան Հայրիկի մի նշանաւոր քարոզն, զոր խօսեցաւ Քրիստոսի եկեղեցւոյ պարզութեան վերայ, իւր Պատրիարքութեան օրոմն ։

Սոյն գիւղն շինուած է Անդղայ գետոյ եզերքը, ունի սիրուն տեսարան և ընդարձակ

մարգագետիններ, յորոց իւր անունն ծագած լինել կը թուի և որք ծառայած են, ըստ բանի ծերոյն, երբեմն 'ի Քէօշկ (որոյ վերայ գաւառիս Հիւսիսային մասի սկիզբը խօսուած է) բնակող Արծրունեաց իշխաններու նժոյգներուն իբրև արօտատեղի, Վարդ Պատրիկի ժամանակումն:

Մարգս 1/4 ժամ հայիւ հեռու է Քէօշկ կոչուած գիւղէն, և կրարմէ բաժնուած՝ վերոյիշեալ գետովն:

Տեղէս մեկնելով մի և նոյն ուղղութեամբ 12 վայրկենէն կը ժամանեմք 'ի Թրքաշէն գիւղն, որ ունի 10 տուն Հայ և 2 տուն Քուրդ բնակիչք. Հայոց համար ո՛չ եկեղեցի, ո՛չ քահանայ և ո՛չ դպրոց կայ:

Գիւղս նախորդին նման ունի պատուական մարգագետինք, յորոց աւելի կ'օգտին բնակչաց վերջի զոյգ տուն եկւորներն, որոց անասունք իսկ երջանիկ են քան թէ նոյն տեղւոյ այլոց անասուններն:

Թրքաշէնայ Արևմտեան հարաւը 1/2 ժամ հեռու կը գտնուի «Խարաւանց» (խառն ականց) կոչուած գիւղն, որ Հայոց Ջորոյ Հարաւային մասի Արևմտակողման վերջի գիւղն է, շինուած մերձ Վանայ կամ Բզնունեաց ծովուն.

Սոյն գիւղն ունի 25—30 տուն Հայ, որք բաւական բարւոք նիւթական վիճակի տէր են, ունին Աստուածածին անուամբ մի եկեղեցի

պարզ՝ որպէս և իր քահանայն, իսկ դպրոց ո՛չ. Թէև իրենք լինին ուսումնասէր և եռանդուն ։

Տեղւոյս Արևմտակողմը քիչ մը հեռու ծովուն աւելի մօտ՝ աւերակ մի կայ, որ կ'անուանի «քրվանց», որոյ տեղին այժմ հազիւ նըշմարելի է ։

Յիշեալ 2 չէն և անչէն գիւղերու անուանց նկատմամբ հետամուտ լինելով յատկապէս, իբրև մարգարիտ, գտայ հետևեալ հետաքրքիր աւանդութիւնն աւանդեալ 'ի հարիւր վեց տարուան ծերունիէ մը, որոյ առոյգ թոռնիկն ինձ հաղորդեց, որ երբեմն լսած էր իւր 15 տարի առաջ մեռած դարաւոր պապէն, որ ըսած է «Քրվանց գիւղի չէն և պայծառ եղած ատեն անդ կը բնակէին արհեստաւոր քուրմեր, որոց գործն էր, ինչպէս մեր հայրեր կ'ըսէին, Աստուածաշէն գիւղի մէջ շինուած (որոյ վրայ խօսուած է) չաստուածներուն Թադեր կապել, երբ բերէին աստ, որով գիւղիս անունն մնայ «քրմեանց», որ աղաւաղելով անգիր մարդոցմէ եղած է «քրվանց», ո՛ւր շինուած չաստուածական Թագերն յետոյ կը տանէին 'ի Խարականց և անդ խառն ակներով զայնս կը զարդարէին, որմէ ծնունդ առած է «խառն ականց» անունն, որոյ աղաւաղեալն պէտք է լինի այժմեան «Խարականց», ո՛ւր այդ տեսակ արհեստներ կը գտնուէին կռապաշտութեան ժամանակումը ։»

Հայոց Ձորոյ սոյն երեք գիւղերն՝ Աստուածաշէն, Խառն ականց և Քրմեանց աստ կրկին նշանակեցի՝, ուշիմ բանասիրաց ուշքերն կրկնակի հրաւիրելոյ բաղձանօք, որք կը սիրեն զհին գրոցէն ընթեռնուլ։

Դիտողութիւն. — Հայոց-Ձոր գաւառիս երկու ամայի, այլ նուիրական վայրերն, որք են. Ա. ՍՐԽՈՒ ՎԱՆՔ ԿԱՄ ՍՈՒՐԲ ՄԱՐԻԱՆՈՍ, Բ. ՍՈՒՐԲ ԱԲՐԱՀԱՄՈՒ ՄԵՆԱՍՏԱՆ, որպէս իւրեանց կարգին խօսած եմ, աստ վերջաբանիս մէջ կրկին կը յաւելում այդ երկու վանքերու համար իմ յատուկ դիտողութիւն թէ «Հաստատուն են շինուածքով և անվնաս կը կենան այժմ։» Դոքա յանցելումն ունեցած են միաբանութիւնք, ընդ որս բաւական ճոխ պարագայք, որովք եղած են մխիթարիչք որբերու, բնակավայր երկնից նուիրեալներու և բազում անգամնիսկ հիւրընկալ ճանապարհորդաց։ Վանքերէն առաջնոյն մերձակայ սենեկաց առաստաղներն և սակաւին անաւեր կը կենան, երկրորդինն քայքայեալ են, սակայն և այնպէս բնաւ մեծ դժուարութիւն մը չ'կայ զայնս բնակելի ընելոյ համար, ըստ որում իւրաքանչիւր վանքն ունի արդէն իւրեան սեփհական հողերն, (թերեւս յինձ անծանօթ ուրիշ կալուածներ, զորս ՄՇԱԿԻՆ ձեռքը տալով կրնան վանօրայքն նորէն շէնցնել և ծաղկեցնել։

Աղթամարայ Գահակալն կը յուսամ թէ գա-

ւառխս Հայոց ջերմեռանդութիւն տեսնելով՝ մի հովուական այցելութեամբ կարող է յիշեալ վանքերն վերանորոգել տալ իւրեանց հնացեալ և փոշիացեալ վիճակէն, կարգելով այնպիսի վանահայրեր, որք լինին վանաշէն և միանգամայն տնաշէն հովիւ այդ վանքերուն մերձ գիւղօրէից, որոնք ամենամեծ փափաք ցոյց կը տային ինձ, երբ իւրեանց կողմերը կուղեւորէի և խօսք կը լինէր այդ վանքերու վրայ։

Այսպէս ահա այդ վանահարց ձեռամբ պիտի վերսկսին Աստուածային ալէլուքն և փառաբանութիւնք յարեւշատութիւն մեր Օգոստափառ Կայսեր, որոյ հովանեաց ներքեւ, 'ի բոլոր սրտէ, կը փափաքիմ հաստատուն և պայծառ տեսնել Ազգին և Հայրենեաց ամեն շէնք և շինութիւնք։

## ՎԵՐՋ ԱՌԱՋԻՆ ՄԱՍԻ



# ՅԱՆԿ ԳԼԽՈՑ

Երես





## ՎՐԻՊԱԿՔ

| Երես | Տող | Սխալ | Ուղիղ |
|---|---|---|---|
| 14. | 15. | խօչօղլանայ. | խօչօղլանայ |
| 16. | 9. | կը բնակիչ. | բնակիչ |
| 19. | 10. | Բ. մասին մէջ. | Գ. մասին մէջ |
| 20. | 9. | ԱՐՍՐԱՏ. | ԱՐԱՐԱՏ |
| 46. | 10. | Հողին. | Հողին |
| 70. | 7. | չունենայ. | չունեցայ |
| 88. | 14. | դաշտային. | դաշտօրայք |
| 93. | 15. | Հարարիր. | համարիր |
| 110. | 12. | 12 ժամ. | $^1/_2$ ժամ |
| 112. | 3. | Հիւսիսակողմն. | Արեւմտակողմն |
| 123. | 1. | Հիւսիսային. | Հարաւային |
| 123. | 14. | Հարաւային. | Հիւսիսային |
| 144. | 16. | ցար. | քար |
| 164. | 1. | ԳԼ. ԼԸ. | |
| 176. | 22. | կղզիէն. | կղզին |



معارف نظارت جلیله سنک ٦٩٥ نومرولی

رخصتنامه سیله طبع اولنمشدر



Կը գտնուի բոլոր Գրավաճառաց քով
՚ի գին 8 դահեկան ։